ՍՏ. ՄԱԼԽԱՍՅԱՆՑ

# ԽՈՐԵՆԱՑՈՒ ԱՌԵՂԾՎԱԾԻ ՇՈՒՐՋԸ

АКАДЕМИЯ НАУК СССР—АРМЯНСКИЙ ФИЛИАЛ
ИНСТИТУТ ИСТОРИИ И МАТЕРИАЛЬНОЙ КУЛЬТУРЫ

СТ. МАЛХАСЯНЦ

# К ПРОБЛЕМЕ МОИСЕЯ ХОРЕНСКОГО

ИЗДАТЕЛЬСТВО АРМФАН-а
ЕРЕВАН 1940

ՍՍՌՄ ԳԻՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԱԿԱԴԵՄԻԱ — ՀԱՅԿԱԿԱՆ ՖԻԼԻԱԼ

ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՎ ՆՅՈՒԹԱԿԱՆ ԿՈՒԼՏՈՒՐԱՅԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ



ՍՏ. ՄԱԼԽԱՍՅԱՆՑ



# ԽՈՐԵՆԱՑՈՒ ԱՌԵՂԾՎԱԾԻ ՇՈՒՐՋԸ





ԱՐՄՖԱՆԻ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԵՐԵՎԱՆ 1940

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Մովսես Խորենացին հազար տարուց ավելի բազմած է եղել 5-րդ դարի մեծ հեղինակների շարքում, իբրև անմիջական աշակերտ ս. Սահակի ու Մեսրոպի և նրանց կողմից արտասահման ուղարկված՝ բարձրագույն ուսում ստանալու. այդտեղից վերադառնալիս կենդանի չէ գտնում իր մեծ վարդապետներին և նրանց մահը ողբում է սրտառուչ կերպով: Նրա գրած «Հայոց Պատմություն»-ը պատմական ժողովածուների ձեռագրերում զետեղվում է Ագաթանգեղոսից հետո, իբրև նույնքան վավերական աղբյուր ազգային պատմության, որքան վավերական աղբյուր էր ճանաչված Տրդատ թագավորի քարտուղար Ագաթանգեղոսինը՝ հայ եկեղեցու պատմության: Նրա ամեն մի խոսքը պատգամ էր հետագա պատմագիրների և առհասարակ ընթերցողների համար. Հայկը, Արամը, Տիգրանները, Արտաշեսները... Նրա ստեղծած պատմական հերոսներն են: Տասնյակ դարերով հայ ժողովուրդն իր պատմության նախնական շրջանը սովորել է այդ Պատմությունից, ոգևորվել ու տոգորվել է այդ Պատմության արծարծած զգացումներով: Հազար տարուց ավելի Խորենացու Պատմությունը միայնակ տիրապետում էր Հայոց պատմական գրականության մեջ և իր պայծառ փայլով նսեմացնում ուրիշ պատմական գրվածքները:

Բայց ոչինչ չկա հավիտենական: 19-րդ դարում, երբ պատմական քննադատության թևերը շոշափեցին Հայոց Պատմությունը՝ սրա մեջ հետզհետե սկսեցին երևան գալ կասկածելի կետեր. քննությունները հաճախեցին, կասկածելի կետերը բազմացան և սկսեցին ստուգության կերպարանք ստանալ:

Քննադատությունը սկզբում շոշափում էր Հայոց Պատմության արժանահավատության հարցը, այսինքն որքան ճիշտ են Պատմության մեջ հաղորդված պատմական տեղեկությունները,

որքան իրական են այնտեղ հիշված գահակալները: Բար քարի վրա չմնաց Հայոց Պատմության կառուցվածքի մեջ. հերքվեց Մար-Աբասյան աղբյուրի գոյությունը. հերքվեց ժողովրդական վեպի գոյությունը. Խորենացին հռչակվեց կեղծարար, այս աղբյուրների ստեղծող. Հայկը, Բելը, Արամը, Տիգրան Հայկազյանը հայտարարվեցին առասպելներ, հայտնվեց, թե Արգարը չէ եղել Հայոց թագավոր, Արշամ անունով թագավոր առհասարակ չէ եղել. Վաղարշակ, Արտաշես, Երվանդ և այլն գոյություն չեն ունեցել. օտարազգի աղբյուրներն այսպիսի թագավորներ չեն ճանաչում, ընդհակառակը, նրանք ունեին հայ թագավորների անուններ, որոնք անհայտ են մնացել Հայոց Պատմությանը: Սրանց վրա բազմաթիվ ժամանակագրական և պատմական սխալներ: Մի խոսքով՝ Հայոց Պատմության, իբրև պատմական աղբյուրի, արժեքը հավասարվեց զերոյի: Գաթըրճյանն իր Տիեզերական Պատմության մեջ (1848—51) դեռ զգուշությամբ դիտեց Հայոց Պատմության անհամաձայնությունն օտարազգի պատմագիրների անկասկածելի տվյալների հետ. իսկ Գարագաշյանն իր «Քննական Հայոց Պատմություն» աշխատության մեջ (1895) վարկաբեկեց Հայոց Պատմությունն իբրև աղբյուր, գերազանցություն տալով Փավստոսի Պատմությանը:

Երկրորդ հերթին քննադատությունը շոշափեց Հայոց Պատմության վավերականության հարցը, այսինքն՝ թե երբ՞ք Հայոց Պատմությունը գրված է 5-րդ դարում, Սահակ-Մեսրոպի աշակերտ Մովսես Խորենացու ձեռքով: Քննադատությունը երևան բերեց պատմական իրողություններ 6—8-րդ դարերի, որոնք չէին կարող հայտնի լինել 5-րդ դարում ապրող ու գրող հեղինակին, նույնպես երևան բերեց 7-րդ, 8-րդ և 9-րդ դարերի գրվածքներ, որոնցից օգտվել է Հայոց Պատմության հեղինակը, օրինակ՝ Սեղբեստրոսի Վարքի հայերեն թարգմանությունը 678 թվից, Զատկական ժամանակագրությունը, Մաղաղաս, Անանիա Շիրակացու Աշխարհացույցը, Ղևոնդի Պատմությունը և այլն: Այս փաստերի հիման վրա քննադատությունը եկավ այն եզրակացության, թե Հայոց Պատմությունը 9-րդ դարի գործ է, մի անծանոթ հեղինակի, որ յուրացրել է Մովսես Խորենացի անունը կամ իր գործը վերագրել է մի ուրիշ Մովսես Խորենացու: «Հանդէս ամսօրյա»-ն, որ այս գրական պայքարի մեջ դրոշակակրի դեր

էր կատարում՝ փութաց նույն իսկ Հայոց Պատմությունը հորջորջել «Ստոյն Մովսիսի Խորենացւոյ» անմիտ կոչումով[1]։

Այս հարձակողական և մերկացուցիչ քննադատական հոսանքի դեմ դուրս եկան, իհարկե, և պաշտպանողական գրություններ, որոնք հերքեցին կամ ջանացին հերքել նրա եզրակացությունները Հայոց Պատմության թե՛ արժանահավատության և թե՛ վավերականության նկատմամբ։ Շատ բան, որ Հայոց Պատմության մեջ հերքում էր քննադատությունը՝ նորից վերականգնվեց, շատ բան այդ Պատմության մեջ նոր բացատրություն և նոր արժեք ստացավ։ Վավերականության հարցի նկատմամբ ուսանելի է մանավանդ անգլիացի հայագետ Կոնիբերի կատարած դերը։ Նա էլ, ուրիշ շատերի նման, ենթարկվելով ֆրանսիացի հայագետ Կարրիերի մերկացուցիչ հոդվածներին՝ մոտ տասը տարի հակամետ է եղել Հայոց Պատմությունը նոր ժամանակի գործ համարելու, թեպետ միշտ էլ նկատելիս է եղել այսպիսի կարծիքի զանազան անտեղությունները։ Եվ ահա 1901—2 թվականներին նա տպագրեց իր հմտալից ուսումնասիրությունները, որոնց մեջ մի առ մի քննեց 6—7-րդ դարերի այն գրվածքները, որոնցից, Կարրիերի կարծիքով, օգտված է եղել Հայոց Պատմության հեղինակը, և ցույց տվեց, որ Սեղբեստրոսի Վարքի ընդարձակ թարգմանությունը 5-րդ դարի գործ է և ոչ 678 թվի, իսկ համառոտ վարքի խմբագրողն ինքն է օգտվել Խորենացու Պատմությունից. որ Խորենացին չէ օգտվել ո՛չ Մաղաղասից և ոչ Զատկական ժամանակագրությունից, այլ մի հնագույն և լավագույն հունական աղբյուրից, որից օգտվել են նաև Մաղաղասը և ժամանակագրության խմբագրողը։ Սեղբեստրոսի Վարքի և Հայոց Պատմության աղերսի նկատմամբ նույն կարծիքը հայտնել էր նաև Նորայր Բյուզանդացին, 1900 թվին։

Կոնիբերի ելույթն սթափեցնող նշանակություն ունեցավ. այլևս դադարեցին երևակայեալ աղբյուրների հիման վրա Հայոց Պատմության ժամանակը վար իջեցնել (բացառությամբ Գր. Խալաթյանցի, որի „Армянские Аршакиды в Истории Армении

[1] «Ստոյն» հորջորջումը միտք կունենար միայն այն դեպքում, եթե այդ հորջորջումը գործածողները ցույց տային ի ս կ ա կ ա ն Մովսես Խորենացի անունը կրող մի ականավոր հեղինակ, որին վերագրած լիներ Հայոց Պատմության անծանոթ հեղինակն իր գրվածքը։

Моисея Хоренского“ աշխատությունը լույս տեսավ 1903 թվին, այսինքն տպվում էր այն ժամանակ, երբ լույս տեսան Կոնիբիրի հոդվածները)։ Լսվեցին ձայներ, որ Կարրիերի բերած ապացույցները կորցրել են արդեն իրենց նշանակությունը։

Այնուհետև, Հայոց Պատմության ուշ ժամանակի գրվածք լինելու վերաբերմամբ առաջ բերվեցին ուրիշ ապացույցներ, որոնք բղխում էին այդ Պատմության ոգուց։ Օրինակ՝ ցույց տրվեցին Հայոց Պատմության ազգային ոգին, հունաբան լեզուն, հեղինակի հունասիրությունը, տենդենցը բարձրացնելու Բագրատունյաց տոհմը և հայերին ընտելացնելու այդ տոհմի մոտալուտ թագավորության մտքի հետ, և այլն։ Այս դիտողությունները ևս առանց հերքման չմնացին, որի մասին ավելի մանրամասն կխոսիմ ակադ. Մանանդյանի աշխատությունը քննելիս։

Հարյուր տարուց ավելի տևեց Հայոց Պատմության և նրա հեղինակի շուրջը մղվող թեր և դեմ գրական պայքարը, որին մասնակցել են բազմաթիվ օտարազգի և հայ բանասերներ։ Գլխավորներից հիշենք՝ օտարազգի գիտնականներից—Բաումգարտներ, Գելցեր, Գուտշմիտ, Լանգլուա, Կարրիեր, Կիպերտ, Հյուբշման, Մակլեր, Մառ, Մարկվարտ, Սեն-Մարտեն, Ֆետտեր, հայ գիտնականներից—Աբեղյան Մ., Ադոնց, Ալիշան, Գարագաշյան, Գևորգյան եպիսկոպոս (Ծուղուրյան), Զարբհանալյան, Էմին, Խալաթյանց, Մեսրոպ Տեր-Մովսիսյան, Միաբան (Գալուստ Տեր-Մկրտչյան), Նորայր Բյուզանդացի, Ք. Պատկանյան, Պարոնյան, Բ. Սարգիսյան, Տաշյան և այլն, և այլն։ Հարյուրավոր գրվածքներ, առանձին հատորներով կամ ամսաթերթերի և օրաթերթերի մեջ, նվիրված են այս հարցին, և պայքարը դեռ վերջացած չէ։

Սակայն, ընդհանուր տրամադրություն է ստեղծված Հայոց Պատմությունը համարելու ոչ թե 5-րդ դարի, այլ ավելի ուշ ժամանակի գործ։ Եվ հայկական բանասիրության հերթական հարց է դարձել՝ գտնել այն դարը և տեղը, երբ և որտեղ կարելի է զետեղել այդ Պատմությունը ու երևան հանել նրա իսկական հեղինակին։

Այս հարցին նվիրված են երկու ուսումնասիրություն, որոնք լույս տեսան վերջին ժամանակներս։ Առաջինն է՝ Ն. Ակինյանի «Ղևոնդ Երեց և Մովսես Խորենացի» (Վիեննա, 1930). երկրորդն է՝ ակադ. Մանանդյանի «Խորենացու առեղծվածի լուծումը»,

(Երևան, 1934)։ Ես համառոտ կանգ կառնեմ Ն. Ակինյանի աշխատության վրա, ընթերցողին ծանոթացնելով նրա մեթոդին և եզրակացությանը, առանց քննության, ապա կանգնեմ ակադ. Մանանդյանի աշխատության մանրամասն քննության, որից հետո կդնեմ իմ կարծիքները Խորենացու առեղծվածի մասին։

## Ն. ԱԿԻՆՅԱՆ, «ՂԵՎՈՆԴ ԵՐԵՑ ԵՎ ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻ»

Ն. Ակինյանի ուսումնասիրությունը երկու հիմնական մասերից է բաղկացած։ Առաջին մասում նա աշխատում է որոշել Հայոց Պատմության գրվելու ժամանակը. երկրորդ մասում որոշել, թե ով է այդ Պատմության հեղինակը։

Ն. Ակինյանի համար վճռված, անտարակուսելի փաստ է, որ Հայոց Պատմությունը 5-րդ դարի գործ չէ, այլ ավելի ուշ ժամանակի։ Ուրեմն նրան մնում է հաջորդ դարերում գտնել այնպիսի մի շրջան կամ երևույթ, որի հետ կարելի լիներ որևէ կերպով կապել Հայոց Պատմությունը։ Այսպիսի մի կռվան նա գտնում է Հայոց Պատմության Ողբի վերջին հատվածում, որտեղ հեղինակը, թվելով Հայոց բոլոր դասակարգերի մեջ տիրող զեղծումները՝ դառնացած կերպով, բանաստեղծորեն, խտացած գույներով նկարագրում է բնության արհավիրքները, իբրև աստվածային պատուհաս մարդկանց չարիքների—«Գարուն երաշտացեալ, ամառն անձրևայոյզ, աշուն ձմեռնացեալ, ձմեռն սաստկասառոյց, մրրկալից, երկարացեալ, հողմք բքաբարք, խորշակաբերք, ախտահաւաքք. ամպք հրընկէցք, կարկտածուք, անձրևք անժամանակք և անպիտանք. օդք դառնաշունչք, եղեմնաբերք, ջրոյ առատելոյն անօգուտ և նուազելն անհնարաւոր. երկրի անբերրութիւնք պտղոց և անաճելութիւնք կենդանեաց, այլ և սասանմունք և դղրդմունք... սովք անբաւք և հիւանդութիւնք և մահք բազմօրինակք»։

Ն. Ակինյանը գտնում է, որ «այս արհավիրքները բնության մեջ հաճախ կրկնված երևույթներ չեն երևար... ասոնց ապականիչ ազդեցությունը չէր կարող սահմանափակված ըլլալ որոշ սահմանի մեջ, ուստի ինչ որ տեսած էր Հայաստան, նույնը զգացված պիտի ըլլար նաև սահմանակից աշխարհներու մեջ» (էջ 135)։ Եվ իրոք, նա գտնում է, որ Ասորական Միջագետքում

772—773 թ.թ. տեղի են ունեցել բնության այնպիսի արհավիրքներ, ինչպես մանրամասն նկարագրում է Սոււռ Դիոնիսիոս Թել-Մահրացին իր ժամանակագրության մեջ, որից ընդարձակ մեջբերումներ է անում Ն. Ակինյանը (էջ 136—140)։ Այստեղ կարդում ենք, որ այդ թվականներին Տիգրիսը մի անգամ սաստիկ հորդել է, ահագին ավերածություններ պատճառելով (762 թ.), ընտանի անասունների մեջ ջարդ է ընկել, սաստիկ ձյունից անասուններն արոտ չգտնելով, սովամահ կոտորվել են. բուքը խեղդել է շատերին (762 թ.)։ Երաշտի պատճառով ցանքերը չեն բուսել (772—3 թ.թ.)։ Հաջորդ տարին ձմեռը և ցուրտը սաստիկ են եղել. սաստիկ և դառնաշունչ քամիներ են եղել, որոնցից բոլոր մանր ու խոշոր կենդանիները, թռչունները կոտորվել են. շատ խոշոր կարկուտ է եկել՝ ջարդել է ծառերն ու որթատունկերը. առաջ է եկել սով և ժանտախտ։

Կովանը գտնված է. Ողբի մեջ բերված բնության արհավիրքները տեղի են ունեցել Հայաստանում 773—774 թվականներին, որ և լինում է Ողբի գրության տարին՝ ըստ Ակինյանի (էջ 142)։ Բնության արհավիրքներից հետո Ողբի մեջ նկարագրված է երկրի քաղաքական ու տնտեսական ծանր վիճակը. «Թագաւորք տիրեալ խիստք եւ չարաչարք, բեռինս բառնալով ծանունս եւ դժուարակիրս, հրամանս տալով անտանելիս... Գերումն տանց եւ յափշտակութիւն ստացուածոց, կապումն գլխաւորաց եւ բանտք յայտնեաց, յօտարութիւն վտարումն ազատաց եւ անթիւ նեղութիւնք ռամկաց. առումն քաղաքաց եւ քանդումն ամրոցաց եւ հրդեհումն շինուածոց»։ Ղևոնդ Երեցի Պատմությունը, որ նկարագրում է Հայաստանի վիճակն արաբական տիրապետության ժամանակ մինչև 8-րդ դարի վերջը՝ լիքն է այսպիսի իրողություններով։ Այս հանգամանքն էլ, ըստ Ն. Ակինյանի, դարձյալ հաստատում է Ողբի գրության նույն ժամանակը։

Բայց Ն. Ակինյանն անբնական և անհարիր է գտնում Ողբը Հայոց Պատմության վերջում, այն չէ կարող համարվել Պատմության հեղինակի գրչի արդյունքը, որովհետև եթե Ողբը գրված է 8-րդ դարում՝ Պատմության ճակատին չէր կարող գրվել 5-րդ դարի հեղինակ Մովսես Խորենացու անունը. իսկ եթե, 8-րդ դարում պատմիչն իրեն կեղծել է իբրև 5-րդ դարի հեղինակ՝ այս դեպքում «առեղծված պիտի մնա, թե ինչու յուր մեծ կառուցվածքին

վերջավորության աղետի դարուն պատկերը քանդակված է։ Ո՞չ ապաքեն անոր Պատմության նպատակն է հուսահատ ժողովրդյան քաջարի նախնիքներու օրինակով խրախույս ներշնչել» (էջ 154—5). ուստի նրան թվում է, թե Ողբի հեղինակն է Ղևոնդ Երեց, որ նրան «հորինել է իբրև վերջաբանություն իր Պատմության նախնական մասին, որ կավարտեր 773 և 774 տարիներու դեպքերու նկարագրությամբ» (էջ 155)։ Բայց տարիներ հետո, երբ Ղեվոնդը շարունակեց գրել 774—790 թվականների անցքերը, որոնք ոչնչով չէին տարբերվում նախընթաց շրջանի անցքերից՝ նա այս Ողբը փոխադրել է իր Պատմության վերջը։ Բայց Ողբն այստեղ էլ չէ մնացել. «այն փրցված է Ղեվոնդի Պատմութենեն և զետեղված իբրև վերջաբան Մ. Խորենացու Հայոց Պատմության. այս բանը կատարված է հընթացս Թ· դարի, որովհետև Հովհաննես կաթողիկոս պատմագիրը կարդացած էր Ողբը Խորենացու Պատմության մեջ» (էջ 156—8)։ Այս գրական գողությունը, սակայն, ինքը՝ Մ. Խորենացին (=Ղևոնդ) չէ կատարել, այլ մի օտար ձեռք նրա մահից քիչ հետո, քանի որ Ղեվոնդի Պատմության մաս կազմող այս Ողբը կարող էր համարվել նաև Հայոց Պատմության իբրև վերջաբանություն՝ «դույզն հավելվածներով և փոփոխություններով» (էջ 158)։

Իբրև այսպիսի «հավելված», Ն. Ակինյանը բերում է Ողբից հետևյալ հատվածը՝ «մուծված անճարակ ձեռքով և անճաշակ ձևով», որի մեջ եզակի և հոգնակի հաջորդում են միմյանց առանց ճշգրիտ հետևողականության. «Մինչ նոքա զմերն յուսային դարձ և պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւս եւ կատարելագոյն յարմարութեամբս, համայն եւ մեք փութայէս դիմեալք ի Բիւզանդիոյ, յուսայաք հարսանեաց պարել... արդ փոխանակ խրախճանութեանն ի վերայ գերեզմանի ողբս ասելով ողորմելի խառաչեմ»[1]։ Նույնպես ներմուծողի կողմից հավելված է համարում Ողբի վերնագիրը՝ «Ողբք վասն բառնալոյ թագաւորութեանն Հայոց

1 «Անճարակություն», «անճաշակություն» թյուր կարծիքը փարատելու համար պետք է ուշադրությամբ կարդալ հատվածը. հեղինակը հոգնակի ձև է գործածում, երբ խոսում է իր և ընկերների մասին, իսկ եզակի ձև է գործածում, երբ խոսում է մ ի ա յ ն իր մասին։ Նույն երևույթը կրկնվում է նաև Ողբի շարունակության մեջ միքանի անգամ։

յազգէն Արշակունեաց, եւ եպիսկոպոսութեանն ի տանէ սրբոյն Գրիգորի»։

Ողբի մեջ հիշատակված հովիվը և հովվակիցը (Սահակ և Մեսրոպ), որոնց հեղինակը կոչում է «հայր», «ծնող», և որոնց մահը ողբում է՝ Ն. Ակինյանը նույնացնում է Սիոն կաթողիկոսի և նրան հաջորդող Եսայի կաթողիկոսի հետ, թեպետ ինքն էլ խոստովանում է, թե «չգիտենք թե ինչ աղերս ունեցած է Ղեւոնդ Սիոն կաթողիկոսի հետ» (էջ 175), նույնպես ոչ մի խոսք չէ ասում, թե որևէ աղերս կամ ծանոթություն ունենար Ղևոնդը Եսայի կաթողիկոսի հետ։

Այսպես որոշելով Ողբի գրության ժամանակը 774—790 թվականներին և Հայոց Պատմության գրվելու ժամանակը 9-րդ դարի սկզբին՝ Ն. Ակինյանն անցնում է իր ուսումնասիրության երկրորդ մասին, այսինքն որոշելու, թե ով է Հայոց Պատմության հեղինակը։ Այս հեղինակը չէր կարող կոչվել Մովսես Խորենացի, Սահակի և Մեսրոպի աշակերտ, որովհետև, ինչպես իրավացի նկատում է Ն. Ակինյանը՝ «Ժամանակակից մը Թ. դարու առաջին տասնյակին պիտի չհամարձակեր սեպհական անվամբ լույս ընծայել պատմություն մը, ուր ինքը զինքը կեղծեր աշակերտ Սահակի և Մաշտոցի» (էջ 289)։ Ուրեմն պետք էր փնտրել 8-րդ դարի վերջերում և 9-րդ դարի սկզբներում մի ուրիշ հարմար մատենագիր, որին կարելի լիներ վերագրել Հայոց Պատմության հորինումը։ «750—850 շրջանեն չունինք մենք աչքի զարնող պատմագիր մատենագիր, քան Ղեվոնդ Երեցը, որ յուր պատմագրքովը հանած էր անշուշտ հռչակ յուր դարուն» (էջ 283—284)։ Եվ Ն. Ակինյանը որոնում է տվյալներ, որոնց հիման վրա կարելի լինի նույնացնել Մովսես Խորենացուն Ղեվոնդ Երեցի հետ, այսինքն Հայոց Պատմությունը հայտարարել Ղևոնդի գրչից դուրս եկած։ Նրա որոնումներն ապարդյուն չեն անցել. նա գտել է ինը կետ, որոնց մեջ նկատվում է նույնություն՝ «1. նկարագրի, 2. բառագիտության, 3. մտքերի արտահայտության, 4. գաղափարակցության, 5. աշխարհագրական ծանոթությունների, 6. դատողության և ըմբռնումների, 7. ժամանակակից պարագաների, 8. միտումների (համակրության և հակակրության), 9. մեկ տանից են երկու հեղինակների էլ մեկենասները» (էջ 184)։

Նկարագրի նույնության մեջ Ն. Ակինյանը ցույց է տալիս, որ երկու հեղինակներն էլ հոգևորական են, հմուտ ս. Գրքին, կրոնական գրականության, բայց խուսափած են դավանաբանական վեճերից. գործել են Հայաստանում, շրջած են երկրի զանազան կողմերը, ապրել են բազմադեպ ժամանակում, օտար թագավորների լծի տակ, բարեկամ և խնկարկու են Բագրատունյաց տան և նրանցից հանձնարարություն են ստացել պատմություն գրելու. Ղևոնդն ավելի երիտասարդ հասակում (50—60 տարեկան, ինչպես որոշում է Ն. Ակինյանը «Ղևոնդ Երեց պատմագիր» ուսումնասիրության մեջ», էջ 34) զբաղվել է մերձժամանակյա և ժամանակակից պատմությամբ, իսկ Մովսես (70—80 տարեկան, քանի որ Հայոց Պատմության գրության ժամանակը Ն. Ակինյանը որոշում է շուրջ 810 թվին) ձեռնարկել է հորինել հնագույն և հին ժամանակների պատմությունը (էջ 184—187):

Բառագիտության նույնության նկատմամբ Ն. Ակինյանը գրում է. «Լեզուն և ոճը Ղևոնդի քով ավելի կենդանի է և պատկերավոր, երիտասարդական խանդն է հոն արտահայտվողը (իսկ 289-րդ էջում Ն. Ակինյանը Ղևոնդի նկարագրությունը կոչում է «անպաճույճ, անսեթևեթ»); մինչ Մովսես, ծերության ալիքով ծածկված, ավելի խոհական ոճով, ավելի պերճաբան լեզվով կջանա արտահայտություն շնորհել յուր մտածմունքներուն: Նա տարիների ընթացքին» (այսինքն 50—60 տարեկանից մինչև 70—80 տարեկան դառնալը) «ավելի զարգացուցած է յուր մտավոր պաշարը, ավելի խորացած իմաստասիրության ուսումներու խորքը: Հասակի տարբերությունը և իբրև պերճաբան փայլելու ձգտումը հառաջ բերած է երիտասարդ Ղևոնդի և ծերունազարդ Մովսեսի մեջ զանազանություն ոճի և լեզվի. բայց մեկ խմորով զանգված է ամբողջությունը, մեկ է բառագանձը, մտքերը մարմնավորելու հանգամանքը» (էջ 187): Սրանից հետո Ն. Ակինյանը բերում է 103 բառ, որոնք գործ են ածված թե Հայոց Պատմության և թե Ղևոնդի Պատմության մեջ, որոնց մասին ինքն էլ նկատում է, թե «միայն երկու հեղինակներու առանձնահատուկ բառեր չեն և ոչ ալ հազվագյուտ... կան նաև այնպիսիներ, որոնք կամ ձևով և կամ իմաստով միայն երկու հեղինակներու հատուկ են» (էջ 187—8). իբրև այսպիսի Ն. Ակինյանը նշանակում է երեք բառ՝ համատոհմ, ճախարարական և վաղր:

Երկու հեղինակների մեջ նկատվող ոճի մեծ զանազանությունը Ն. Ակինյանը բացատրում է նրանով, որ «Ղևոնդն իրեն ժամանակակից անցքերը նկարագրել է ինչպես լսած ու նկատած է, առանց բռնազբոսության, առանց հնարագիտություն ի գործ դնելու և այնպես, որ իր մեկենասին, Շապուհ Բագրատունուն մատչելի, դյուրահասկանալի լիներ իր գրածը. այնինչ Մովսես, որ գրի պիտի առներ անգիր ժամանակների անգո պատմությունները՝ պետք է ունենար հնարագյուտ միտք. ուր հանճարը «կտկարանար՝ հոն խոսքը պիտի ճարտարամտեր։ Արտաքին համեմունքով բովանդակության անհամությունն սքողել, ձայնի ելևէջներով ուժ տալ տկար փաստերուն՝ այդ արվեստն է պերճախոսներուն»։ Նույն Մովսեսը Երրորդ գրքում, երբ ունեցել է գրավոր աղբյուրներ, «հռետորական հնարագիտության պետք չէ զգացել և գրել է ավելի պարզ, դյուրընկալ ոճով» (էջ 204—5)։

Մտքերի արտահայտության նույնության համար Ն. Ակինյանը բերում է երեք օրինակ, որտեղ նման արտահայտություններ կան Ղևոնդի և Մովսեսի մեջ. 1. Հայրենիքի համար մեռնելը լավ համարել, քան տեսնել հայրենիքն օտարների լծի տակ նվաճված ու ոտնակոխ. 2. Եփրատի նավակամրջի լարերը կտրելը. (Խորենացու մոտ լարերը կտրում են իրենք՝ պարսիկները, արշավող հույն բանակի ճանապարհը դժվարացնելու համար. բայց Տիրան թագավորը հալածում է պարսիկներին և հույներին ապահով անց է կացնում գետով։ Ղևոնդի մոտ նավակամրջի լարերը նենգությամբ կտրում է Վարդ իշխանը, որպեսզի հույները չկարողանան փախչել, որոնք կոտորվում են պարսիկներից). 3. Երասխ գետի սառչելը ձմեռվա խստությունից։

Գաղափարակցության նույնության համար Ն. Ակինյանը բերում է երեք համեմատություն Ղևոնդի և Մովսեսի միջև։ Առաջինում Ղևոնդը պատմում է արաբացոց Մսլիմ զորավարի արշավանքը Հոնաց երկիրը, Ճորա Պահակից (Դարբանդից) անցնելով, որտեղ հոներին օգնության է գալիս Խազրաց թագավորը, իսկ արաբացիք Կովկասյան լեռների միջով փախչում են (8-րդ դարում)։ Սրա դեմ Մովսեսը պատմում է, թե Վաղարշ թագավորի ժամանակ (3-րդ դարում) Խազիրները, Բասիլները Ճորա պահակից անցնելով՝ արշավում են Կուր գետից հարավ։ Վաղարշը նրանց հալածելով՝ քշում է Ճորա պահակից այն կողմը, բայց այստեղ մի

նոր ճակատամարտում սպանվում է։ Երկրորդում Ղևոնդը պատմում է, թե արաբացոց Մահմեդ զորավարը 200,000 զորքով գնում է Ջինաստանը նվաճելու և հասնելով սահմանի մոտ՝ Ջինաց թագավորից պահանջում է հնազանդություն։ Թագավորը հայտնում է, թե իրենք երբեք ոչ ոքի հպատակ չեն եղել, ինքը միայն հոժար է ընծաներ տալ, որ ստանան ու հեռանան։ Մահմեդը պահանջում է 30,000 կույս աղջիկ։ Թագավորը համաձայնում է, պատրաստում է կանանց զգեստով ծպտած 40,000 կտրիճ զորական, Մահմեդին մարդ է ուղարկում, որ իր զորքից 30,000 ընտիրներ մակույկներով անց կացնեն իրենց կողմը, որպեսզի աղջիկները բաժանեն նրանց մեջ։ Երբ Արաբացիք անցնում են, ծպտած զինվորները հարձակվում ու կոտորում են նրանց, Մահմեդը կորագլուխ հետ է դառնում (8-րդ դար)։ Սրա դեմ Մովսեսը պատմում է, որ Ալանները արշավեցին Հայաստան. հայերը նրանց հետ քշեցին Կուր գետից այն կողմը և գերի բռնեցին Թագավորի որդուն։ Թագավորի դուստր Սաթինիկը գալիս է Կուրի ափը և թարգմանի միջոցով ձայն է տալիս Հայոց Թագավոր Արտաշեսին, որ պատանուն ազատ արձակե։ Արտաշեսը շատ հավանում է Սաթինիկին և նրան կնության է խնդրում ու հետը ամուսնանում (1—2-րդ դար)։ Երրորդում Ղևոնդը պատմում է, թե արաբացոց Մրվան զորավարը Հայոց Աշոտ իշխանի և այլ նախարարների զորքերով միասին արշավում է Հոնաց աշխարհը, կոտորածներ է անում, հարուստ ավար բերում, որից մի մասն էլ բաժանում է Աշոտին և մյուս նախարարներին (8-րդ դարում)։ Սրա դեմ Մովսեսը պատմում է, թե Ալանաց աշխարհում Սաթինիկի հայր Թագավորը մեռնում է. մի ուրիշը բռնանալով՝ հալածում է Թագաժառանգին, Սաթինիկի եղբորը, ուստի Արտաշեսը Սմբատ Բագրատունու զորքով ուղարկում է Ալանների աշխարհը, որ հալածում է բռնավորին, Թագավորեցնում է Սաթինիկի եղբորը և մեծ գաղթականություն է բերում Հայաստան։ Դարձյալ պատմում է Մովսեսը, թե Կասպից ծովի շրջակայքի ցեղերը չեն ուզում հպատակվել Պարսից Արտաշես Թագավորին (Հայոց Թագավորի բարերարին), ուստի նույն Սմբատ սպարապետն Արտաշեսի հրամանով գնում նվաճում է ապստամբներին և ավելի մեծ գաղթականություն է բերում Հայաստան. Թագավորը Սմբատին նվիրում է ամբողջ ավարը (2-րդ դարում)։ Այս երեք գաղափարակցության

նկատմամբ էլ Ն. Ակինյանը դիտում է, որ «Մովսես ժողովրդական ավանդությունները և կամ սեպհական մտքի հղացումները պատմական հանդերձանքով բեմադրելու համար սովոր է շատ անգամ իրեն կաղապար ընտրել պատմական դեպքեր... Մովսես յուր մտածումներու և հղացումներու մեջ կստանա տպավորություններ պատմական դեպքերին և հատկապես Ղևոնդի Պատմագրքին մեջ բեմադրված պատկերներեն։ Դեպքերը կկրկնվին պարզապես ուրիշ հանդերձներու մեջ, այս անգամ ներկայացված երևակայական թատերաբեմի վրա» (էջ 209—210). ուրիշ պարզ խոսքերով ասած՝ ինչ որ Ղևոնդը գրել է իբրև պարզ և ստույգ պատմական իրողություններ՝ Մովսեսը (այսինքն նույն Ղևոնդը, 70—80 տարեկան հասակում) օգտագործել է երևակայական կեղծ պատմություններ ստեղծելու համար։

Աշխարհագրական և ազգագրական ծանոթությունների նույնությունը ցույց տալու համար Ն. Ակինյանը մի-մի մեջբերում է անում Ղևոնդից ու Մովսեսից, որտեղ հիշատակվում են Արաքսի շրջակայքի քաղաքներ ու ավաններ—Նախճավան, Խրամ, Ջուղա, Խոշակունիք. դարձյալ հիշում է, որ երկու հեղինակներն էլ լավ ծանոթ են Տայոց աշխարհին և մերձակա հողին. երկուսն էլ գիտեն Վրաստանի Վերիա կոչումը, երկուսն էլ ծանոթ են Չինաստանի թագավորի ճենբակուր կոչման և ճենացիների խաղաղասեր բնավորության. երկուսն էլ գիտեն Տրունյաց տոհմը։ Մովսեսը հիշում է Ամատունյաց տոհմը, որը սերեցնում է հրեաներից և նկարագրում է նրանց որպես անձնյա, բարեձև և ուժեղ մարդիկ. Ղևոնդն էլ իր Պատմության մեջ հիշում է Ամատունյաց շահատակությունները։

Դատողությունների և ըմբռնումների նույնությունը ցույց տալու համար Ն. Ակինյանը հիշում է, որ Մովսես Խորենացին Հայերին սերեցնում է Հայկի հորից՝ Թորգոմից և հայ ժողովուրդը կոչում է տուն Թորգոմա («անշուշտ հոս Մովսեսը ունեցել է աչքի առաջ ազգային ավանդություն մը») (էջ 222)։ Ղևոնդն ևս Հայաստանը կոչում է տուն Թորգոմա։

Ժամանակակից պարագաների նույնությունը ցույց տալու համար Ն. Ակինյանը բերում է Մովսեսի խոսքերը (Ա. գիրք, գլ. ԻԲ). «Սիրելի էր ինձ յայնժամ [Հայկազանց ժամանակ] գալ փրկչին եւ զիս գնել, եւ առ նոքօք յաշխարհ գմուտն իմ լինել...

և յարդեայս ապրել վտանգից։ Այլ վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումն այն, թէ արդեօք եւ վիճակ։ Բայց ես առ օտարաց թագաւորութեամբն կացեալ» և այլն։ Ն. Ակինյանը գտնում է, որ այս խոսքերը չէր կարող ասել 5-րդ դարում ապրող Խորենացին, որ գոնե հայ Վռամշապուհ թագավորին տեսած պիտի լիներ, այլ համարվում են Ղևոնդի ժամանակին, երբ վաղուց արդեն վերացած էր ազգային իշխանությունը և հույս չկար նրա վերանորոգության։

Միտումների նույնությունը ցույց տալու համար Ն. Ակինյանը երկարորեն կանգ է առնում երկու հեղինակների վերաբերմունքի վրա Մամիկոնյան և Բագրատունյան տների հանդեպ։ Մովսեսն ատում է Մամիկոնյաններին, նվաստացնում է նրանց ազգաշահ գործունեությունը, դուրս է բերում իբրև տիրադրուժներ, նենգավորներ և այլն, ընդհակառակը, շատ բարձրացնում է Բագրատունիներին և սրանց է վերագրում այն լավ գործերը, որ կատարել էին Մամիկոնյանները։ Այս բանը Ն. Ակինյանը գտնում է 5-րդ դարի համար անբացատրելի, բայց միանգամայն բնական և հասկանալի՝ ութերորդ դարի համար, երբ իշխանապետության համար իրար հետ մրցում էին Մամիկոնյաններն ու Բագրատունիները, ինչպես նկարագրում է Ղևոնդը, մինչև որ մի մեծ ապստամբության ժամանակ, որ Մամիկոնյանները կազմակերպեցին արաբացոց իշխանության դեմ՝ նրանց գլխավորներն ընկան կռվի դաշտում, մնացած սերունդն էլ բնաջինջ եղավ. Մամիկոնյանները պատմության ասպարեզից դուրս ընկան. և Բագրատունիներն ապահովեցին իրանց իշխանությունը (որ հետո փոխվեց թագավորության)։ Ղևոնդը նույնպես, ըստ Ն. Ակինյանի՝ «վարակված է ոչ նվազ հակակրությամբ հանդեպ Մամիկոնյաններու» (էջ 237), նույնպես չափազանց գովեստներ է շռայլում Բագրատունիներին (230—31)։ Երկու հեղինակներն էլ, որոնք պատմագրելու հանձնարարություն ստացել էին Բագրատունի իշխաններից՝ նրանց զգացումների թարգմաններն են հանդիսացել (էջ 237)։

Նույնությունների վերջին կետն է՝ երկու հեղինակների մեկենասների էլ միևնույն Բագրատունյաց տոհմից լինելը։ Ղևոնդի մեկենասը հայտնի է — Շապուհ Բագրատունին։ Գալով Մովսեսի մեկենաս Սահակ Բագրատունուն՝ Ն. Ակինյանը չէ ընդունում, որ





այս անձը լիներ այն Սահակ ասպետ Բագրատունին, որ Վահան Մամիկոնյանի ապստամբության ժամանակ Հայաստանի մարզպան նշանակվեց Վահանի խմբի կողմից 481-ին և հետո մի ճակատամարտի մեջ ընկավ. «քանի որ ամեն կասկածե վեր է, որ Հայոց Պատմության հեղինակը ժամանակով շատ հեռու է 5-րդ դարեն» (էջ 254)։ Ուստի նա երկար պատմական և ճյուղագրական որոնումներ է անում և գտնում է մի այլ Սահակ Բագրատունի, Աշոտ Սահակյան Բագրատունու որդին, որ 806 թվին տեր դարձավ Անձևացյաց երկրին և այն ժամանակ իր մոտ հրավիրեց Մովսեսին, հանձնարարելով գրել Հայոց Պատմությունը։ Պատմությունը նա սկսել է գրել 806-ից հետո և վերջացրել է ոչ շատ ուշ, քան 820 թվականը, մոտավորապես 810-ին։

Վերը բերված բոլոր ապացույցներից Ն. Ակինյանը եզրակացնում է, թե «Մովսես Խորենացին և Ղևոնդ միևնույն անձնավորություններն են, ինչպես միևնույն են Մովսես և Մար Աբաս Կատինա» (էջ 286)։

Մնում է մի կնճռոտ հարց ևս լուծել։ Եթե Մովսես Խորենացին և Ղևոնդը միևնույն անձն են, ապա այս անուններից մեկը կամ մյուսը կեղծ է։ «Քանի որ Ղևոնդի Պատմությունը իբրև ժամանակակից դեպքերու անպաճույճ անսեթևեթ նկարագրություն, գրված է ժամանակակցե մը, պիտի ենթադրենք, թե չկար տեղիք խեղաթյուրելու, կեղծելու հեղինակին անունը. ուստի ավանդությունը հավատարմությամբ պահպանած է «Ղևոնդ Երեց» հորջորջանքը հեղինակին՝ գրության ճակատը կամ վերջավորության»։ Բայց Մովսես անունը կարող է նկատվել կեղծիք, «վասն զի կեղծված է անոր ժամանակն ալ, գրության ձևն ալ... կեղծողը երկրորդ գրիչ մըն է, որ հեղինակին (այսինքն Ղևոնդ-Մովսեսի) մահվանեն ետքը, հավատալի և հեղինակավոր ընծայելու համար անոր խոսքերը՝ կարևոր տեսած է կեղծել ժամանակն ալ, անունն ալ» (էջ 289)։

«Մովսես» անվան նկատմամբ Ն. Ակինյանը ենթադրում է, թե «կեղծողն աչքի առջև ունեցած է Հնգամատյանին հեղինակը Մովսես մարգարեն, որ պատմած է Իսրայելի ժողովրդյան ծննդաբանությունը և թե ինչպես նա յուր ժողովուրդը եգիպտական ծառայութենեն հանեց և Կարմիր ծովու խոր անդունդներեն անցուց, տարավ և հասցուց Ավետյաց երկրին սահմանները։ Նույն

գերը կկատարեր Հայոց Պատմության հեղինակն ալ, որ ժամանակի անծայր խորքերեն կհաներ ի լույս ազգի մը պատմությունը և կբերեր կհասցներ ժամանակ մը, ուր ազգը գրականությամբ նոր զինված, կազմակերպված, պիտի վայելեր Ավետյաց երկիրը մտքի և լույսի» (էջ 290)։

«Խորենացի» հորջորջանքի նկատմամբ Ն. Ակինյանն ասում է, որ «այս հորջորջանքը պիտի ենթադրե Խորյան կամ Խորեն գավառ մը կամ քաղաք մը. այսպիսի վայր ծանոթ չէ մեզ Հայաստանի սահմաններու մեջ։ Հավանորեն նաև այս հորջորջանքի մեջ բառախաղ մը թաքնված է. խօր արմատեն ածանցված, կամ «Խորին»—իմաստուն, հմուտ, կամ «Խուրին»-Խորին — ընթերցող իմաստով (հմմտ. Մար Աբաս Կատինա), և կամ թերևս «որ ընդ խորս էանց» պատմութեան Հայոց»[1]։

«Մովսեսը, ժամանակակից ըմբռնմամբ, Արծրունիները կտուգարանե Արծիվունի, այսպես նաև Ամատունի—Համատանցի և այլն. ինչ զարմանք, եթե իր իսկ ստուգաբանության օրենքներով երկրորդ գրիչ մը հորինած ըլլա իր ծագումն ալ իմաստության, հանճարի խօրֆերեն, և կամ բազմամյա ծերունուն անդուլ ընթերցասիրությունը նկատելով ասորական խուրի = ընթերցասեր մակդիրն այսպես բարեփոխած ըլլա։ Համենայն դեպս բառախաղ մը պետք է ենթադրել «Խորենացի» հորջորջման մեջ, քան տեղվո անուն»... (էջ 290)։

Այսպես ուրեմն, ըստ Ն. Ակինյանի, Մովսես Խորենացի անունները կեղծիքներ են, 9-րդ դարի երկրորդ տասնամյակում մի անծանոթ մարդու կողմից հորինված, և Մովսես Խորենացի անունը կրող մատենագիր մենք առհասարակ չենք ունեցել։ Non plus ultra!

Իմ ծրագրից դուրս է քննել այս ուսումնասիրությունը. այս համառոտ ամփոփումով կամեցա ծանոթացնել այն մեթոդին և այն հիմունքներին, որոնցից նա հանել է իր այս եզրակացու-

[1] Այս ուսումնասիրությունը տպելուց առաջ Ն. Ակինյանը նրա համառոտությունը տպագրել էր «Անահիտ» հանդեսում, որտեղ «Խորենացի» բառը պարզապես ստուգաբանել էր «Խորէն անցի». երևի ինքն էլ նկատել է այնուհետև, որ այս սրամիտ ստուգաբանությունը շատ է հիշեցնում Ակոռի = արկ ուռի, Կատու = կայ ի տուն, Կանթեղ = կայ անդ եղ... ստուգաբանությունները և հարկ է համարել փոքր ինչ ձևը բարվոքել, իմաստը պահպանելով։

թյունը։ Որքան գիտեմ՝ Ն. Ակինյանի կարծիքն ընդունելություն չգտավ։ («Անահիտի» մեջ բավական մանրամասն և հմտալից կերպով քննվել ու հերքվել է Ն. Ակինյանի կարծիքը։ Ակադ. Հ. Մանանդյանը նույնպես հավանական և ընդունելի չէ համարում Ն. Ակինյանի ենթադրություններից և ոչ մեկը, այսինքն Խորենացու և Ղևոնդի միևնույն անձ լինելը. Պատմությունը Անձևացյաց երկրի տեր Սահակ Բագրատունու հանձնարարությամբ գրելը մոտավորապես 810 թվականին. Ողբի հետո կցված լինելը Հայոց Պատմության. նրա հորինված լինելն իբրև Ղևոնդի Պատմության առաջին մասի վերջաբանություն. բնության արհավիրքների նույնացումը Միջագետքի արհավիրքների հետ. քաղաքական անցքերի նկարագրության մեջ 8-րդ դարի անցքերը տեսնելը և այլն)։ Ինձ թվում է, թե Ն. Ակինյանի ուսումնասիրությունը կարող է մոլորեցնել միայն հին գրականության անտեղյակ դյուրահավան մարդկանց։ Իմ վերաբերմունքը բացարձակապես բացասական է, եթե չասեմ ավելին։

## ԱԿԱԴ. Հ. ՄԱՆԱՆԴՅԱՆ. «ԽՈՐԵՆԱՑՈՒ ԱՌԵՂԾՎԱԾԻ ԼՈՒԾՈՒՄԸ»

Հեղինակն իր ուսումնասիրության առաջաբանում հայտնում է, թե ինքն սկզբում զբաղվելիս է եղել Խորենացու Աշխարհացույցի ընդարձակ և համառոտ խմբագրությունների համեմատական քննությամբ։ Ուսումնասիրության ընթացքում հետզհետե երևան են եկել կարևոր ու ծանրակշիռ հետևություններ, որոնք ուղեցույց են լինելու Խորենացու առեղծվածի լուծման։ Հեղինակի համար միանգամայն պարզ և անվիճելի է եղել, որ Աշխարհացույցը Խորենացու աշխատությունն է և գրված է 9-րդ դարում: Ուրեմն անհրաժեշտ է դարձել Խորենացու ամբողջ խնդիրը հետազոտել ու լուսաբանել այս նոր հայեցակետով (Առաջաբան, էջ 3)։ Նույն միտքը կրկնում է և հետո՝ երկու անգամ. «Աշխարհացույցի խնդրի լուծումը, ինչպես կտեսնենք, հնարավորություն է տալիս վերջնականապես պարզելու նաև Խորենացու չարաբաստիկ հարցը, որի մասին անթիվ քննադատություններ են լույս տեսել ու թեր և դեմ կարծիքներ հայտնվել» (էջ 46)։ «Արդ՝ եթե Աշխարհացույցի հեղինակը Մովսես Խորենացին է, իսկ այդ, ինչպես տեսանք, անվիճելի է ու անտարակուսելի՝ շատ պարզ է,

որ Խորենացու ժամանակն իջեցվելու է իններորդ դարը։ Այս եզրակացությամբ Խորենացու ժամանակի համար ստացվում է որոշ ու հաստատուն մի կռվան» (էջ 82)։

Ուրեմն այս ուսումնասիրության տրամաբանական կառուցվածքը կարելի է ձևակերպել այսպես.—

Ըստ ակադ. Մանանդյանի՝

1. Աշխարհացույցն իններորդ դարի գործ է.

2. Աշխարհացույցի և Հայոց Պատմության հեղինակը նույն անձն է—Մովսես Խորենացի.

3. Ուրեմն Մովսես Խորենացին ապրել է իններորդ դարում և նրա Պատմությունն իններորդ դարի գործ է։

Եզրակացությունը տրամաբանորեն ճշմարիտ և անխուսափելի է, եթե նախադրյալները ճշմարիտ լինեին, իսկ եթե նախադրյալներից գոնե մեկը ճշմարիտ չլինի, կառուցվածքը կտապալվի, կտապալվի այն մտքով, թե Աշխարհացույցը չէ կարող կռվան լինել Խորենացու և նրա Պատմության ժամանակը որոշելու համար։

Հեղինակն իր ուսումնասիրության առաջին մասում աշխատում է ապացուցել իր երկու նախադրյալները։ Նա մանրամասն հիշում է Աշխարհացույցի տպագրությունները, ժամանակագրական կարգով բերում է զանազան գիտնականների կարծիքները Աշխարհացույցի և նրա հեղինակի մասին, քննում է այդ կարծիքները, հերքում կամ ընդունում։

Ես կանգ կառնեմ նրա ուսումնասիրության այս մասում բերված կետերից միայն մի քանիսի վրա, որոնք անմիջապես շոշափում են Աշխարհացույցի գրության ժամանակի և նրա հեղինակի հարցերը, բաց թողնելով այն հարցերը, որոնք անմիջական կապ չունեին այս երկու հարցերի հետ։

1. Աշխարհացույցի երկու խմբագրությունների խնդիրը։ Մինչև 1881 թվականը բոլոր բանասերները, որոնք զբաղվում էին Աշխարհացույցով, միամտաբար ընդունում էին, թե այս Աշխարհացույցը, որի ուղղված բնագիրը տպվեց Վենետիկում 1845-ին և երկրորդ անգամ՝ 1865-ին, Մ. Խորենացու մյուս գրվածքների հետ՝ բուն հեղինակի գործն է, Մ. Խորենացու կամ մի ուրիշ անձի, և այս բնագրի տվյալների վրա էին հիմնում իրենց դատողությունները նրա գրության ժամանակի և նրա հեղինակի

մասին։ Բայց 1881-ին Վենետիկի մխիթարյան Ա. Սուքրյանը Աշխարհացույցը հրատարակեց ֆրանսերեն թարգմանությամբ հանդերձ՝ մի նոր ձեռագրից, որ շատ տարբերվում էր մինչև այդ հրատարակված բնագրից, ամենից առաջ իր ընդարձակությամբ — նա գրեթե երկու անգամ ավելի ընդարձակ էր, քան նախկին հրատարակությունը։ Սուքրյանն իր հրատարակության առաջաբանում պնդում էր, հակառակ պրոֆ. Պատկանյանի, թե այդ Աշխարհացույցը, անշուշտ, Մովսես Խորենացու գործն է 5-րդ դարից, բայց հետսամուտ հավելվածներով ու ընդմիջարկություններով։ Բայց նա բոլորովին չշոշափեց աղերսը իր հրատարակած ընդարձակ խմբագրության և նախկին համառոտ խմբագրության միջև. սրանցից ո՞րն է իսկական Խորենացու գրածը (նրա առաջաբանից կարելի է եզրակացնել, թե նա Խորենացու գրած հարազատ բնագիր համարում է համառոտը), և ինչ կապ ունի նրա հետ մյուսը (ընդարձակը). այս կարևոր հարցը նա բոլորովին չէ շոշափել։

Այս հարցով առաջին անգամ զբաղվել է Մակլերը, որ սկզբում Աշխարհացույցի սկզբնական բնագիր համարում էր ընդարձակ խմբագրությունը, սակայն հետո այս կարծիքը փոխեց և հանգեց այն եզրակացության, թե Աշխարհացույցի երկու խմբագրություններն էլ, թե՛ ընդարձակը և թե՛ համառոտը, մեկը մյուսից անկախ համառոտված են նախնական ընդարձակ բնագրից. Makler—Zur Geschichte des Ps. Moses Chorenatsi, Armeniaca, II, 1927. այս տեղեկությունը բերում եմ ակադ. Մանանդյանի գրքից (էջ 14)։ Նույն հարցով մանրամասն զբաղվել է նաև ակադ. Մանանդյանը և մի շարք փաստերով ապացուցել է, որ Աշխարհացույցի ո՛չ ընդարձակը և ոչ համառոտը սկզբնագրեր չեն և մեկը մյուսից չեն բղխում, այլ երկուսն էլ համառոտված են մի նախնական բնագրից, որ ավելի ընդարձակ է եղել և այժմ անհետ կորել է։ Խմբագրությունների մեջ կան հավելվածներ, որոնց մի մասը կարող է ներմուծված լինել խմբագրողների կամ ընդօրինակողների կողմից (էջ 17)։

2. Աշխարհացույցը Անանիա Շիրակացու գրածը չէ։ Պրոֆ. Ք. Պատկանյանը 1877 թվին տպեց Աշխարհացույցը (համառոտը) ռուսերեն թարգմանության հետ միասին հարուստ և հմտալից ծանոթություններով։ Նա, համոզված լինելով, որ Մովսես Խորե-

նացին 5-րդ դարի հեղինակ է՝ կարծիք հայտնեց, թե նա չէր կարող լինել հեղինակ Աշխարհացույցի, որը պարունակում է տեղեկություններ և աղբյուրներ 6-րդ և 7-րդ դարերից։ Ի միջի այլոց նա առաջինն էր, որ ցույց տվեց, թե Աշխարհացույցի մեջ իբրև աղբյուր հիշված Կոստանդին Անտիոքացին 6-րդ դարի նույն հեղինակ Կոզմաս Հնդկաչուն է, որի Քրիստոնեական Երկրագրությունից օգտվել է Աշխարհացույցի հեղինակը։ Ք. Պատկանյանը հանգեց այն եզրակացության, թե Աշխարհացույցը գրված է 7-րդ դարում, և նրա հեղինակ ենթադրեց Անանիա Շիրակացուն, որ 7-րդ դարի հեղինակ է ու հայտնի է թվաբանական և աստղաբաշխական աշխատություններով։ Պատկանյանի այս ենթադրությունն ընդհանուր ընդունելություն գտավ (չնայելով Սուքրյանի հրատարակության, որի առաջաբանում նա ճգնում էր ապացուցել, թե Աշխարհացույցը Մ. Խորենացու գործն է)։ Նրան հետևեցին Գուտշմիդը, Խալաթյանը, Մարկվարտը և ուրիշները։ Ակադ. Մանանդյանը իր ներկա ուսումնասիրության մեջ մի առ մի քննում է Ք. Պատկանյանի բերած փաստերը հօգուտ իր ենթադրության և հերքում է նրանց. մյուս կողմից՝ համեմատում է շատ կետեր Աշխարհացույցի ու Անանիա Շիրակացու իսկական գրվածքների մեջ և ցույց է տալիս, որ աշխարհագրական կարևոր հարցերում իրար բոլորովին տարբեր կարծիքներ ունեին Անանիա Շիրակացին և Աշխարհացույցի հեղինակը, այնպես որ անհնար է Աշխարհացույցի հեղինակ համարել Շիրակացուն։

3. Ք. Պատկանյանի կարծիքը հերքելուց հետո ակադ. Մանանդյանը կանգ է առնում Աշխարհացույցի և Խորենացու Պատմության հարաբերության վրա։ Երկու գրվածքներից էլ նա բերում է բավական թվով հատվածներ, որոնց մեջ երևում է հայացքների նույնություն տիեզերագրական, աշխարհագրական և պատմական զանազան հարցերի նկատմամբ. համեմատում է երկու գրվածքների ոճը, և բազմաթիվ օրինակներով ցույց է տալիս, որ Պատմության հեղինակ Մովսես Խորենացին և Աշխարհացույցի հեղինակը գրելու միևնույն սովորությունն ունեին։ Սրանց վրա ավելացնելով նաև այն փաստը, որ բոլոր ձեռագրերում Աշխարհացույցը վերագրվում է Մովսես Խորենացուն՝ նա հանգում է այն եզրակացության, թե Աշխարհացույցի հեղինակը Մովսես Խորենացին է։

Ակադ. Մանանդյանի այս երեք եզրակացությունները էլ համոզիչ են և միանգամայն ընդունելի[1]։ Սրանք կազմում են նրա ուսումնասիրության դրական արժեքավոր արդյունքները։ Ճիշտ է, նրանց մեջ նոր բան քիչ կա (բացի Պատկանյանի կարծիքի հերքումից, որ բոլորովին նոր և ինքնուրույն է), բայց ինչ որ առաջ գիտեինք ենթադրաբար, ավանդաբար՝ այժմ գիտենք հաստատուն կերպով։ Խորենացին դարձյալ հայտարարվում է հեղինակ Աշխարհացույցի, ինչպես ավանդաբար ճանաչված է եղել մինչև 1819 թվականը, երբ Սեն-Մարտենն առաջին անգամ նրան կոչեց «Աշխարհացոյց սուտն Մովսիսի Խորենացւոյ», որի շավիղով էլ գնաց Ք. Պատկանյանը, հայտարարելով Աշխարհացույցը 7-րդ դարի գործ՝ Անանիա Շիրակացու հեղինակություն։

Աշխարհացույցն այժմ դարձյալ իր իսկական հեղինակին ընծայվեց, սակայն այն կարևոր տարբերությամբ հին, ավանդական հայացքից, որ ներկայումս մեր ունեցած Աշխարհացույցի

---

1 Անհրաժեշտ եմ համարում հայտնել, որ 1936 թվին, երբ ես այս աշխատությունը գրում էի՝ ակադեմիկոս Մանանդյանի բերած ապացույցները՝ Աշխարհացույցի Խորենացուն պատկանելու մասին՝ ինձ ևս բոլորովին համոզիչ թվացին, և ես ուրախացա, որ այս կնճռոտ խնդիրը վերջնականապես լուծվեց բավարար կերպով։ Բայց 1938 թվին ես Երևանում կարդացի Պետ. Ձեռագրատան ավագ աշխատակից Աշ. Աբրահամյանի ձեռագիր աշխատությունը Անանիա Շիրակացու և քննության առարկա եղող Աշխարհացույցի մասին։ Աշ. Աբրահամյանը մի առ մի քննում է ակադ. Մանանդյանի բոլոր ապացույցները հօգուտ նրա կարծիքի, թե Աշխարհացույցը Խորենացուն է պատկանում, հերքում է այդ ապացույցները և իր կողմից բազմաթիվ անհերքելի ապացույցներ է բերում, որ այս Աշխարհացույցը պատկանում է Շիրակացուն։ Ի միջի այլոց՝ նա մի առ մի քննելով Պետ. Մատենադարանի Աշխարհացույցի 36 ձեռագիր օրինակները և նրանց ճյուղագրությունը կազմելով՝ ցույց է տվել, որ Խորենացու անունը կրում են Աշխարհացույցի նորագույն ձեռագրերը (սկսած 1600 թվականից), իսկ նրանից առաջ գրված հնագույն 7 օրինակ հեղինակի անուն չեն կրում։ Բերում է նաև մի շարք մատենագրական ցուցումներ, համեմատություններ Շիրակացու գրվածքների և Աշխարհացույցի։ Ինձ համար այլևս կասկած չմնաց, որ Աշխարհացույցը, անշուշտ, Անանիա Շիրակացու գործն է։ Այս բացատրությունը տալուց հետո, այլևս հարկ չեմ համարում իմ այս աշխատության մեջ գրածս փոփոխել, քանի որ իմ տարաձայնությունն ակադ. Մանանդյանի հետ ոչ այնքան վերաբերում է Աշխարհացույցի հեղինակի անձին, որքան գրության ժամանակին և իմ պնդումները, թե Աշխարհացույցը 9-րդ դարի գործ չէ, այլ 7-րդ դարի կամ ավելի հին ժամանակի՝ դարձյալ մնում են իրենց ուժի մեջ։

Երկու խմբագրություններից ոչ մեկը Մ. Խորենացու գրչից դուրս եկած բնագիրը չէ. այդ բնագիրն անհետ կորած է, եղած խմբագրությունները համառոտված են նրանից և կրում են հավելումներ ու ընդմիջարկություններ խմբագրողների և արտագրողների կողմից։

**4. Աշխարհացույցի գրության ժամանակը։** Հաստատելուց հետո, որ Աշխարհացույցը Մ. Խորենացու գրածն է, ակադ. Մանանդյանը դիմում է որոշելու Աշխարհացույցի գրության ժամանակը, որ նրա աշխատության կարևորագույն, հիմնական կետը պետք է լինի, քանի որ նա իբրև հաստատուն կռվան պիտի ծառայի նաև Պատմության ժամանակը որոշելու, Խորենացու առեղծվածը լուծելու համար։ Ինչպես սկզբում տեսանք՝ ակադ. Մանանդյանն իր ուսումնասիրության առաջաբանում հայտնում է, թե իրեն համար միանգամայն պարզ էր և անվիճելի, որ Աշխարհացույցը գրված է 9-րդ դարում, ուրեմն նրան մնում է բերել ապացույցներ, որպեսզի ընթերցողների համար էլ այս կետը պարզ և անվիճելի դառնա։

Որո՞նք են նրա ապացույցները։ Նախքան նրա ապացույցները մեջ բերելը հարկավոր է մի համառոտ ակնարկ նետել, թե Աշխարհացույցի գրության ժամանակի մասին ինչ հայացք են ունեցել ուրիշ բանասերները։ Սեն-Մարտենն Աշխարհացույցի գրության ժամանակը դնում էր 9-րդ դարում կամ 10-րդ դարի սկզբում, հիմնվելով մի քանի աշխարհագրական հատուկ անունների վրա, որոնք այս ժամանակից առաջ չէին կարող հայտնի լինել։ Սակայն Աշխարհացույցի քննական հրատարակության մեջ (1845-ին) այդ անունները դուրս գցվեցին իբրև ձեռագրերի ընդմիջարկություններ, այնպես որ Սեն-Մարտենի կարծիքն այս կետում հերքվեց և այնուհետև ոչ մի հետևորդ չունեցավ (էջ 28—31 և 81)։

Սեն-Կրուան Աշխարհացույցը համարում էր ոչ Խորենացու գործ և գրված էր համարում 7-րդ դարում (էջ 27—28)։

Հյուբշմանը նույնպես Աշխարհացույցը համարում է ոչ Խորենացու գործ և նրա գրության հետնագույն սահմանը (terminus post quem non) որոշում է 902 թիվը, այսինքն թե այս թվականից հետո Աշխարհացույցը չէր կարող գրված լինել (էջ 81—82)։ Իր Քերականության մեջ Հյուբշմանը Աշխարհա-

ցույցի գրության ժամանակը դնում է 7-րդ դարում (հարցական նշանով)։

Սուքրյանն Աշխարհացույցը գրված է համարում 5-րդ դարում, քանի որ նրա հեղինակը Մովսես Խորենացին է, իսկ ընդարձակը համարում է 7-րդ դարի կեսից։

Կիպերտը նույնպես ընդունում էր, որ Աշխարհացույցը, դուրս գցելով մի քանի ընդմիջարկություններ, կարելի է համարել 5-րդ դարի գործ։

Պատկանյանը, Գուտշմիտը (էջ 34), Խալաթյանցը, Մարկվարտն իր նորագույն աշխատություններում (էջ 811) Աշխարհացույցը համարում են 7-րդ դարի գործ, հավանորեն Անանիա Շիրակացու գրած։ Բանասիրության մեջ այս կարծիքը տիրապետում էր մոտավորապես 55 տարի, մինչև ակադ. Մանանդյանի ներկա ուսումնասիրության երևան գալը։

Ուրեմն Աշխարհացույցով զբաղվող բանասերներից ոչ ոք այն չի համարել 9-րդ դարի գործ։ Ուստի միանգամայն անակընկալ է ակադ. Մանանդյանի հետևյալ անսպասելի եզրակացությունը.—«Այսպիսով, Աշխարհացույցի գրության ժամանակը որոշվում է կամ ութերորդ և կամ իններորդ դարում» (էջ 82)։ Վերը հիշված բանասերներից ոչ մեկը 9-րդ դարի հիշատակություն չէ անում. միայն Մարկվարտը սկզբում Աշխարհացույցը համարելիս է եղել 7-րդ դարի վերջի կամ 8-րդ դարի գործ (էջ 45), բայց իր նորագույն աշխատությունների մեջ փոխել է իր կարծիքը և, Պատկանյանի օրինակով, այն վերագրել է Անանիա Շիրակացուն (81), այսինքն համարել է 7-րդ դարի գործ։ Ո՞վ է, ուրեմն, կարծիք հայտնել, էլ չեմ ասում որոշել, թե Աշխարհացույցը 8-րդ կամ 9-րդ դարի գործ է — մնում է անհայտ։ Ուրեմն այդ թեզիսն ապացուցելու ամբողջ ծանրությունն ու պատասխանատվությունն ընկնում է ակադ. Մանանդյանի վրա։

Այնուհետև ակադ. Մանանդյանը շարունակում է. «Պարզվում է նաև այն, որ նրա [Աշխարհացույցի] հեղինակն ապրել է անպայման արաբական շրջանում»։ Որտեղից է այս պարզվում. եթե այն աղբյուրներից, որոնց համառոտությունը վերը բերել, քաղելով ակադ. Մանանդյանի գրքից՝ ապա այդ արաբական

շրջանի տակ կարելի է հասկանալ միայն 7-րդ դարը, բայց ոչ ավելի ուշ։

«Իսկ այս յեզրակացություններից,—շարունակում է ակադ. Մանանդյանը,—ինքնին արդեն հետևում է, որ արաբական այն բառերը, որոնք հանդիպում են Աշխարհացույցի համառոտ խմբագրության բոլոր ձեռագրերում, իսկ հաճախ նաև ընդարձակ խմբագրության մեջ, պատկանում են հավանորեն նրա բուն և իսկական հեղինակին և չեն կարող համարվել օտարամուտ ընդմիջարկություններ»։ Եվ բերում է չորս արաբական բառ — աղխունա, դհունաղհունար, մաղալ, բալասան (էջ 82)։

Նախ մի քանի խոսք այս արաբական բառերի մասին։ Աշխարհացույցը, Երջանիկ Արաբիան նկարագրելիս, հիշում է ծաղիկներ և նրանցից պատրաստվող անուշահոտություններ («իւղք անոյշք») իբրև այդ երկրի բերքեր. ընդարձակը հիշում է 12 անուն, համառոտը՝ 16։ Այս անուններից վերոհիշյալ չորսը արաբական են, իսկ խաղամի (կամ խալի, հալի), նարդին կամ նարդուկ, համիկ, մարգիգուշ, բան, վարդ, մանուշակ, թերևս նաև ջաբրիկ (կամ ջափուկ), քեդի (կամ քթի) պարսկական ծագում ունեին, իսկ բուխտակի և նրան ծաղկի կամ նրան յուղի ծագումն անհայտ է[1]։ Արդ՝ հարց է ծագում, թե Աշխարհացույցի խմբագրողները կամ հենց բուն հեղինակը (այսինքն Խորենացին) արաբական այդ չորս անունների հետ միասին որտեղից է վերցրել մյուս արաբական ծաղիկների և անուշահոտությունների պարսկերեն անունները։ Մնում է ենթադրել, թե այս անուշ յուղերը, իբրև վաճառականության նյութեր, հայտնի էին Հայաստանի շուկաներում, և հեղինակը, ով էլ որ լինի, հայ վաճառականներից է լսել ու գրառել այս անունները։ Նույն կերպով պետք է բացատրվեն Պարսկաստանի տասը տեսակ գոհարների մասին եղած տեղեկությունները (համառոտում՝ էջ 614, ընդարձակում՝ էջ 41)։

Բայց ինչպես էլ բացատրվեն վերոհիշյալ արաբական բառերը, քանի որ սրանք պատահում են մեր ձեռքի տակ եղած խմբագրությունների մեջ, և քանի որ այս խմբագրությունների

---

1 «Նրան» կարող է նույն բառի սեռականը լինել, փոխանակ սովորական «նռան» ձևին, ինչպես դուռն—դրան և այլն։

9-րդ դարի գործ լինելու համար մինչև այստեղ ակադ. Մանանդյանը ոչ մի ապացույց չի բերել, և գրեթե բոլոր բանասերներն այդ խմբագրությունները համարել են 7-րդ դարի գործ՝ սրանից հետևում է, որ այդ արաբական բառերն էլ մեր և Աշխարհացույցի մեջ մտել են արաբական շրջանի վաղագույն ժամանակներում, հենց 7-րդ դարում։ (Հայտնի են արաբների արշավանքները, Դվինի գրավումն ու կոտորածը, 35 հազար մարդու գերի տարվելը՝ 642 թվին)։

Գալով այն հարցին, թե այդ արաբական բառերը խմբագրողնե՞րն են ավելացրել, թե՞ բուն հեղինակի (այսինքն Խորենացու) գրածն են, այս բարդ խնդիրը լուծելու համար պետք է նկատի առնել հետևյալ հանգամանքները.

Դեռ որոշված չէ, թե երկու խմբագրություններից ո՛րն է ժամանակով ավագը և ո՛րը՝ կրտսերը, որոշված չէ նաև, թե կրտսեր խմբագրողն սկզբնական օրինակից համառոտելու ժամանակ ձեռքի տակ ունեցե՞լ և օգտագործե՞լ է ավագագույն խմբագրությունը, թե՞ ոչ։

Հայտնի չէ նաև, թե խմբագրողները բուն հեղինակի գրած բնագրի՞ց են համառոտել իրենց գործերը, թե՞ եղել է մի միջանկյալ՝ նույնպես անհետացած և ընդմիջարկված խմբագրություն, որից և համառոտել են երկու խմբագրողները, կամ սրանցից մեկը համառոտել է բուն սկզբնագիր բնագրից, իսկ մյուսը՝ ընդմիջարկված, այժմ կորած խմբագրությունից մեկը։ Իմ այս վերջին ենթադրությունը կամայական չէ. ինքը՝ ակադ. Մանանդյանը թույլ է տալիս, որ կարող են եղած լինել մի քանի սկզբնական բնագրեր («Անհրաժեշտ էր... նաև քննել Աշխարհացույցի սկզբնական բնագրի կամ բնագրերի հարցը, որոնցից ծագել են այժմյան խմբագրությունները», էջ 13—14)[1]։

[1] Իբրև մի կողմնակի ապացույց մի ուրիշ ընդմիջարկված և այժմ կորած խմբագրության, կարելի է հիշել Ղևոնդ Երեցի մոտ բերված հետևյալ տողերը Ակամսիս գետի մասին. «Անցանէին ընդ գետն Ակամսիս (կամ Ակամփսիս), որ ի կողմանս Տայոց բղխեալ երթայ զհիւսիսով արեւմտից, անցանելով ընդ Եգեր՝ մտանէ ի Պոնտոս» (էջ 168)։ Համառոտ Աշխարհացույցը չունի Ակամսիս գետ, իսկ ընդարձակն ունի այսպես. «Ընդ որ իջանէ Ցոհ. գալով ի Սպերայ, անցանէ առ Թուխարս բերդով ի Կլարջս, եւ անտի յԵգր, ընդ Նեգալ, ընդ Մրուդ եւ ընդ Մրիտ գաւառս ի Պոնտոս ծով, զոր Եգերացիք կոչեն Ակամսիս եւ Խաղտք Կակամար» (էջ 33)։ Մի ուրիշ տեղ գրում է. «Ակամ-

Այս պատճառով մենք Աշխարհացույցի բնագրի կամ բնագրերի և այժմյան խմբագրությունների փոխադարձ հարաբերության հարցերում խարխափում ենք խավարի մեջ. և այս հարցերում մեր բոլոր դատողությունները, բնականաբար, ենթադրության բնույթ են կրելու։

Այս պայմաններում և ընդունելով ակադ. Մանանդյանի կարծիքը, որ այս արաբական անունները չեն կարող լինել խմբագիրների հավելումներ իրանց ունեցած բնագրի վրա, այլ որ նրանք ծագում են մի ընդհանուր աղբյուրից, կարելի է զանազան ենթադրություններ անել նրանց ծագման մասին։

1. Կարող էին այս ու նրանց հետ մյուս պարսկերեն և անհայտ ծագում ունեցող նյութերի անունները գտնվել մի բնագրում, որ գրված էր արաբական շրջանից առաջ և որի հեղինակն այս բառերին ծանոթացել է Հայաստանի շուկաներում, հատկապես Դվինում վաճառվող ապրանքներից։ (Հիշենք՝ ամպար, զմուռս, կինամոմոն, կնդրուկ, հալուէ, մուշկ և այլն)։

2. Արաբական շրջանից առաջ գրված բնագիրը չէր պարունակում այդ բառերը, այլ մի միջանկյալ՝ մեր ձեռքը չհասած խմբագրություն ավելացրել է այս բառերը, կամ 7-րդ դարից առաջ, իբրև Հայաստանում ծախվող ապրանքների անուններ, կամ արաբական շրջանի սկզբներում, և այս խմբագրությունից օգտվել են մեզ հայտնի երկու խմբագրությունները։

3. Կարող էր մեզ հայտնի երկու խմբագրություններից կրտսերն աչքի առաջ ունենալ ավագագույն խմբագրությունը և նրանից վերցնել այս անունները։

4. Կարող էին, վերջապես, այս բառերը գտնվել այն սկզբնագրում, որ հեղինակը գրել է արաբական շրջանում, 9-րդ դարում, և հատկապես 9-րդ դարի երկրորդ կեսի սկզբներին (քանի որ, ըստ ակադ. Մանանդյանի, Խորենացու Պատմությունը գրված է Բուղայի արշավանքից հետո, 855—865 տարիների միջանկյալ շրջանում)։ Սակայն այս դեպքում մեր ձեռքի տակ եղած երկու խմբագրությունները, որոնք ծագած են 9-րդ դարի երկրորդ կեսի

---

սխս որ է Ցոհ. որ գայ ի Մեծ Հայոց» (էջ 27)։ Պարզ է, որ Ղևոնդն օգտվել է Աշխարհացույցի ուրիշ՝ այժմ մեզ անհայտ խմբագրությունից կամ սկզբնագրերից։

այդ ընագրից՝ պետք է իջեցվեն գոնե մինչև 10-րդ դարի կեսերը (որպեսզի մի գրվածք հաջորդաբար երկու անգամ խմբագրությունների ենթարկվի, պետք է ամենաքիչը մի հարյուր տարի)։ Բայց այսպիսի ուշ ժամանակի գործ չեն համարում Աշխարհացույցի խմբագրությունները ոչ մի բանասեր, և ոչ ինքը՝ ակադ. Մանանդյանը։ Հյուբշմանը, ինչպես տեսանք, նրանց հետնագույն ժամանակը որոշում է 902 թվականը։ Ուրեմն, ինչպես տեսնում ենք, այս ենթադրություններից ամենաքիչ հավանականությունն ունի վերջինը, որ ընդունում է ակադ. Մանանդյանը։

Բաղիրդ գետի մասին ընդարձակ խմբագրության մեջ երկու անգամ ասված է, թե տաճիկները նրան այժմ կոչում են Շիթիթմա, այսինքն արյունարբու։ Ակադ. Մանանդյանը հավանական է համարում, թե այս արաբական անունը գետին կարող էր տրվել 8-րդ դարի վերջերում կամ 9-րդ դարում, երբ Հայաստանի հարավային մասում հաստատվել էին արաբական գաղութներ, և հիմնվել էին առանձին արաբական ամիրայություններ։ Ուրեմն ըստ ակադ. Մանանդյանի, այս անվանակոչությունը կարող էր տեղի ունեցած լինել նաև 8-րդ դարում, այսինքն դարձյալ անկասկածելի ապացույց չէ, որ Աշխարհացույցն 9-րդ դարի երկրորդ կեսի գործ է։ Ամենից հավանական է, սակայն, որ միայն ընդարձակ խմբագրության մեջ (մեզ հասած մի օրինակում) հանդիպող արաբական այս անունն ընդմիջարկություն լինի ձեռագիրն արտագրող գրչի կողմից և ոչ խմբագրողի հավելումը, ուրեմն կարող է նաև ավելի ուշ ժամանակից լինել։

Աշխարհացույցի մեջ Ֆրանկները կոչված են «հզոր ազգ»— այս հորջորջումը ակադ. Մանանդյանը հավանական նշան է համարում կապելու Կարլոս Մեծի ժամանակի հետ (768—814), երբ Ֆրանկները հաղթական կռիվներ էին մղել Սպանիայում Արաբների դեմ և ինքը՝ Կարլոս Մեծը, բարեկամական հարաբերություններ է ունեցել Հարուն ալ Ռաշիդի հետ (էջ 83)։ Բայց Ֆրանկները հզոր ազգ էին նաև այս ժամանակաշրջանից առաջ, Կարլ Մարտելի ժամանակ (689—741), որ 732-ին Պուատիեում Մավրերին ջախջախեց, վերջ դրեց Սարակինոսների առաջխաղացությանը ու փրկեց քրիստոնեական քաղաքակրթությունը,— նրա որդու՝ Պիպին Կարճահասակի ժամանակ (741—768), որ Ֆրանկների թագավոր օծվեց, նաև սրանից առաջ, դեռ 6-րդ

դարում, Լոդվիկի ժամանակ, որ իր իշխանության տակ նվաճեց բոլոր Ֆրանկներին և դարձավ Ֆրանկների պետության ինքնակալ պետ։ Այս ժամանակներին ավելի հարմարում է ընդարձակ Աշխարհացույցի հիշատակությունը, թե Ֆրանկների կեսն ապրում է Գաղղիայում և կեսը՝ Գերմանիայում (էջ 15)[1]։

Այսպես ուրեմն, Աշխարհացույցի երկու խմբագրություններն էլ չեն տալիս և ոչ մի անկասկածելի ապացույց, թե Աշխարհացույցի սկզբնական բնագիրը գրված է 9-րդ դարում և ոչ առաջ։ «Հավանականությունները» հավանականություններ են և ոչ ապացուցված իրողություններ, ուստի և չէ կարող Աշխարհացույցը «որոշ և հաստատուն կռվան» դառնալ (էջ 84), որի հիման վրա կարելի լիներ լուծել Խորենացու առեղծվածը։ Ընդհակառակը, Խորենացու առեղծվածը լուծելու համար պետք է դիմել Հայոց Պատմության, որ շատ ավելի բազմակողմանի նյութեր է պարունակում նրա հորինման ժամանակը որոշելու տեսակետից. և այդ ժամանակը որոշելուց հետո կորոշվի նաև Հայոց Պատմության հեղինակի ապրած ժամանակը, Աշխարհացույցի հորինման ժամանակը, այսինքն՝ կլուծվի Խորենացու առեղծվածը։

Նախքան Խորենացու Հայոց Պատմության անցնելը, ակադ. Մանանդյանը կանգ է առնում «Մղոնաչափքի» (զանազան քաղաքների միջև եղած հեռավորություն) և Սուտ Կալիսթենեսին վերագրված՝ Աղեքսանդր Մեծի Վարքի վրա։ Ես դանց եմ անում երկուսի մասին էլ խոսելը։ «Մղոնաչափք»-ը ոչ մի հարնչություն չունի Հայոց Պատմության հետ, իսկ Աղեքսանդրի Վարքը թեպետ ունի հարնչություն, բայց այնքան տարբեր են կարծիքները նրա թարգմանության ժամանակի մասին, սկսելով 5-րդ դարից մինչև 9-րդ դարը, որ նա չէ կարող Հայոց Պատմության գրության ժամանակի համար որոշ նյութ մատակարարել. ընդհակառակը, Պատմության ժամանակը որոշելով՝ ավելի հեշտ կլինի Վարքի թարգմանության ժամանակն էլ որոշել, մանավանդ որ Վարքի մեջ գործածված բառապաշարը սերտ կապ ունի Հայոց Պատմության և Պիտոյից գրքի բառապաշարի հետ, որի մասին հետո խոսելու ենք։

---

1 «Հզոր» բառը Աշխարհացույցի մեջ․ գործ է ածվում Մեծ, Ընդարձակ նշանակությամբ գետերի մասին։ Հզոր ազգն էլ հավանորեն նշանակում է մեծ, բազմամարդ ազգ, ինչպես արդարև էին Ֆրանկները, և ոչ թե ուժեղ։

Ակադ. Մանանդյանը Հայոց Պատմության քննությունը ձեռնարկում է կանխակալ կարծիքով։ Աշխարհացույցի ուսումնասիրության վրա հիմնված՝ նախապես նա համոզմունք է կազմել, թե Պատմությունն էլ գրված պետք է լինի 9-րդ դարում, ուստի, Պատմությունը քննելիս, նրա մեջ նա տվյալներ է որոնում այս կանխակալ համոզումն ապացուցելու համար։ Հարցին այսպես մոտենալով՝ նա հաճախ անտես է անում իր համոզմունքին հակասող փաստերը, կամ նրանց տալիս է անհավանական բացատրություն, կամ փաստեր է գտնում այնպիսի տեղերում, որոնք ոչ-կանխակալ դիտողի աչքում զուրկ են որևէ նշանակությունից։

Մեթոդի այս սխալն արտահայտվում է նրա քննության ամբողջ ընթացքում և իր բացասական դրոշմն է դնում նրա հետաքրքրական, մանրակրկիտ քննության վրա։

Այս ընդհանուր դիտողությունից հետո դառնում եմ նրա թեզիսներին։

«Խորենացու Պատմությունը և Աշխարհացույցը,— ասում է նա,—գրված են 9-րդ դարում՝ հայ վաճառականության զարգացման ու Հայաստանի տարանցիկ առևտրի վերակենդանացման շրջանում» (էջ 117)։ Ակադ. Մանանդյանը բացատրում է, որ արաբական տիրապետության առաջին շրջանն աննպաստ էր Հայաստանում վաճառականության զարգացման համար։ Բայց երբ 9-րդ դարում արաբական իշխանությունը, ներքին երկպառակությունների պատճառով, թուլացավ և Հայաստանը հանգստացավ, և մյուս կողմից՝ երբ նույն այդ շրջանում Բագրատունիները, Բյուզանդիայի հետ բարեկամական հարաբերություն պահպանելով, շատ զորացան և մեծամեծ կալվածների տեր դարձան Հայաստանի արևմտյան կողմերում ու Վրաստանում՝ թե՛ տեղական և թե՛ տարանցիկ (տրանզիտային) առևտուրը զարգացավ, որ իր հերթին պետք է անդրադառնար նախարարական Հայաստանի սոցիալական կազմակերպության, ինչպես և նրա կուլտուրական, մինչև անգամ մտավոր կյանքի վրա։

Հայաստանի վերակենդանացման այս շրջանում հայ վաճառականները, նաև քաղաքացիները բարձր դիրք են ստացել, որի

համար ակադ. Մանանդյանը ապացույց է բերում Խորենացու հետևյալ վկայությունը, որ՝ նրա կարծիքով, վերաբերում է ոչ թե Վաղարշակ Թագավորի ժամանակին, այլ հենց Խորենացու ապրած ժամանակին (այսինքն 9-րդ դարի երկրորդ կեսին).—

«Հրաման տայ [Վաղարշակ] և քաղաքացեաց մարդկան արգոյ եւ պատիւ լինել[1] առաւել քան զգեղջկաց, եւ գեղջկաց պատուել զքաղաքացիս որպէս զիշխանս, եւ քաղաքացեաց մի կարի առ գեղջկօքն պերճանալ, այլ եղբայրաբար վարել, վասն բարեկարգութեան և աննախանձոտ կենաց» (Բ., 8)։

Նախ նկատելու ենք, որ ոչ մի հավանականություն չկա քաղաքացիների ավելի բարձր դիրքն ու պատիվը վերագրել Խորենացու ապրած ժամանակին, ինչպես ենթադրում է ակադ. Մանանդյանը առանց որևէ հիմքի, այլ ավելի բնական է վերագրել հենց Վաղարշակի ժամանակին, ինչպես գրված է բնագրում։ Ըստ Խորենացու՝ նախարարական տները հաստատեց ու կարգավորեց Վաղարշակը. բնական է, որ նա որևէ կարգ պետք է հաստատեր նաև մյուս դասակարգերի՝ քաղաքացիների և շինականների փոխադարձ հարաբերության նկատմամբ։ Քանի որ ֆեոդալական կազմակերպությունը Հայաստանում վաղուց գոյություն ուներ իր անազատ շինականների դասակարգով, և քանի որ Հայաստանում շատ վաղուց գոյություն ունեին նաև քաղաքներ՝ իրենց քաղաքացի բնակիչներով (վաճառական, արհեստավոր, գործարանատեր և այլն), որոնք մեծամեծ առավելություններ ունեին շինականների համեմատությամբ՝ պարզ է, որ վաղուց ի վեր պետք է գոյություն ունենար նաև իրավական ու սոցիալական տարբերություն այս երկու դասակարգերի միջև, և Խորենացին, գուցե գիտակցաբար, գուցե բնազդաբար, շատ ճիշտ է որոշել այդ դասակարգերի տարբերությունը ֆեոդալական հասարակակարգը հիմնավորելու պահին։ Վերոհիշյալ խոսքերը 9-րդ դարի վաճառականության զարգացման հետ կապելու ոչ մի հիմք չկա։

Գալով հատկապես վաճառականներին, որոնց շուրջն է այստեղ պտտվում հարցը, նկատում ենք, որ նրանց մասին ոչ մի

---

[1] «Արգոյ եւ պատիւ լինել» քերականորեն սխալ խոսք է. պետք էր ընդունել Ա. Ձեռագրերի ընթերցվածը. «կարգ և պատիվ լինել», այսինքն քաղաքացիների կարգը (դասակարգը) և պատիվը գյուղացիներից ավելի բարձր լինի, որ միանգամայն բնական է ֆեոդալական իրավակարգի ժամանակ։

հիշատակություն չկա այս խոսքերում։ Այս դեռ բավական չէ։ Խորենացու ամբողջ Պատմության մեջ ոչ մի անգամ գործածված չեն «վաճառականություն», «վաճառական» բառերը, նույնիսկ այն տեղերում, երբ սպասելի էր։ Արտաշես Բ-ի շինարարությունները պատմելով (Բ., 56, 59), թե ինչպես նա զարգացրեց երկրագործությունը, երկիրը բազմամարդ դարձրեց նոր գաղութներ բերելով, ծովակների վրա նավագնացություն, գետերի վրայով ճանապարհորդություն, ձկնորսական գործիքներ և այլն մտցրեց՝ Խորենացին ոչ մի խոսք չէ ասում վաճառականության զարգացման մասին։ Ողբի վերջում, որտեղ նա դառն խոսքերով դատապարտում է բոլոր դասակարգերը — վարդապետք, կրոնավորք, վիճակավորք, աշակերտք, ժողովրդականք, զորականք, իշխանք, դատավորք — նա վաճառականներ — չէ հիշում և չէ կշտամբում նրանց պակասությունները։

Սրանից եզրակացնում ենք, որ Խորենացու վերոհիշյալ հատվածը ոչ մի առնչություն չունի 9-րդ դարում զարգացած հայ վաճառականության հետ, և վաճառականությունն առհասարակ Խորենացու մտածողության հորիզոնից դուրս է։

Դարձյալ, ակադ. Մանանդյանը նկատում է, որ Խորենացին իբրև պատմաբան, շատ ավելի բարձր է կանգնած, քան հնագույն հայ պատմիչները և քննադատական վերաբերմունք ունի դեպի հինը։ Նա հավանական է գտնում, որ Խորենացու այս ուղղությունն արդյունք է սոցիալական և կուլտուրական այն հեղաշրջման, որ տեղի էր ունեցել 9-րդ դարում (էջ 122)։ Բոլորովին չհիմնավորված լոկ ենթադրություն է այս։ Շատ խղճուկ բան կլիներ Խորենացին, եթե նրա զարգացումը և քննադատական ոգին այն սոցիալական և կուլտուրական միջավայրի արդյունքը լինեին, որ 9-րդ դարում Հայաստանում գոյություն ուներ։ Մեր աչքի առաջ են այդ շրջանին շատ մոտ և իրոք նրա ազդեցության ենթարկված պատմագիրներ՝ Ղևոնդը, Հովհաննես կաթողիկոսը, Թովմա Արծրունին, որոնք գաճաճներ են թվում հսկա Խորենացու մոտ։ Ինչո՞ւ սրանց վրա էլ նույն բարերար ազդեցությունը չէ գործել 9-րդ դարի հայկական միջավայրը։ Խորենացու զարգացման, քննադատական ոգու և այլն աղբյուրն ուրիշ տեղ պետք է փնտռել, հայկական միջավայրից դուրս, «գիտութեանց եւ արուեստից մայր» Հունաստանում (Ալեքսանդրիայում)։

Նրա բնածին ընդունակությունները կամ տաղանդը, այս միջավայրում սնված-ունեցած, տվել է այն շքեղ ծաղիկը, իր ուրույն գույնով ու հոտով, անհատականությամբ, մտքի անկախությամբ, ներդաշնակության ճաշակով, խոսքի վարպետությամբ, գեղարվեստականությամբ, որի ամբողջությունը մեզ ներկայանում է նրա Պատմության մեջ։ (Տես Հավելված Ա)։

Այս նույն թեզիսի տակ ակադ. Մանանդյանը շոշափում է և մի ուրիշ շատ կարևոր հարց.— «Լինելով փառաբանող ու հերոսացնող Բագրատունի իշխանների,— ասում է նա,— Խորենացին, ինչպես այդ պարզվում է նրա Պատմության բովանդակությունից (ընդգծումն իմն է — Ս. Մ.), ունի, անտարակույս, հատուկ մի նպատակ՝ տրամադրություն ստեղծելու ի նպաստ նախարարական Հայաստանի միության և Բագրատունյաց թագավորության հաստատման։ Քաղաքական նրա այս ձգտումն ու իղձը... համապատասխանում են, ըստ իս, Բագրատունիների հովանավորության տակ զարգացող մեծ առևտրի շահերին» (էջ 122—3)։

Նման միտք է հայտնում և պրոֆ. Ադոնցը՝ իր «Սեբեոսի Պատմությունը և Մովսես Խորենացին» աշխատության առիթով գրած քննության մեջ. նա կարծիք է հայտնում, թե Խորենացու Պատմությունը գրված է Բագրատունիների զորեղացման ժամանակ և Բագրատունյաց թագավորության հաստատումից առաջ։ Այդ Պատմությունը, որ գերազանցապես քաղաքական է և նկարագրում է Հայկազյանց և Արշակունիների թագավորության անցյալը, արդյունք է բարձր տրամադրության և քաղաքական մոտալուտ ազատության ակնկալման։ (Բերում եմ ակադ. Մանանդյանի ամփոփումը Ադոնցի բրոշյուրից. էջ 125)։ Նույնպես և Լա-Կրոզը, դեռ 1730 թվին, կարծիք էր հայտնել, թե այդ Պատմությունը շարադրողն ապրած պետք է լիներ «ի միջոցի իններորդ եւ տասներորդ դարուց, յաւուրս Բագրատունի իշխանաց, որ մեծ ազդեցութիւն ունէին յայնմ ժամանակի եւ իշխանք էին բովանդակ Հայաստան աշխարհի»։ (Նույնպես ակադ. Մանանդյանի գրքից. էջ 124)։

Սակայն Հայոց Պատմության ուշադիր ուսումնասիրությունը ոչ միայն չէ հաստատում այս ենթադրությունները, այլ, ընդհակառակը, ապացուցում է, որ հենց Բագրատունիների վե-

րաբերմամբ այդ Պատմությունը չէր կարող գրված լինել 9-րդ դարում, այլ, անշուշտ, շատ առաջ։

Նախ տեսնենք, թե Հայոց Պատմության մեջ կա՞ն արդյոք այնպիսի փաստեր կամ խոսքեր, որոնք չկարողանային գոյություն ունենալ կամ ավել 5-րդ դարում Բագրատունյաց վերաբերմամբ։

1. Բագրատունիք կարո՞ղ էին տոհմական պատմիչ ունենալ 5-րդ դարում։ Չեմ կարծում, որ այս հարցին բացասական պատասխան տրվի։ Մամիկոնյանները 5-րդ դարում երկու պատմիչ ունեցան (չխոսելով Փավստոսի մասին). Ինչո՞ւ չպետք է մեկն ունենային և Բագրատունիք, որոնք թե՛ հզորությամբ և թե՛ դիրքով բարձր էին կանգնած Մամիկոնյաններից։ Իսկ տոհմական պատմիչը, ինչպես ցույց են տալիս օրինակները, պետք է աշխատեր բարձրացնել տոհմի պատիվը, ցայտուն դուրս բերեր նրա արիության գործերը, նույնիսկ մեղանչելով պատմական ճշմարտության դեմ։ Խորենացին էլ, իբրև Բագրատունյաց տոհմի 5-րդ դարի պատմիչ, գնացել է նույն շավղով, բայց շատ ավելի չափավոր է, քան մյուս տոհմական պատմիչները և շատ ավելի լայն է նայել իր աշխատանքի վրա՝ Բագրատունյաց տոհմի պատմությունն ընդարձակելով, Հայոց Պատմություն դարձնելով, բավական ընդարձակ տեղ տալով նաև մյուս նախարարական տներին ու նրանց գործունեությանը։

2. Խորենացին Բագրատունիներին կոչում է Արշակունյաց թագավորների թագադիր և ասպետ։ Սա արդարանում է Սեբեոսի վկայությամբ, թե Բագարատ Փառազյանը հայրենի թագով պսակեց առաջին Արշակունի թագավորին և սրանից կոչվեց «ասպետ Հայաստան երկրին»։ Ագաթանգեղոսը Բագրատունի բառի փոխարեն գործ է ածում «թագադիր ասպետ» մակդիրները։

Այս կոչումն արդարանում է նաև պաշտոնական գահնամակով, որի մեջ Բագրատունի բառի փոխարեն գործ է ածված «ասպետն»։ Դիտելու է, որ թագադիր և ասպետ մակդիրները բնական ու հասկանալի են հինգերորդ դարի պատմության մեջ, երբ Արշակունի թագավորներ դեռ գոյություն ունեին կամ գոնե նրանց հիշատակը դեռ թարմ էր, ուրեմն թագադրության ֆունկցիան էլ դեռ գոյություն ուներ կամ հիշվում էր. բայց այս մակդիրներն իրանց նշանակությունը կորցրել էին 9-րդ դարում, երբ Արշակունիները, ինչպես և նրանց թագադիրները, վաղուց դուրս էին

իջել պատմության էջերից։ (Հովհաննես կաթողիկոսն այս մակդիրներից ոչ մեկը չի գործածում Բագրատունյաց համար և ընդհանրապես «ասպետ» մակդիրը 712 թվականից հետո գործ չի ածվում Բագրատունի իշխանների համար, այնինչ վաղագույն շրջաններում ընդհանուր գործածություն ուներ։ (Տե՛ս Ակինյան— Հայ Բագրատունիներու տոհմածառը)։ Հենց այս «ասպետ» բառի հաճախակի գործածությունը Խորենացու Պատմության մեջ նշան է, որ այս Պատմությունը չէր կարող գրված լինել 9-րդ դարում։

3. Խորենացին Բագրատունիներին կոչում է «ազգ նախնական», «մեծ նախարարութիւն ի մէջ աշխարհիս»։ Այս որոշումները համարժեք են արդյոք Բագրատունիներին 5-րդ դարում։ Անտարակույս։ Գահնամակում, որով 5-րդ դարի առաջին կեսին սահմանվում էին նախարարական բարձերը (հին բարձերի վերահաստատությամբ), Սյունյաց գահից հետո երկրորդ տեղը հատկացված է Ասպետին, այսինքն Բագրատունյաց տոհմի իշխանին։ Ագաթանգեղոսի Պատմության մեջ Թագադիր ասպետները նախարարների շարքերում երկու անգամ զետեղվում են չորս բդեշխներից և Մարդպետական տնից հետո, մյուս բոլոր նախարարներից առաջ։ Երբ Վահան Մամիկոնյանը և ուրիշ մի քանի նախարարներ որոշեցին ապստամբել Պարսից թագավորի դեմ՝ Հայաստանի մարզպանությունը հանձնեցին Սահակ ասպետին, երբև աստիճանով ու պատվով ավագագույնին։ Գալով Բագրատունիների ծագման հնության՝ ոչ միայն Խորենացին, այլև Սեբեոսը նրանց ծագումը հասցնում են մինչև Հայկազյան իշխանների ամենահին շրջանը։

4. Խորենացին Բագրատունիներին տալիս է հրեական ծագում։ Կարող էր այդ բանը գրվել 5-րդ դարում։ Թե ինչի՞ց դրդված Խորենացին հրեական ծագում է վերագրում Բագրատունիներին, մինչդեռ իրեն հայտնի էր մի այլ ավանդություն, թե նրանք ծագում են Հայկից (Ա., 22)՝ այս հարցով չեմ ուզում զբաղվել։ Դրված հարցին պատասխանելու համար պետք է նկատել, որ Բագրատունիներին հրեական ծագում վերագրելիս է եղել Մար-Աբասյան աղբյուրը, որին համեմատ է, բառաքննական հիմունքով, և ինքը պատմագիրը (Ա., 22)։ Դարձյալ՝ Պատմության մեջ մի քանի անգամ հիշատակվում է, թե Բագրատունիներն Արշակունի առաջին հայ թագավորներից չարչարանքների և

ստիպմունքի են ենթարկվել հրեական կրոնից հրաժարվելու համար և ինչ-ինչ զիջումներ են արել։ Արդ՝ թե Մար-Աբասյան աղբյուրը և թե կրոնի համար եղած հալածանքը կարող են հարմարվել 5-րդ դարին և ոչ թե 9-րդին, երբ Մար-Աբասյան աղբյուրի կամ Բագրատունիների հրեական ծագման ոչ մի հիշատակություն չկա։

Ընդհանրապես Բագրատունյաց տոհմի մասին Խորենացու ասածներից և ոչ մեկն անհարմար չի գալիս 5-րդ դարին, ընդհակառակը, նրանք ավելի հարմար են գալիս 5-րդ դարին, քան ավելի ուշ ժամանակի, մանավանդ «ասպետ» բառի սիստեմատիկ գործածությունը Բագրատունյաց տոհմի իշխանների (տոհմապետների) մասին, մի բան, որ բոլորովին անծանոթ է Ղևոնդին և Հովհ. կաթողիկոսին։

Այժմ տեսնենք, թե ինչ է ասում Խորենացին անհատների մասին։

1. Սահակ Բագրատունին խնդրում է գրել Հայոց Պատմությունը։ Այս առիթով Խորենացին նրան շատ գովում է, «պատկեր աստուծոյ», «ամենեցուն քան զքեզ նախագունից վեհագոյն» կոչելով (Ա., 1)։ Այս գովեստները որքան էլ շռայլ արտահայտություն ունեն, այնքան էլ համեստ ու ճշմարիտ են բովանդակությամբ։ Խորենացու ըմբռնումով՝ «պատկեր աստուծոյ» կարող է կոչվել ամեն բանական մարդ՝ որ մտավոր հարցերով է զբաղվում։ «Ամենեցուն վեհագոյն» է Սահակ Բագրատունին, որովհետև նրանից առաջ ոչ ոք չէ մտածել այդպիսի մի կարևոր գործ (Հայոց ազգային պատմություն) կատարել։ Եղիշեն իր մեկենասին գովում է, կոչելով՝ «մեծ ի գիտութեանն աստուծոյ», Փարպեցին յուր մեկենասին գովում է ասելով՝ «Զքո քաջութիւնդ զօրացեալ պայծառացոյց վերին խնամակալութիւն քան զամենեցունց, որք էին կամ որ այժմ են ի Հայս», — գովեստներ, որոնք նվազ հիմնավորված են, քան Խորենացու գովեստը։

2. Շամբատ Բագարատ, զորավոր և իմաստուն մարդ հրեական ծագումից, կամավորապես ենթարկվում է Վաղարշակին, «նախաձեռն ընծայ» է մատուցում ինքն զինքը նրան, ուստի և Վաղարշակից նշանակվում է ժառանգաբար թագադիր լինել Արշակունիներին,՝ նրա ցեղը Բագարատի անունով կոչվում է Բագ-

րատունյաց նախարարություն (Բ., 3), կոչվում է նաև ասպետ՝ հատուկ պատիվներով (Բ., 7)։

3. Տիգրան Միջինը (Մեծը) կտրել է տալիս մի ոմն Ասուդ Բագրատունու լեզուն՝ կուռքերն անարգելու պատճառով (Բ., 14)։

4. Ենանոս Բագրատունի ասպետը նենգություն է գործում Հայոց Արշամ թագավորի դեմ և արձակում է գերի բռնված Հյուրկանոս քահանայապետին, ուստի ենթարկվում է չարչարանքների. մահվան սպառնալիքից ուրանում է հրեությունը և իբրև կասկածելի անձ հեռացվում է Միջագետքի սահմաններից, որտեղից հեշտ էր հաղորդակցություն ունենալ հրեաների հետ (Բ., 24)։

5. Թադեոս առաքյալը Եդեսիա գալով՝ իջնում է Տուբիա անունով մի հրեա իշխանի մոտ, «որի մասին ասում են, թե Բագրատունյաց տոհմից էր» (Բ., 33)։

6. Սմբատ Բյուրատյան ասպետը, Արտաշեսի դայակը, փրկում է մանուկ Արտաշեսին Երվանդի հետապնդումներից, մեծ դժվարություններով փախցնում է Պարսկաստան։ Երբ մանուկը մեծանում է՝ Սմբատը հաճեցնում է Պարսից թագավորին՝ Արտաշեսին վերադարձնել Հայաստանի թագավորությունը։ Նա պարսկական զորքով գալիս է Հայաստան, պատերազմի մեջ հաղթում է Երվանդին, որ և սպանվում է։ Այնուհետև Սմբատն Արտաշեսին պսակում է Հայոց թագավոր. առատորեն պարգևատրվում է, նշանակվում է զորքի սպարապետ, խնամախոս է գնում Արտաշեսի համար և կին է բերում Սաթենիկին։ Մի քանի հաջող արշավանքներ է կատարում, գերիներ է բերում Արտաղից և Կասպից երկրից։ Արտաշեսի որդի Արտավազդի նախանձից կամովին թողնում է զորքի ընդհանուր սպարապետությունը և բավականանում է հարավային զորքի սպարապետությամբ. հաջող պատերազմ է մղում Դոմետիանոսի դեմ և փրկում է թագավորի որդիներին (Բ., 37, 38, 43, 44, 48, 50, 52—54)։

Սմբատ Բյուրատյանի կյանքի և գործունեության այս մանրամասնությունները Խորենացին առել է ժողովրդական վեպից («առասպելներից»), ինչպես ասում է երկու անգամ (Բ., 52, 54)։ Ինչպես հայտնի է՝ Խորենացին Արտաշես Բ-ի գործերը նկարագրում է նույնպես ընդարձակ, օգտվելով ժողովրդական վեպից, երբեմն վեպն անփոփոխ մեջ բերելով և երբեմն նրա «ճշմարտեալ» բովանդակությունը պատմելով։ Վեպը, ուրեմն, չէ մո-

ռացել և թագավորի դայակ ու գործակից Սմբատին հիշատակել ու նրա գործերը պատմել, որից և օգտվել է Խորենացին։

7. Մի ոմն Տրդատ Բագրատունի, Սմբատի թոռը նրա աղջկանից, ամուսնացած է Տիրան թագավորի աղջկա հետ. իր տգեղության պատճառով արհամարհվում է կնոջից, ծեծում է նրան, մազերից քարշ տալով՝ սենյակից դուրս է գցում։ Թագավորի երկյուղից՝ ապստամբում է նրանից, ապավինում է Սյունիք։ Այստեղ մի անգամ ընթրիքի ժամանակ սիրահարվում է մի գեղեցիկ գուսանի՝ Նազինիկին, և հենց սեղանի վրա հափշտակում է այդ աղջկան, տան տիրոջ և այլ բազմականների հետ կռվելով՝ առևանգում է աղջկանն ու փախչում (Բ., 63)։

8. Սմբատ ասպետը, Բագարատի հայրը, Տրդատի համար կին է բերում Աշխադարի դուստր Աշխենին (Բ., 83)։

9. Այս Սմբատի որդին Բագարատը հանդիսանում է մեկը չորս հայ զորավարներից, որոնց նշանակեց Տրդատը (Բ., 85), նույն պաշտոնում նա հաստատվում է Տրդատի մահից հետո, Խոսրով Փոքրի ժամանակ (Գ., 6), մասնակցում է պատերազմին հյուսիսականների ասպատակի դեմ, Վահան Ամատունու հետ միասին. վերջինս սպանում է ասպատակի պարագլուխ հսկային, և Սմբատն աննախանձաբար թագավորին զեկուցանում է Վահան Ամատունու քաջության մասին (Գ., 9)։

10. Այս Բագարատի որդին, Սմբատ ասպետը, իբրև մանկական գնդի առաջնորդ-սպարապետ, մասնակցում է Ձիրավի մեծ ճակատամարտին. կռվի մեջ մեծ քաջություններ են գործում Սպանդարատ Կամսարականը և Մուշեղ Մամիկոնյանը։ Հույն-հայկական զորքը հաղթում է, Մեհրուժանը փախչում է. Սմբատ ասպետը նրան հասնելով, հետը եղողներին կոտորում է, Մեհրուժանին ձերբակալելով՝ բերում «պսակում է» երկաթի շիկացած շամփուրով և այսպես սպանում (Գ., 97)։

11. Սահակ ասպետը, Վաղարշակի աները, Հունաց բաժնում կալված ունենալով, որոշում է մնալ Հունաց բաժնում՝ Արշակ թագավորի մոտ։ Բայց ինչ-որ ընտանեկան քսությունների պատճառով չարչարվում է Արշակից, ուստի փախչում է Պարսից բաժինը՝ Խոսրովի մոտ, նշանակվում է զորքի սպարապետ, ճնշում է Վանանդացոց ապստամբությունը և օգնում է երեք նախարար-

*ների, որոնք Արշակի գանձերը հափշտակելով՝ փախչում էին Խոսրովի մոտ (Գ., 43—45)։*

*12. Վռամ Թագավորը կամենալով Հայոց նախարարների հետ համաձայնություն կայացնել՝ Սմբատ ասպետի միջոցով հաշտության առաջարկություն է անում. Սահակ կաթողիկոսը միջամտում է այս գործին, նախարարներին գումարելով՝ համաձայնության պայմաններ է մշակում նրանց հետ և Սմբատ ասպետին ու Վարդան ստրատելատին ուղարկում է Պարսից թագավորի մոտ՝ բանակցության։ Հաշտությունը կնքվում է, որի հիման վրա և Հայոց թագավոր է նշանակվում Արտաշիր Վերջինը (Գ., 58)։*

*Ահա, կարծեմ, այն բոլորը, ինչ որ Խորենացին գրել է Բագրատունյաց տոհմի և Բագրատունի անհատների մասին։ Այս համառոտ քաղվածքը հարկավոր էր անել,* փաստերով *ցույց տալու համար, թե որքան անհիմն են բանասերների վերացական կերպով արտահայտած կարծիքները պատմության ոգու նկատմամբ, որից գուշակում են նրա 9-րդ դարի գործ լինելը։ Բագրատունյաց տոհմի և Բագրատունի անձերի նկարագրության մեջ, որքան երևում է Խորենացու Պատմությունից՝ չկա ամենափոքր հետք՝ «տրամադրություն ստեղծելու ի նպաստ նախարարական Հայաստանի միության և Բագրատունյաց թագավորության հաստատման», չկա ոչ մի արձագանք կամ արտահայտություն այն հիրավի «մեծ ազդեցության, որ իններորդ-տասներորդ դարերում Բագրատունի իշխաններն ունեին և իշխան էին բովանդակ Հայաստան աշխարհի». չկա ոչ մի նշան կամ արտահայտություն հեղինակի «բարձր տրամադրության և քաղաքական մոտալուտ ազատության ակնկալման»։ Տրամագծորեն հակառակն ենք տեսնում իրապես. հեղինակը հոռետես է, ոգով համակված, հուսահատ, և քաղաքական ազատությունը համարում է հայի համար միանգամայն չքացած։ Վկա են Ողբի մեջ նկարագրված Հայաստանի ողբալի՝ անհուսալի վիճակը և դառն գուշակությունները ապագայի համար։ Վկա են պատմագրի սրտառուչ խոսքերը. «Ինձ այսոքիկ արք ի մերոց թագաւորաց են սիրելիք, որպէս ընկերք եւ իմոյ արեան առուք եւ հաւատի հարազատք։ Եւ սիրելի էր ինձ յայնժամ գալ փրկչին եւ զիս գնել, եւ առ նոքօք յաշխարհ զմուտն իմ լինել եւ նոցա տէրութեամբն խրախճանալ,* եւ յարդեացս ապրել վտանգիցս։ Այլ վաղ ուրեմն փա-

խնաւ ի մէնջ պատահումն այն, թէ արդեօք եւ վիճակ» (Ա., 22)։ Պատմագիրը պարզ ասում է, թե քաղաքական ազատությունը կորավ-գնաց անվերադառնալի կերպով․ բայց քննադատներն ասում են, թե նա գրել է բարձր տրամադրությամբ՝ քաղաքական մոտալուտ ազատության ակնկալությամբ։ Բոլորովին այլ տպավորություն կստացվեր Բագրատունիների նշանակության և դերքի մասին՝ եթե Խորենացին ապրած ու գրած լիներ 9-րդ դարի երկրորդ կեսին, հատկապես 865 թվականի շուրջը, ինչպես պետք է եզրակացնել ակադ. Մանանդյանի գրքից։ (Ակադ. Մանանդյանը կարծում է, թե Ողբի մեջ հիշատակված երկրաշարժները («սասանմունք եւ դղրդմունք») վերաբերում են այն ահավոր և աղետալի շարժերին, որոնք 9-րդ դարի կեսում տեղի ունեցան Հայաստանում, հատկապես Դվինի սոսկալի երկրաշարժը, որ, պատմագիրներից մի քանիսի ասելով, տեղի ունեցավ 863-ին, իսկ ըստ Մովսես Կաղանկատվացու՝ 869-ին (էջ 134—6)։ Այս ժամանակ Բագրատունիները հասել էին ծայրագույն հզորության, տիրում էին շատ ընդարձակ երկիրների («բովանդակ Հայաստան աշխարհի», ինչպես ասում է Լա-Կրոզը)։ Նրանք վայելում էին ամիրապետների վստահությունը և նշանակված էին իշխանաց իշխան, փաստորեն Հայաստանի թագավոր էին, առանց «թագավոր» տիտղոսը կրելու. բարեկամական կապեր ունեին հունաց կայսրների հետ և վայելում էին նրանց բարեկամությունը։ Գերի գնացած նախարարներն արդեն վերադարձել էին հայրենիք և համարձակ պաշտում էին իրենց քրիստոնեական հավատը. երկիրը խաղաղվել էր և վայելում էր անդորր բարորություն. (Հովհ. կաթողիկոս, Թիֆլիսի հրատ., 1912, էջ 134—5)։ Նախարարները հաճ և հավան էին Բագրատունիներին, ընդհանուր տրամադրություն էր ստեղծվում Բագրատունի Աշոտին թագավորեցնելու մասին, նրա հետ արդեն դաշինքներ էին կապում իբրև իրապես թագավորական զարմի ներկայացուցչի հետ. (Հովհ. կաթ., էջ 133)։ Ինչպես հայտնի է՝ նախարարների միահամուռ ցանկությամբ Աշոտը Հայաստանի թագավոր դարձավ մոտ 885-ին, այսինքն Պատմությունը գրվելու ենթադրյալ տարուց մոտ 20 տարի հետո։

Բագրատունյաց տոհմի և հատկապես իշխանաց իշխան Աշոտի այս հզորության և մոտալուտ թագավորության վիճակի հետ, որ իրոք գոյություն ուներ 865 թվին, պետք է զուգընթաց դնել

այն ամենափառավոր վկայությունը նրանց ծագման մասին, որ դրանից երկու հարյուր տարի առաջ տալիս էր Սեբեոսը, որ, հարկավ, չէր կարող անհայտ լինել 9-րդ դարի երկրորդ կեսում գրող՝ Բագրատունյաց պատմիչ Խորենացուն։ Սեբեոսը գրում է, թե Բագրատունիք սերված են Արմենակի որդիներից. Փառնավազը, Արմենակի սերունդից, ծնում է Բագատին և Բագարատին. Բագարատը ծնում է Բյուրատին, սա՝ ասպետին. Բագարատի որդիքը ժառանգում են Հայաստանի արևմտյան մասը, Անգեղ տունը։ Բագարատը կոչվում էր նաև Անգեղ, որին այն ժամանակ բարբարոս ազգերն աստված կոչեցին։ Երբ Արշակունի առաջին թագավոր «Արշակ»-ը խիստ հզոր, անդիմադրելի զորքով մտնում է Հայաստան՝ Բագարատ Փառազյան մեծ նախարարը զորքով դուրս է գալիս նրա առաջ, նրան մատուցանում է ընծաներ, ոսկի և արծաթ, զարդարում է սաղավարտով ու վակասով, պսակում է նրան հայրենի թագով (այսինքն իր՝ Բագարատի հայրենական թագով և ոչ թե Արշակի, որ դեռ հայրենական թագ չուներ). նստեցնում է ոսկեպատ ականակուռ գահի վրա և իր աղջիկը նրան կնություն է տալիս։ Արշակը նրան նշանակում է Հայաստան աշխարհի ասպետ, իշխան և ամբողջ թագավորության հրամանատար, կոչում է թագավորի հայր և եղբայր։ (Սեբ., հրատ. Պատկ., էջ 6—8)։

Իններորդ դարի վաթսունական թվականներին գրող Խորենացին, ուրեմն, տեսնում էր Բագրատունիների հզորությունը, նպաստավոր պայմանները, նրանց թագավորեցնելու համար վարվող բանակցությունները. նա աչքի առաջ ուներ Սեբեոսի վերոհիշյալ վկայությունը նրանց փառավոր ծագման ու անցյալի մասին։ Այս իրականությունը և գրավոր վկայությունը նրան պիտի մատակարարեին անբավ նյութ՝ բարձրացնելու և փառավորելու համար Բագրատունյաց տոհմը, «տրամադրություն ստեղծելու համար ի նպաստ Բագրատունյաց թագավորության հաստատման»։ Բայց տեսնում ենք, որ Բագրատունյաց տոհմի պատմիչ պերճախոս Խորենացին իսպառ չի օգտվել այս հարուստ նյութերից. սրանք նրա համար գոյություն չունեին։ Եվ թեկուզ նա ծպտեր 5-րդ դարի հեղինակի դիմակի տակ՝ այնու ամենայնիվ ոչինչ չէր խանգարի նրան Բագրատունիներին կոչելու «ի թագաւորական զարմէ», «ընիկ», «իմոյ արեան առու», բոլոր նախա-

բարություններից ավագ և հզոր, գուշակելու, թե նրանք մի ժամանակ դարձյալ թագավորական պատվի պիտի հասնեն, ինչպես եղել են իրենց ծագումով։ Ընդհակառակը, նա խորհուրդ է տալիս իր մեկենասին՝ չհավատալ մի քանի անհավաստի մարդկանց հիմար խոսքերին, որպես թե Բագրատունիք ծագում են Հայկից, ոչ այն պատճառով, որ Խորենացին արհամարհում էր այդպիսի ծագումը, այլ որովհետև ոչ մի ապացույց և հավանականության հետք չկա այդ բանի համար (Ա., 28)։ Այսպես չէր ասի Խորենացին, եթե ծանոթ լիներ Բագրատունյաց ծագման և ճյուղագրության մասին Սեբեոսի ավանդածին։ Պարզ է, որ 5-րդ դարում Բագրատունյաց մասին գոյություն է ունեցել երկու կարծիք. մեկը հօգուտ նրանց հայկական ծագման, որ դեռ աղոտ ու անփաստ «ասե-կոսե» է եղել, որ այնուհետև երկու հարյուր տարվա ընթացքում ձև ու կերպարանք է առել, պատմական բնույթ ստացել, ինչպես գտնում ենք Սեբեոսի մոտ։ Մյուսը եղել է հօգուտ նրանց հրեական ծագման, որ հիմնված է եղել Մար-Աբասյան աղբյուրի վրա («ի սմանէ ասէ լինել պատմագիրն զազգն Բագրատունեաց») (Ա., 22), որ Խորենացին ընդունել է իբրև ստույգ, որ, նրա կարծիքով, ապացուցվում էր նաև հատուկ անունների ստուգաբանությամբ (Սմբատ՝ Շամբատից, Աշոտ՝ Ասուդից և այլն)։ Բայց այս բավական չէ, որ Խորենացին չէ օգտվել իր տրամադրության տակ եղած նյութերից (9-րդ դարի վաթսունական թվականներին), Բագրատունիներին փառավորելու, նրանց թագավորելու մտքին ժողովուրդն ընտելացնելու համար։ Նրա հուսահատ հոգին, հոռետեսությունը, ապագայի չարագույն օրերի գուշակությունը, արդյան վտանգները, նրա հառաչանքը՝ «վաղ ուրեմն փախեաւ ի մէնջ պատահումն այն թե արդեօք եւ վիճակ»—սրանք ոչ մի կերպ չեն կարող համարվել այդ ժամանակի (9-րդ դարի վաթսունական թվականների) Հայաստանի բարեկեցիկ վիճակին, Բագրատունիների հզորության և նրանց մոտալուտ թագավորության ակնկալության։ Պայծառ իրականությունը և պատմագրի մռայլ տրամադրությունը հակասում են միմյանց։

Բոլոր վերոգրյալները նկատի առնելով՝ ես գալիս եմ բոլորովին հակառակ եզրակացության.—եթե Բագրատունյաց մասին Խորենացու գրածներից կամենանք որևէ եզրակացություն

հանել նրա Պատմության գրության ժամանակի վերաբերյալ՝ այդ եզրակացությունը կլինի այն, թե Պատմությունը չի կարող գրված լինել 9-րդ դարի երկրորդ կեսին, այլ շատ առաջ։ Պատմագիրը ծանոթ չէ այն դրության, որ տիրում էր Հայաստանում 9-րդ դարի վաթսունական թվականներին, չգիտե, որ Բագրատունիների թագավորելու հարցը օրվա հարց է. ծանոթ չէ Բագրատունյաց մասին Սեբեոսի գրածին։

Ակադ. Մանանդյանի հաջորդ թեզիսն այս է. «Խորենացու Պատմության իններորդ դարի գործ լինելը ենթադրվել է նաև նախորդ հետազոտություններում», և հիշում է այն գիտնականներին, որոնք այդ կարծիքը հայտնել են — Լա-Կրոզը, Խալաթյանցը, Ադոնցը, Մառը, իսկ վերջերս նաև Ակինյանը և Մարկվարտը (էջ 123)։

Լա-Կրոզի և Ադոնցի կարծիքներն ու ապացույցները վերը բերի և ցույց տվի, որ նրանք անհիմն են և ոչ մի կերպ չեն կարող ապացույց լինել Հայոց Պատմության՝ 9-րդ դարի գործ լինելուն։ Ակինյանի բոլոր ենթադրությունները ինքը ակադ. Մանանդյանն էլ հերքում է իրավացի կերպով. ուստի, հենց ակադ. Մանանդյանի տեսակետից էլ արժեքից զուրկ է նրա «ուշագրավ» եզրակացությունը Պատմության ուշ ժամանակի գործ լինելու մասին, որ բղխում է սխալ ենթադրություններից։ Խալաթյանցի կարծիքը, որ հիմնված էր Խորենացու բանագողության վրա Ղևոնդի Պատմությունից, որով և որոշվում էր Հայոց Պատմության գրության ժամանակն 8-րդ դարի վերջերում կամ 9-րդի սկզբում՝ նույն ակադ. Մանանդյանը չէ ընդունում, ասելով, որ «Խալաթյանցի թե՛ բռնաձիգ համեմատությունները և թե նրա ընդհանուր եզրակացությունը վիճելի են և կասկածելի» (էջ 124—5)։

Մարկվարտի կարծիքը, որով Մար-Աբասի և Խորենացու ժամանակը որոշվում է 9-րդ դարում՝ հենց ակադ. Մանանդյանի վկայությամբ՝ «բավականաչափ հիմնավորված չէ» (էջ 127)։ Բայց և այնպես նա մեջ է բերում Մարկվարտի եզրակացությունները, այսինքն՝ 1. Մար-Աբասի Պատմությունը գրված է... «իշխանաց իշխան» Բագարատի արքունիքում, 9-րդ դարի առաջին կեսում. 2. Մար-Աբասը՝ Փառնավազյան Բագարատին նկարագրելիս՝ ի նկատի է ունեցել... այս Բագարատին. 3. Մար-Աբասի վկայու-

թյունը, որ Արշակ արքան Փառնավազյան Բագարատին նշանակել է «իշխան եւ հրամանատար ամենայն Թագաւորութեանն», համարում է միայն «իշխանաց իշխան» Բագարատին. 4. Խորենացին... Բագրատունիների նախահայր է համարում Շամբատ-Սմբատին՝ «զկոչեցեալն Բագարատ»՝ դրա պատճառն այն է, որ նա համակրում է Սմբատ Խոստովանողին և ատում Տարոնի հավատուրաց Բագարատին. 5. Խորենացու այս Շամբատ-Բագարատը նախատիպն է ուրեմն Սմբատ սպարապետի, որը 856 թվին վախճանվել էր Սամարայում. 6. Խորենացին իր Պատմությունը գրել է այս Սմբատի որդու՝ իշխանաց իշխան Աշոտի արքունիքում՝ որպես մի հայելի հայկական պետության, որ նոր ստեղծվելու էր։ (Համառոտելով բերում եմ ակադ. Մանանդյանի գրքից, էջ 127—8)։

Մարկվարտի այս կարծիքները ակադ. Մանանդյանը — որքան և տարօրինակ է սպասել—շատ բարձր է գնահատում։ «Մարկվարտը,—ասում է նա,—ինչպես տեսնում ենք, Խորենացու ժամանակը որոշել է ճշգրիտ կերպով և իր կարծիքը հիմնավորել նաև Խորենացու Շամբատ-Բագարատի վերաբերյալ ուշագրավ ու կարևոր իր դիտողություններով։ Նրա սրամիտ այդ եզրակացությունները, որ նոր լույս են սփռում Խորենացու հարցի վրա... կարևորագույն նեցուկներն են ըստ իս Խորենացու առեղծվածի լուծմանը» (էջ 128)։

Ես տրամագծորեն հակառակ կարծիքի եմ Մարկվարտի վերոհիշյալ ենթադրությունների գնահատման հարցում։ Ես ոչ միայն այդ ենթադրությունները չեմ գտնում «ուշագրավ, կարևոր, ճշգրիտ, Խորենացու հարցի վրա նոր լույս սփռող, կարևորագույն նեցուկ Խորենացու առեղծվածը լուծելու», այլ ընդհակառակն՝ անհիմն, կամայական, բնագրերն աղավաղող, Խորենացու հարցն ավելի խճճող, որևէ նշանակությունից զուրկ, քմահաճ կարծիքներ։ Իմ այս խիստ որակումներն առանց հիմքի չեն։ Արդարև, Մարկվարտի առաջին երեք կարծիքները, որոնք կապ ունեին Մար-Աբասի հետ՝ միանգամայն հակապատմական են և արժեքազուրկ, քանի որ այդ Մար-Աբասը Սեբեոսի առաջին գլուխներում հիշված Մար-Աբաս Մծուրնացին է, իսկ այդ երկու գլուխները Սեբեոսի գրածներն են 7-րդ դարի երկրորդ կեսի սկզբներին, ինչպես անկասկածելի կերպով ապացուցված է (տես իմ

«Սեբեոսի պատմությունը և Մովսես Խորենացին» աշխատություն և Ադոնցի իմ՝ այդ աշխատության մանրամասն քննությունը)։ Չէր կարող ուրեմն 9-րդ դարում ապրող իշխանաց իշխան Բագարատն իբրև կաղապար ծառայել 7-րդ դարում գրող Սեբեոսի և նրա՝ Մար-Աբասի Փառնավազյան Բագարատին։

Չորրորդ կետը մի անհիմն ու ծանր մեղադրանք է Խորենացուն, իբր թե սա, առնելով հավատուրաց Բագարատին և համակրելով Սմբատ Խոստովանողին՝ խարդախել է պատմությունը և Բագրատունյաց նախահայր է կոչել Շամբատ-Սմբատին, փոխանակ Բագարատին, ինչպես ունի Սեբեոսյան Մար-Աբասը։ Եթե այստեղ մի խարդախում կա՝ այդ կատարել է ոչ թէ Խորենացին պատմության վերաբերմամբ, այլ ինքը՝ Մարկվարտը Խորենացու վերաբերմամբ։ Բագրատունյաց նախահայրը Խորենացու մոտ հիշված է հինգ անգամ, որոնցից երկու անգամ Շամբատ-Բագարատ զույգ անունով, և երեք անգամ միայն Բագարատ անունով[1]։ Ուրեմն Խորենացու մոտ Բագրատունյաց նախահայրը միշտ կրում է Բագարատ անունը, երկու անգամ Շամբատ անվան հավելվածով։ Եթե Մարկվարտի տեսակետից դատելու լինինք, պետք է ասենք, թե Խորենացին համակրում է հավատուրաց Բագարատին, և ատում է Սմբատ Խոստովանողին: Սակայն Խորենացու Պատմության ուշադիր ընթերցողը Շամբատ-Բագարատ զուգադրությունից և «կոչեցեալն Բագարատ» խոսքի դարձվածքից կհաներ բոլորովին այլ և վերին աստիճանի հետաքրքրական եզրակացություն. այդ այն է, որ Խորենացին Բագարատ բառն ըմբռնում է ոչ թե իբրև մի անձի հատուկ անուն, այլ իբրև մակդիր, որ կցվում է հատուկ անվան և որ գործ է ածվում նաև առանձնաբար բուն հատուկ անվանը փոխարինելով, օրինակ՝ ինչպես մենք սովոր ենք ասել Ներսես-Շնորհալի կամ լոկ Շնորհալի՝ նույն Ներսեսի վերաբերմամբ։ Այս բացատրությունը լիովին արդարանում է «բագարատ» բառի ստուգա-

---

[1] «Ան զօրաւորն եւ իմաստնոյ որ ի Հրէից՝ Շամբատայ Բագարատ»։ 2. «Այս Բագարատ նախաձեռն ընծայ մատոյց զինքն Վաղարշակայ» (Ա., 3)։ 3. «Եւ զկոչեցեալն Բագարատ որ ի Հրէից» (Ա., 7)։ 4. «Եւ ազերսեալ որ ի Հրէից Շամբատայ Բագարատ որ եւ Թագադիր եւ ասպետ» (Ա., 8)։ 5. «Ի սմանէ նեղեալ որդիք Բագարատայ վասն զկուռս պաշտելոյ» (Ա., 9)։

բանությամբ, որ հին պարսկերեն լեզվով նշանակում է աստվածանվեր (вaga-rata), կամ աստվածատուր (вaga—data) (Հյուբշմանն—Հայերեն քերականություն, էջ 31)։ Խորենացուն, ինչպես երևում է, հայտնի չէ «բագարատ» բառի պահլավական ծագումը և այս նշանակությունը, որովհետև նա «բագարատ» բառը ծագեցնում է եբրայական բագադիա (?) անունից։ Այս դեպքում ավելի ևս նշանակալից է դառնում «բագարատ» բառի իբրև մակդիրի գործածությունը, իբրև վաղեմի ժամանակներից ավանդաբար մինչև Խորենացին հասած ու քարացած ձև։ Որ Բագարատն իրոք մակդիր է, տոհմական անուն և ոչ թե մի անձի հատուկ անուն՝ այդ երևում է նաև Բագրատունի անունից։ Ունի վերջավորությամբ տոհմերի անուններ մեր հին լեզվում կազմվում են ընդհանրապես մակդիրներից, ինչպես՝ Պահլավունի, Արշակունի (արշակ բառի նախնական՝ թագավոր նշանակությունից), Սյունի (=Սի-ունի), Արծրունի և այլն, այն ինչ անձերի հատուկ անուններից տոհմերի անուններ կազմվում են սովորաբար յան մասնիկով, օր. Կարեն, Սուրեն, Մամիկոն, Մանավազ, Ռուբեն և այլ հատուկ անուններից՝ Կարենյան, Սուրենյան, Մամիկոնյան, Մանավազյան, Ռուբինյան և այլ տոհմանունները։

Մարկվարտի հինգերորդ ենթադրությունը տապալվում է ինքնին, երբ, ինչպես հենց նոր տեսանք, պարզվեց, որ Խորենացին Սմբատ Խոստովանողի սիրուն չէ ծագեցրել Բագրատունիներին Շամբատ-Սմբատից։

Վեցերորդ կետն անտեղի է կրկնակի. իշխանաց իշխան Աշոտի արքունիքում գրող Խորենացին գրած պիտի լիներ այդ Աշոտի հանձնարարությամբ կամ նրան պետք է նվիրեր իր Պատմությունը և ոչ թե Սահակ Բագրատունուն։ Մյուս կողմից՝ արդեն տեսանք, որ Խորենացին չէր էլ երազում մի նոր հայկական թագավորություն, «որ նոր սաղծվելու էր»։ Միթե մի ազգի հին պատմությունը չէ կարելի գրել առանց այդպիսի հետին մտքի։

Ես այսքան չէի կանգ առնի Մարկվարտի հիշյալ անհիմն և անարժեք ենթադրությունների վրա, եթե չլիներ ակադ. Մանանդյանի այն տարապայման գովեստը։ Պետք էր ցույց տալ, որ Մարկվարտի մատակարարած «կարևորագույն նեցուկները»

ծայրե ծայր փտած են և նրանց վրա կառուցված շենքն անխուսափելիորեն ենթակա՝ է կործանման։

Ակադ. Մանանդյանը հիշում է Ն. Մառի անունը և բերում է նրա հետևյալ կարծիքը (թարգմանում եմ հայերեն). «Մովսես Խորենացու հայացքը բնորոշում է ոչ թե հին հայկական թագավորության իրականությունը (реальность), այլ պատմագրի ժամանակակցությունը, որ տալիս է առաջին Արշակունի թագավորի իդեալացրած պատկերը (представление), համաձայն իր ժամանակի իդեալներին, մոտավորապես ութերորդ-իններորդ դարում Քր. հետո» (էջ 125)։

Սա մի չհիմնավորված վարկած է, որ կարող է լինել ճիշտ կամ սխալ. բայց նույն իսկ ճիշտ լինելու դեպքում այդ ազգային իդեալները նույնքան կարող են համարվել 5-րդ դարի երկրորդ կեսին, որքան և 8—9-րդ դարերին, քանի որ բոլոր այս ժամանակաշրջանում հայերի քաղաքական դրությունը միատեսակ էր — քաղաքական ինքնուրույնությունից զրկված, օտար ազգերի լծի տակ։ Դեռ ավելի հավանական է այդպիսի իդեալների կենդանությունը 5-րդ դարում, երբ ազգային-քաղաքական ինքնուրույնության հիշատակը դեռ վառ ու կենդանի էր Հայոց մեջ, քան 8—9-րդ դարերում, երբ նա բնականաբար աղոտացած, գուցե և հանգած էր։

Տեսնում ենք, ուրեմն, որ ակադ. Մանանդյանի երկրորդ թեզիսում հիշված գիտնականների կարծիքներից հօգուտ Հայոց Պատմության՝ 9-րդ դարի գործ լինելու ենթադրության՝ ոչ մեկը հիմնավորված չէ և այդ ենթադրությունը նա չէ ապացուցում։ Եթե այդ ենթադրություններից որևէ մեկը կամ բոլորը միասին վերցրած ապացուցեին, թե Խորենացու Պատմությունը գրված է 9-րդ դարում (այս կամ այն տասնամյակում—սա անտարբեր է), ապա հազիվ թե ակադ. Մանանդյանն աշխատանք հանձն առներ՝ երկրորդ անգամ ապացուցելու այն, որ մի անգամ արդեն ապացուցված, վերջացած է։

Ակադ. Մանանդյանի հաջորդ թեզիսն է. «Խորենացու Պատմությունը գրված է Բուղայի արշավանքից հետո» (էջ 129)։ Այս թեզիսը նրա կառուցվածքի առաջին սյունն է, terminus antes quem non. Բուղայի արշավանքները տեղի ունեցան 852—855 թվականներին, ուրեմն, ըստ ակադ. Մանանդյանի, Հայոց Պատմությունը գրված է 855 թվից հետո։ Սա վաղագույն ժամանակն

է, որից առաջ չէր կարող գրված լինել Պատմությունը։ Հետնագույն ժամանակը, որից հետո չէր կարող Պատմությունը գրվել՝ ակադ. Մանանդյանը որոշում է Զաքարիա կաթողիկոսի մահվան տարին, 875 թվականը (թե ինչու՝ հետո կտեսնենք)։ Այնպես որ Խորենացու Պատմությունը, ըստ ակադ. Մանանդյանի, գրված պիտի լիներ 855—875 թվականների միջև, Զաքարիա կաթողիկոսի ժամանակ (855—876), «hավանորեն, սրա կաթողիկոսության սկզբնական տարիներում» (էջ 157)։ Այս վերջին որոշումն ակադ. Մանանդյանն ընդունել է անշուշտ այն պատճառով, որ Հայաստանի արհավրալից վիճակի նկարագրությունը Ողբի մեջ շատ հարմար է գալիս այն իրոք արհավրալից վիճակին, որի մեջ գտնվում էր Հայաստանը Բուղայի արշավանքների ժամանակ և նրանցից անմիջապես հետո, հիսունական թվականների երկրորդ կեսին։ Բայց այս որոշմամբ ակադ. Մանանդյանն ընկնում է հակասության մեջ։ Նա ինքն ասում է, թե Ողբի մեջ հիշված «սասանմունք և դղրդմունք» վերաբերում են 9-րդ դարի երկրորդ կեսում, Բուղայի արշավանքից հետո, տեղի ունեցած շարժերին, և պատմագիրներից վկայություն է բերում Դվինի աղետալի երկրաշարժի մասին (էջ 134—136)։ Իսկ այս երկրաշարժը, ինչպես ցույց են տալիս այդ պատմագիրները, տեղի է ունեցել 863 թվին (869-ին՝ ըստ Մ. Կաղանկատվացու)։ Դարձյալ՝ Խորենացու դավանաբանական վեճերից խուսափելը ակադ. Մանանդյանը բացատրում է նրանով, որ Պատմությունը գրվելու ժամանակ բանակցություններ էին վարվում Հունաց և Հայոց եկեղեցիների միջև միություն ստեղծելու նպատակով (էջ 149)։ Իսկ այս բանակցությունները տեղի ունեցան 864—867 թվականներին։ Ուրեմն, նույն ակադ. Մանանդյանի այս երկու ցուցումների համաձայն, Պատմությունը պետք է գրված լիներ 863-ից հետո, 864—870 թվականների միջև։ Բայց այս թվականը ակադ. Մանանդյանը դիտմամբ զանց է անում բերել, որովհետև այն ժամանակին բնավ չեն համապատասխանում Ողբի մեջ նկարագրված արհավիրքները։

Այժմ դառնանք այն փաստերին, որոնցով ակադ. Մանանդյանը հիմնավորում է իր թեզիսը։

Նախ նա Ողբից բերում է հետևյալ հատվածը. «Ի գերութիւն վարեցաւ Սեդեկիա, եւ Զօրաբաբել ոչ ուրեք է, որ նորոգէ զպետութիւնն։ Անտիոքոս բռնադատէ թողուլ զօրէնս հայրենիս.

եւ Մատաթիա ոչ ընդդիմակայէ. պատերազմ զմեզ շուրջ պաշարէ եւ Մակաբէ ոչ փրկէ», և այլն։

Նախ նկատենք, որ այս նկարագրության ոչ մի խոսքը չէր կարող գրված լինել 864—870 թվականներին, երբ ոչ գերի վարվածներ կային (բոլորը վերադարձել էին 862-ին), ոչ բռնադատություն կար կրոնն ուրանալու (բոլորն ազատ համարձակ պաշտում էին իրենց կրոնը), և ոչ պատերազմ կար (խաղաղ անդորրություն էր վայելում երկիրը), բայց կար Զորաբարել (իշխանաց իշխան Աշոտը), որի թագադրության՝ «պետությունը նորոգելու» մասին բանակցություններ էին վարվում, որոնք և պսակվեցին հաջողությամբ։ Իսկ այս 864—870 թվականները, հենց ակադ. Մանանդյանի ցուցման հիման վրա, պետք է ընդունենք իբրև Պատմության գրության ժամանակ։

Բայց ընդունենք հիսունական թվականների երկրորդ կեսը՝ Զաքարիայի կաթողիկոսության սկզբնական տարիները։ Նաև այս դեպքում Ողբի վերոհիշյալ խոսքերը չէ կարելի վերաբերել այս ժամանակամիջոցին։

Չէ կարելի վերաբերել ամենից առաջ Ողբի բնագրի հենց արտաքին կառուցվածքի՝ շարադրության ընթացքի հիման վրա։ Հիշյալ հատվածը դուրս է գծված մի պարբերությունից, որից առաջ և որից հետո խոսքը անտարակույս վերաբերում է 5-րդ դարի դեպքերին։ Այդ հատվածը պարունակող պարբերությունից առաջ Խորենացին ասում է. «Ընդ Քրիստոսի լաւ է նոցա ընակել, եւ յԱբրահամեանն հանգչել ի գոգս, եւ զհրեշտակացն տեսանել պարաւորութիւնս։ Բայց անհոգող դու այրութեամբ, եւ եղկելիք մեք, որ զրկեալք եմք (կամ զրկեցաք) ի հայրենի վերակացութենէն»։ Պարզ է, որ այս խոսքերը վերաբերում են ս. Սահակի ու Մեսրոպի մահվան և եկեղեցու այրի մնալուն, ուրեմն՝ 5-րդ դարին։ Իսկ հատվածից հետո պատմագիրն ասում է. «Աւա՜ղ զրկանացս, աւա՜ղ թշուառական պատմութեանս... զիա՞րդ զմիտս իմ եւ զլեզուս պնդեցից եւ հատուցից զբանս հարցն փոխանակ ծննդեանն եւ սննդեանն։ Քանզի ծնեալ զիս իւրեանց վարդապետութեամբն», և այլն. ուրեմն դարձյալ ս. Սահակի և Մեսրոպի մասին, դարձյալ 5-րդ դարը։

Հնարավոր է ենթադրել, որ ոչ միայն ճաշակավոր Խորենացին, այլև թեկուզ մի համբակ գրող, նկարագրեր 5-րդ դարի

դեպքեր, հետո հանկարծ, առանց որևէ առիթի, թռչեր 9-րդ դարը, մի քանի խոսքով այդ դարի աղետները նկարագրեր և հետո էլի թռչեր 5-րդ դարը՝ նախընթաց խոսքը շարունակելու: Սա անկարելի բան է, եթե այդ հատվածն իրոք վերաբերեր 9-րդ դարին՝ ապա պետք կլիներ նրան ընդմիջարկություն համարել, այն ատրճան անտեղի կլիներ 5-րդ դարի անցքերի նկարագրության մեջ:

Այդ հատվածը չի կարելի վերաբերել 9-րդ դարի հիսունական թվականներին նաև բովանդակության տեսակետից: Հատվածի մեջ, ինչպես տեսանք, հիշված են երեք պատմական անձնավորություններ հրեաների պատմությունից — Սեդեկիա թագավոր, Մատաթիա քահանա և Մակաբե զորավար, որոնք հայտնի են իրենց գործունեությամբ: Բնականաբար այս անձերին ու նրանց գործերին պետք է զուգադրվեին անձեր ու գործողություններ Հայոց պատմությունից և համեմատվեին հրեաների հետ: Բայց այսպիսի զուգադրություն և համեմատություն մենք չենք տեսնում ակադ. Մանանդյանի բացատրության մեջ: Նա հիշում է, որ Բուղայի արշավանքների ժամանակ... կալանավորվել ու Սամարա էին ուղարկվել Հայաստանի «գլխավոր»-ներն իրենց ընտանիքներով և բանտարկվել էին նաև «իշխանաց իշխան Բագարատը և Սմբատ սպարապետը»: Բայց մի կողմ թողնելով, որ սրանց մեջ թագավոր և քահանա չկա, որ սրանց «ընդդիմակայության», երկիրը «փրկելու» մասին ակնարկություն չկա՝ հիշեցնում եմ, որ Ողբի հեղինակն առանձնապես թվում է. «Կապումն գլխաւորաց եւ բանտք յայտնեաց, յօտարութիւն վտարումն ազատաց եւ անթիւ նեղութիւնք ռամկաց», որ միանգամայն պատշաճում է ակադ. Մանանդյանի նշանակած հալածանքներին ու բանտարգելության. այնպես որ Սեդեկիա-Մատաթիա-Մակաբեն բոլորովին բաց են մնում ակադ. Մանանդյանի բացատրության մեջ և իրենց զուգահեռը չեն գտնում Հայոց պատմության մեջ:

Բոլորովին այլ կերպարանք կստանա այս հատվածը՝ եթե նրան վերաբերենք հինգերորդ դարին: Այս դեպքում հատվածում հիշված անձերն ու անցքերը իրենց կատարյալ զուգահեռները կգտնեն Հայոց պատմության մեջ, 5-րդ դարի 30—70-ական թվականներին: Այսպես.

1. Սեդեկիա, *Հրեաստանի թագավորը, գերի բռնվեց Նաբուգոդոնոսորից և մնաց Բաբելոնում բանտի մեջ ու նրանով վերջացավ Հրեաստանի թագավորությունը։ Սրա հետ պատմագիրը համեմատում է Հայոց Պատմության մեջ Արտաշիր թագավորին, որ Վռամի հրամանով կանչվեց Պարսկաստան, այնտեղ արգելվեց ու մնաց. նրանով վերջացավ Արշակունյաց թագավորությունը։*

*Բայց հրեաները բախտավոր էին համեմատաբար, որ Սեդեկիայից հետո ասպարեզ եկավ Զորաբաբելը, որ հրեական գերությունը Բաբելոնից հետ բերեց, տաճարը վերաշինեց և պետությունը նորոգեց. այնինչ հայերի մեջ այսպիսի մի Զորաբաբել դուրս չեկավ, «որ նորոգէր զպետութիւնն»։ (Եվ չնայելով սրան՝ Մարկվարտը կարծում էր, թե Խորենացին ապրել ու գրել է իշխանաց իշխան Աշոտի արքունիքում, իսկ ակադ. Մանանդյանը կարծում է, թե Խորենացին ունի մի հատուկ նպատակ՝ տրամադրություն ստեղծելու ի նպաստ Բագրատունյաց թագավորության հաստատման)։*

2. Մատաթիա: *Սելևկիայի Անտիոքոս թագավորն ստիպում էր հրեաներին ուրանալ իրենց կրոնը և զոհել կուռքերին։ Նրա հրամանի դեմ դուրս եկավ Մատաթիա քահանան, ընդդիմակայեց, բայց առանց աջողության. մահը վրա հասավ։ Նրա հետ պատմագիրը համեմատում է Ղևոնդ երեցին։ Պարսից Հազկերտ Բ. թագավորն ստիպում էր հայերին ուրանալ քրիստոնեությունը, երկրպագել կրակին։ Նրա հրամանի դեմ դուրս եկավ Ղևոնդ երեցը, ընդդիմակայեց, բայց նույնպես առանց հաջողության — բռնվեց ու նահատակվեց։*

3. Մակաբե: *Կրոնական պատերազմի ժամանակ Հուդա Մակաբեն, ուխտապահ հրեաների գլուխն անցած՝ կռվեց Սելևկյան իշխանության դեմ և մի ճակատամարտում ընկավ, չկարողանալով փրկել հրեաներին։ Նրա հետ պատմագիրը համեմատում է Հայոց Պատմության մեջ Վարդան Մամիկոնյանին (որ բանաստեղծներից կոչված է «Նոր Մակաբե»), որ նույնպես ուխտապահ հայերի գլուխն անցած՝ կռվեց Պարսիկների դեմ և Ավարայրի ճակատամարտում ընկավ, չկարողանալով փրկել հայրենիքը։ Ճակատամարտի նկարագիրը և ռազմական շարժումները, ինչպես բերված են ս. Գրքում (Ա. Մակ. Թ., 12—18), գրեթե բառացի կրկնվում են Եղիշեի մոտ՝ Վարդանի վերաբերմամբ։*

կարևոր էր ցույց տալ, որ վերը բերված հատվածը, որի մեջ նշանակված են հատուկ անձեր ու գործողություններ, թե՛ իր դիրքով շարադրության ընթացքում և թե՛ իր բովանդակությամբ համարվում են 5-րդ դարի հայոց դեպքերին և ոչ թե 9-րդ դարին, ինչպես ենթադրել է ակադ. Մանանդյանը։ Այնուհետև երկրորդական նշանակություն ունի Ողբի ընդհանուր և բանաստեղծական նկարագրությունը Հայաստանի աղետալի դրության, որ կարող է համարվել շատ ժամանակների, և, ի միջի այլոց, միանգամայն համարվում է 5-րդ դարի վերը նշված շրջանին։ «Հաւատ վաճառեալ ընդ սնոտի կենցաղոյս, հէնք եկեալ անհատք եւ յոլովից կողմանց. պերուին տանց եւ հափշտակութիւն ստացուածոց, կապուին գլխաւորաց եւ բանտք յայտնեաց», և այլն. սրանցից ամեն մի կետ, ինչպես և շարունակության մեջ «յօտարութիւն վտարուին ազատաց եւ անթիւ նեղութիւնք ռամկաց, առուին քաղաքաց եւ քանդուին ամրոցաց» և այլն, լիովին արդարանում են այն բազմաթիվ տեղեկություններով, որ հաղորդում են Եղիշեն ու Փարպեցին։ Օրինակներն այնքան շատ են և հայտնի, որ ավելորդ ժամավաճառություն կլիներ մեջ բերելը։

Ճիշտ է, այս ժամանակամիջոցում ո՛չ Եղիշեն և ոչ Փարպեցին, ոչ էլ Խորենացին իր Պատմության այլ տեղերում, չեն հիշում «դղրդմունք եւ սասանութիւնք», այսինքն երկրաշարժներ։ Սա, իհարկե, նրանից չէ, որ այդ ժամանակ երկրաշարժներ չեն եղել, այլ նրանից է, որ երկրաշարժները շատ սովորական երևույթներ են եղել լեռնային Հայաստանի համար ինչպես այժմ, այնպես էլ այն ժամանակ, որոնց առանձին հիշելու կարիք չեն զգացել, բայց Ողբի մեջ պատմագիրը հիշել է իբրև լրացուցիչ աղետների նկարագրի։ Եվ, բացի սրանից, երկրաշարժներ, ինչպես հիշեցինք, տեղի ունեցան 863—869 թվականներին, երբ աղետներն այլևս չկային։

Ակադ. Մանանդյանի հաջորդ թեզիսն է. «Ողբի մեջ հիշված «ռովիվ»-ը հավանորեն Ովայեցի Հովհաննես Ն. կաթողիկոսն է» (էջ 136)։ Զգիտեմ, ի՛նչ կարիք ուներ ակադ. Մանանդյանն այս թեզիսը դնելու և պաշտպանելու, քանի որ ինքն էլ ընդունում է, թե Խորենացին իր Պատմությունը հորինելով «բարառնության» ձևով՝ վերագրում է այն Սահակ-Մեսրոպի աշակերտ համանուն

Մովսեսին (էջ 175). ուրեմն և «հովիվը» կարող էր շարունակել մնալ Սահակ կաթողիկոսը, պատմագրի ուսուցիչը, առանց Ովայեցի Հովհաննես կաթողիկոսին անհանգիստ անելու։ Ովայեցի Հովհաննես Ե. (ըստ Օրմանյանի՝ Դ.) կաթողիկոսի մասին այսքան գիտենք, թե նա կաթողիկոս էր ընտրված հակառակ իշխանաց իշխան Բագարատի կամքին. պարկեշտ վարքի տեր էր։ Նրա մտերիմներից ոմանք նրան զրպարտում են Բագարատի մոտ, ինչինչ հանցանքների մեջ մեղադրելով։ Բագարատը հաճությամբ լսում է զրպարտիչներին և հրաման է արձակում, որ ոչ ոք Հովհաննեսին կաթողիկոս չճանաչի։ Հովհաննեսը քաշվում է մի վանք և այնտեղից բողոքում է Բագարատի ապօրինի հրամանի դեմ։ Մյուս իշխանները դժգոհ են մնում Բագարատի վարմունքից. գումարվում է եկեղեցական ժողով. քննում են կաթողիկոսի դեմ եղած մեղադրությունները, բոլորը ճանաչվում են զրպարտություն։ Նա վերադառնում ու գրավում է դարձյալ հայրապետական աթոռը, վախճանվում է 855-ին։ Ահա բոլորը։ Ի՞նչ նմանություն կա այս հովիվ Հովհաննեսի և Ողբի մեջ նկարագրված հովվի—Սահակ կաթողիկոսի միջև։ Ովայեցին է վերաբերում Ողբը «վասն բառնալոյ եպիսկոպոսութեանն ի տանէ սրբոյն Գրիգորի», թե՞ Սահակ կաթողիկոսին, Լուսավորչի վերջին արու սերնդին։ Ովայեցին է կոչում պատմագիրը «հայր իմ և քահանայապետ», որ նրան ուղարկել է արտասահման ուսումը կատարելագործելու և որի գերեզմանի վրա նա ողբ ասելով հառաչում է ողորմելի, թե՞ Սահակ կաթողիկոսին։ Ո՞վ է վերջապես հովվի հետ շարունակ հիշվող հովվակիցը, որ հովվի բացակայության միջոցին հովվել է հոտը իբրև երկրորդ հայր, եթե ոչ Սահակ կաթողիկոսի գործակից Մեսրոպ-Մաշտոցը։ Ովայեցու ժամանակ այսպիսի մի հովվակցի ոչ մի հիշատակություն չկա։ Այսպիսի հարցեր անշուշտ իրեն տված կլիներ և ակադ. Մանանդյանը, առանց պատասխան գտնելու։ Բայց և այնպես նա չէ դիմացել գայթակղության առաջ։ Հովհաննես պատմագիր կաթողիկոսը պատմելով Ովայեցի կաթողիկոսի վերոհիշյալ դեպքը, ըստ իր սովորության մի քանի բառ փոխ է առել Խորենացու Ողբից, որ գրված է Սահակի մասին, այսինքն՝ «եկեղեցիք քրիստոնէից, որ երբեմն խրբճացեալն էր ի վարատմանէ փեսային՝ դարձեալ յինքն զփեսայն նորոգապէս պայծառանայր»։ Ընդգծ-

ված բառերը պատահում են Ողբի մեջ և կարող են համարվել ամեն մի կաթողիկոսի, որ ժամանակավորապես հեռացած է պաշտոնից։ Այս երկու-երեք բառը բավական է եղել ակադ. Մանանդյանին՝ Ողբի հովվին նույնացնել Ովայեցի կաթողիկոսի հետ, որ այնքան նման է Սահակ կաթողիկոսին, ինչքան որ ամեն մի տերտեր նման է Ղևոնդ երեցին։ Ահա թե ինչ է նշանակում որոնումն:

Այս առիթով ակադ. Մանանդյանը մի ուշագրավ հայտնագործություն էլ է անում։ Նա գտնում է, որ 10—11-րդ դարերի պատմիչները, որոնք Խորենացուն համարում են Սահակ-Մաշտոցի աշակերտ՝ առանձին պատկառանքով են հիշում նրա հռչակավոր Պատմությունը և հեղինակին կոչում են բարձր գովեստներ արտահայտող մակդիրներով—մեծ քերթող, տիեզերահռչակ վարդապետ և այլն. այնինչ Հովհաննես Պատմագիրը, որ իր Պատմության առաջին մասը քաղում է գլխավորապես Խորենացուց՝ նրա անունը միայն մի անգամ է հիշում, այն էլ առանց մակդիրի—«Բովանդակաբար ցուցցէ քեզ Պատմութիւնն Մովսէս Խորենացւոյ»։ Պատկառանքի ու ակնածության այս բացակայությունը Խորենացու հանդեպ ակադ. Մանանդյանը բացատրում է նրանով, որ Հովհաննես Պատմագիր կաթողիկոսը մոտ շփում է ունեցել Բագրատունի արքունիքի հետ, լինելով ժամանակով Խորենացուն խիստ մոտ, ապրելով 9-րդ դարի երկրորդ կեսում՝ Խորենացու ժամանակն ավելի լավ կարող էր գիտենալ, քան հաջորդ հեղինակները (էջ 140—2)։ Ակադ. Մանանդյանն ուզում է ասել, թե Հովհաննես Պատմագիրը ծանոթ լինելով Խորենացու կեղծարարության՝ դեպի նա չէ տածում այն հարգանքը, որ տածում են հաջորդ դարերի հեղինակները, որոնց հայտնի չէր այդ կեղծիքը։

Ծիծաղելի և հիմար դերի մեջ է դնում ակադ. Մանանդյանը Հովհաննես Պատմագրին։ Դուրս է գալիս, որ Խորենացու կեղծարարությունը (Սահակ-Մեսրոպի աշակերտ ձևանալը) մի գաղտնիք է եղել, որ Հովհաննես Պատմագիրն իմացել է՝ Բագրատունյաց արքունիքին մոտ ծանոթ լինելով, այնինչ 870 թվականից, երբ, ըստ ակադ. Մանանդյանի, Խորենացու Պատմությունը հրապարակ եկավ, ամեն մի կարդացող այդ «գաղտնիքը» պետք գիտենար. ամենքին հայտնի պետք լիներ, թե այն Հայոց

Պատմությունը, որի մեջ հեղինակն իրեն ցույց է տալիս իբրև 5-րդ դարում ապրած ու գրած՝ Սահակ-Մեսրոպի աշակերտ, հենց այն Մովսես վարդապետն է, Խորյան գյուղից, որի հետ իրենք նստել վեր են կացել, որի քարոզները լսել են, որի եղբորը, եղբորորդուն... ամենքը ճանաչում են։ Դուրս է գալիս դարձյալ, որ Հովհաննես Պատմագիրը, ճանաչելով հանդերձ Խորենացուն կեղծարար և նրա Պատմությունը կեղծիք՝ այնու ամենայնիվ նրանից, իբրև հավաստի աղբյուրից քաղում է գլխավորապես իր նյութը Պատմության առաջին մասում, և այս բավական չէ, հանձնարարում է այդ կեղծ Պատմությունն ընթերցողներին,— «բովանդակաբար ցուցցէ քեզ Պատմութիւնն Մովսէսի Խորենացւոյ»։

Բայց բանն այնպես չէ, ինչպես ենթադրում է ակադ. Մանանդյանը։ Հովհաննես Պատմագիրն իր Պատմության սկզբում հիշում է, «որ նախքան զմեզ քաջք եւ բանաստեղծք արգոյակալք եւ զարմանալիք զարժանի բան պատմութեան անտուստ ի վերուստ արձանագրեցին» (էջ 4), որպիսի գովեստն ամենից առաջ վերաբերում է «անտուստ ի վերուստ» Հայոց պատմությունը գրող Մովսես Խորենացուն։ Իսկ թե ինչու Խորենացու անունը մի անգամ հիշելիս չէ ավելացնում գովեստի մակդիր— քերթողահայր, տիեզերահռչակ վարդապետ և այլն, այդ պարզապես նրանից է, որ Հովհաննես Պատմագիրն իրեն էլ համարում էր քերթող, ուրեմն ըստ արվեստի Խորենացուն ընկեր, և կաթողիկոսական աստիճանով նրանից բարձր։ Ինչպես երևում է՝ ակադ. Մանանդյանն ինքն էլ շատ չէ հավատում իր ենթադրության համոզիչ լինելուն, որովհետև ասում է. «Իմ այս դիտողությունների դեմ կլինեն, անշուշտ, առարկություններ, սակայն ինձ թվում է, որ այդ առարկությունները չեն կարողանալու խախտել իմ ընդհանուր եզրակացությունը, որովհետև Խորենացու ժամանակի որոշման համար կան նաև ուրիշ հենարաններ, որոնք նեցուկ են ծառայելու վերոհիշյալ կարևոր ենթադրության» (էջ 142—3)։

Ծանոթանանք այդ «ուրիշ հենարանների»-ն։

Սրանցից մեկն է ակադ. Մանանդյանի հետևյալ թեզիսը.

«Խորենացու հունասիրությունը հասկանալի է արաբական տիրապետության այս շրջանում» (էջ 143)։ Այս միտքն ապա-

ցուցելու համար ակադ. Մանանդյանը դիտում է, որ արաբացոց հարձակողական քաղաքականությունն ու նրանց կատարած ավերածությունները 775-ին և Բուղայի արշավանքների ժամանակ, 852—855 թվականներին, հայ նախարարներին և մասնավորապես Բագրատունիներին ծայր աստիճան հուզելու և գրգռելու էին արաբական խալիֆայության դեմ, և ընդհակառակը, հենց այս 9-րդ դարում Հունաց կայսրությունը բարեկամական հարաբերություններ ուներ Բագրատունիների և Արծրունիների հետ, որոնց առատաբար բաշխում էր բարձր տիտղոսներ և կալվածներ (վկայություններ է բերում պատմությունից)։ Սրանց հետևանքով հայ ազնվականության մեջ առաջ եկավ քաղաքական հունասեր տրամադրություն, որ իր արտահայտությունն ունեցավ նաև Հայոց մատենագրության մեջ. «ուստի և իններորդ դարի հենց երկրորդ կեսում միանգամայն հասկանալի է Խորենացու հունասիրությունը և նրա հարգանքն ու սերը դեպի հունական կրթությունը և ուսումը» (էջ 145—8)

Գալով այն հանգամանքին, որ Խորենացու պատմության մեջ ոչ մի հետք, ոչ մի ակնարկ չկա կրոնական դավանական այն տարաձայնությունների և վեճերի մասին, որոնք մշտական առիթ էին հակաքաղկեդոնական հայերի և քաղկեդոնական հույների մոլեռանդ ու անհաշտ թշնամության՝ ակադ. Մանանդյանը Խորենացու այս օտարոտի լռությունը բացատրում է նրանով, որ այն ժամանակ Հունաց և Հայոց միջև բանակցություններ էին սկսվել կրոնական նախկին միությունը վերականգնելու համար, ուստի և Խորենացին զգուշանում է դավանաբանական վեճերի մասին որևէ արտահայտություն անելուց (148—9)։

Սկսենք վերջին կետից։ Կրոնական միություն ստեղծելու (խոսքն այն մասին է, որ Հայերն ընդունեն քաղկեդոնական դավանաբանությունը) բանակցությունները վարվում էին 864—867 թվականների միջոցում, իշխանաց իշխան Աշոտի մասնակցությամբ, մինչև Փոտ պատրիարքի գահընկեց լինելը 867 թվին (Օրմանյան, Ազգապատում, էջ 974)։ Ուրեմն, ըստ ակադ. Մանանդյանի, Խորենացին այս ժամանակամիջոցում պետք է գրեր իր Պատմությունը (որ համապատասխանում է Դվինի երկրաշարժի վրա ակնարկության Ողբում ըստ ակադ. Մանանդյանի)։ Բայց այս ժամանակ հայ ազնվականության տրամադրությունը

փոխված էր.—մոռացված էին արաբական ավերածությունները, գերված նախարարները վերադարձել էին, երկրում տիրում էր անդորրություն, բարեկեցիկ վիճակ. Աշոտն իշխանաց իշխան էր նշանակվում ամիրապետից, խորհրդակցություններ էին կատարվում Աշոտին թագավորեցնելու համար. ազնվականների տրամադրությունը արաբական էր, բոլորովին հակառակ 10—15 տարի և ավելի առաջ տիրող տրամադրության, որը նկատի ունի ակադ. Մանանդյանը, բայց որ հակասում է Պատմությունը գրելու ենթադրված ժամանակի տրամադրության:

Գանք ակադ. Մանանդյանի դիտողությունների քննության:

Հայ պատմագրությունը, 7-րդ դարից սկսած մինչև 10-րդ դարը և ավելի ուշ, երևան է բերում մի ընդհանուր տենդենց,—հունատեցություն՝ այն սիստեմատիկ հալածանքների, բռնությունների, արհամարհանքի, վիրավորանքի համար, որ Հայոց եկեղեցին կրում էր հույների կողմից քաղկեդոնական հարցի պատճառով: Այս հունատեցությունը երբեմն զսպված կերպով է արտահայտվում՝ քաղաքական նկատառումների պատճառով, ինչպես Սեբեոսի, Հովհ. կաթողիկոսի մոտ, և երբեմն դուրս է պոռթկում ուժգնությամբ՝ ինչպես ուրիշ հեղինակների մոտ: 9-րդ դարի երկրորդ կեսում գրող Խորենացին, եթե քաղկեդոնական չէր— և այս բանը ոչ ոք չէ ասում—չէր կարող իր ազգային եկեղեցին հայհոյող ու հալածող հույների դեմ ուրիշ զգացմունք ունենալ՝ քան բուռն ատելություն: Եկեղեցիների միության հարցը, որ արծարծվեց Աշոտի և Փոտ պատրիարքի ժամանակ (864—7), և ոչ մի հետևանք չունեցավ՝ կարող էր, ենթադրենք, զսպել այս ատելության արտահայտությունը, բայց չէր կարող չքացնել այս զգացումը նրա հոգում և, համենայն դեպս, չէր կարող փոխվել մոլեռանդ հունասիրության: Ենթադրենք թե ազնվական դասակարգը քաղաքական հունասեր տրամադրություն ուներ. մի՞թե Խորենացին, այդ ինքնուրույն միտքը, համարձակախոս պատմագիրը, որ չէր քաշվում հին հայ թագավորներին «անբան, թուլամիտ, վայրենի, տխմար» կոչել, որ իր մեկենաս իշխանին հանդիմանում է տհասության և խակության պատճառով, մի՞թե այդ Խորենացին առանց կծու հանդիմանության պիտի թողներ ազնըվական դասակարգի այդ հունասիրությունը քաղաքական շահերի պատճառով, երբ նույն այդ Հույներն ազգային Հայոց եկե-

ղեցուն թշնամի էին և հալածում էին։ Մինչև անգամ թույլ տանք անկարելին. ենթադրենք որ Խորենացին քննում էր ազնվականներին, Աշոտին և այլն, հացկատակի դերում չէր համարձակվում նրանց տրամադրության դեմ գնալ. բայց այս դեպքում նա հույների նկատմամբ պետք է առավելն զսպված լեզու բանեցներ, թեկուզ չափավոր գովեստներ տար նրանց քաղաքական տեսակետից, այսինքն արտահայտեր հունական քաղաքական օրիենտացիա։ Բայց Խորենացու մեջ նկատում ենք բոլորովին այլ բան,— բուռն, խոր, անվերապահ սեր, սեր ոչ թե դեպի հունաց քաղաքականությունը կամ եկեղեցին, այլ դեպի հունական կուլտուրան, գրականությունը, փիլիսոփայությունը, բանաստեղծությունը, առասպելները։ Սար ու ձոր կա ազնվական դասակարգի քաղաքական հունասիրության և Խորենացու հունական կուլտուրայի սիրո միջև։ Ո՛չ, Խորենացու հունասիրությունն 9-րդ դարի կեսում, վաթսունական թվականներին, միանգամայն անհասկանալի է, անբնական։ Դա կլիներ միակ բացառությունը 5—12-րդ դարի հայ գրականության և եկեղեցական պատմության մեջ, կլիներ դավաճանություն Հայոց եկեղեցու ինքնուրույնության։

Խորենացու հունասիրությունը բացատրելու համար պետք է դեն ձգել այդ շրջանը (արաբական ավերածությունների, եկեղեցիների միության մասին բանակցության), ինչպես Ողբի «հովիվը» հասկանալու համար դեն ձգեցինք Ովայեցի Հովհաննես կաթողիկոսին, և նրա արմատները պետք է փնտռենք դարձյալ 5-րդ դարում և հատկապես Խորենացու կենսագրության մեջ, որ կատարելապես բացատրում է այս հունասիրությունը։ Նա երկար ժամանակ ապրում է Ալեքսանդրիայում, հունական կուլտուրայի լավագույն շրջանում, որտեղ շփվում էին իրար հետ Արևելքն ու Արևմուտքը. աշակերտում է նշանավոր մի գիտնականի, որին կոչում է նոր Պղատոն, ուսումնասիրում է ոչ միայն հունարեն լեզուն, հռետորական արվեստը, եկեղեցական գրականությունը, այլև հունաց պատմությունը, փիլիսոփայությունը, դիցաբանությունը, բանաստեղծությունը. տոգորվում է հունական կուլտուրայով, որի արտահայտություններն են, բացի հունասիրությունից, նաև հունաբան լեզուն, գեղարվեստական գրական ճաշակ, լայն աշխարհայացք, մտքի անկախություն, և բնականաբար, իր մասին բարձր գիտակցություն, համեմատած իրեն ժամանակա-

կից ազգայինների հետ։ Խորենացին եզակի հեղինակ է ոչ միայն հունասիրությամբ, այլև այս առանձնահատկություններով, որոնք չէին կարող ստեղծվել հայ միջավայրում, 9-րդ դարի երկրորդ կեսում։ Այդ միջավայրի արդյունքները մեզ հայտնի են,—8-րդ դարի վերջում տափակ Ղևոնդ Երեցը, 10-րդ դարի սկզբներում՝ փքուն ու դատարկ Հովհաննես Պատմագիր կաթողիկոսը։ Այս գաճաճների մեջ կանգնած է հսկա Խորենացին։ Ո՞րտեղից բուսավ այս հսկան,—իհարկե ոչ հայկական հողից, ոչ Մաքենոցաց վանքում, ուր հազիվ թե հունական լեզու սովորեցնեին։ Այսպես ենթադրելը նույն է ասել, թե Սառուցյալ ովկիանոսի մի կղզու վրա բուսել է շքեղ արմավենի։ Կուլտուրայի և գրականության մեջ էլ էվոլյուցիայի օրենքը գործում է անխափան։ 9-րդ դարի երկրորդ կեսում, իբրև հայկական միջավայրի արդյունք, անկարելի է դնել Խորենացուն, բայց բնական է դնել 5-րդ դարում՝ արտասահմանում հունական լայն կրթություն ստացած, «եվրոպականացած» մի հեղինակ, որի այս կրթությունը բազմակողմանի կերպով արտահայտվում է նրա Հայոց Պատմության մեջ։ Նույն այս 5-րդ դարում բնական է դավանաբանական վեճերի բացակայությունը Խորենացու Պատմության մեջ, որովհետև այդ դարում այդպիսի դավանաբանական վեճեր Հայոց և Հունաց մեջ Քաղկեդոնական ժողովի պատճառով դեռ գոյություն չունեին։

Այս խորհրդածություններից հետո այլևս կարիք չեմ զգում կանգ առնել Ն. Մառի դիտողության վրա, որը մեջ է բերում ակադ. Մանանդյանը (էջ 144), մանավանդ որ ասորական աղբյուրներ գործածելու հարցի նկատմամբ, որքան հասկանում եմ, Ն. Մառի ասածները հակասում են միմյանց։

Հաջորդ թեզիսում ակադ. Մանանդյանը ցույց է տալիս, թե «Խորենացու ժամանակ Հայաստանում նշանավոր կենտրոնավայր է եղել «Շիրակաշատ ավան»-ը, իսկ կարևոր ուսումնավայր՝ Գեղարքունի գավառը»: Թեզիսի առաջին մասն ապացուցելու համար նա բերում է հատված Աշխարհացույցի ընդարձակ խմբագրությունից, որտեղ ասված է, թե Ախուրյան գետը «անցանելով յելից կուսէ Մաւրիկոպաւլսի, այսինքն Շիրակաշատ աւանի եւ Մրենայ եւ Երուանդաշատ քաղաքի, իջանէ յԵրասխ», (էջ 149)։

Շիրակաշատի Մավրիկոպոլիս կոչվելուց ակադ. Մանան-

դյանը եզրակացնում է, որ այդ ավանը Խորենացու ժամանակ եղել է նշանավոր կենտրոնավայր, իսկ Շիրակավանը (հին անունով՝ Երազգաւորք) գահանիստ կենտրոն էր դարձել Շիրակի Բագրատունիների, և այնտեղ իշխանաց իշխան Աշոտի ժամանակ գումարվեց ժողով՝ Փոտ պատրիարքի գրությանը պատասխանելու։ Ակադ. Մանանդյանը ենթադրում է, թե Խորենացին, Արտաշատի ու Երվանդաշատի նմանությամբ, «Երազգաւորք—Շիրակաւանն» անվանել է «Շիրակաշատ աւան» և «Մաւրիկոպաւլիս» (էջ 149—151)։

Նախ պետք է դիտել, որ զուր է այստեղ խառնված Խորենացու անունը. Խորենացու Պատմության մեջ «Երազգաւորք», «Շիրակաւան», «Շիրակաշատ» և «Մաւրիկոպաւլիս» անուններից ոչ մեկը չկա։ Առաջին երկուսը պատահում են շատ հեղինակների մոտ, սկսած 7-րդ դարից, իսկ վերջին երկուսը՝ միայն Աշխարհացույցի ընդարձակ խմբագրության մեջ (համառոտը չունի), և հայտնի չէ, թե այդ անուններն Աշխարհացույցի սկզբնագրում կայի՞ն թե ոչ։ Երկրորդ՝ պետք է դիտել, որ «Շիրակաւան-Շիրակաշատ» փոփոխությունը կամայական է. դրանք տարբեր տեղեր են. «Շիրակաւան-Երազգաւորքը» (այժմ Բաշ-Շորագյալ) օդային գծով մոտ 12 կիլոմետր հյուսիս-արևելք է ընկնում Շիրակաշատ-Մաւրիկոպաւլսից, որ մինչև այժմ էլ պահպանել է հին անվան կրճատ ձևը—Մեվրեկ (Ալիշանի «Շիրակ», քարտեզը), կամ Մավրիկ՝ ռուսական քարտեզներում, ուստի «Երազգաւորս-Շիրակավանի» Բագրատունյաց արքունիք լինելուց չէ կարելի ոչ մի հետևություն հանել Շիրակաշատ-Մավրիկոպոլսի նշանավոր կենտրոնավայր լինելու մասին։

Միակ ճիշտ հետևությունն Աշխարհացույցի ցուցումից այս է, թե բուն հայկական Շիրակաշատը հետո կոչվել է Մավրիկոպոլիս, Մորիկ կայսեր անունով կամ նրա պատվին, ոչ առաջ, քան 7-րդ դարի սկիզբը, որից հաջորդ հետևությունը կլինի, որ Աշխարհացույցի ընդարձակ խմբագրությունը կատարված է ոչ առաջ, քան վերոգրյալ ժամանակը։ Շիրակաշատի Մավրիկոպոլիս կոչվելու պատճառը ճիշտ է բացատրում ակադ. Մանանդյանը. դա եղել է սահմանագլխի «կայան և բանակատեղի հունական զորքերի» (հիշենք, որ նույնպիսի պատճառով Կումրին կոչվեց Ալեքսանդրոպոլ)։ Ուրեմն ակադ. Մանանդյանը շփոթել է «Երազ-

գաւառք - Շիրակավանը» «Շիրակաշատ - Մաւրիկապաւլսի» հետ և զուր է մեղադրում Աշխարհացույցի հեղինակին կամ խմբագրողին անունների կամայական խարդախման մեջ։

Թեղխսի երկրորդ մասն ապացուցելու համար ակադ. Մանանդյանը մեջ է բերում Խորենացու Պատմությունից մի կտոր, որտեղ պատմագիրն իր սածին վկայություն է բերում Եվսեբեոս Կեսարացու Եկեղեցական Պատմությունը, «...զոր ետ թարգմանել երանելի վարդապետն մեր Մաշտոց ի հայ լեզու։ Խնդիր արասցես ի Գեղարքունի, ի գաւառին Սիւնեաց...»: Եվսեբեոսի Պատմության մի օրինակ Գեղարքունի գավառում գտնվելը ակադ. Մանանդյանը բավականաչափ ապացույց է համարում հայտնելու, թե Գեղարքունի գավառը Խորենացու ժամանակ եղել է կարևոր ուսումնավայր։ Բայց այս կարծիքը հիմնավորելու համար նա բերում է և այն փաստը, որ Սյունիքում՝ Սոթք գավառում գոյություն է ունեցել անվանի Մաքենոցաց վանքը, որ հիմնովին ավերվել և այրվել է 827 թվին և քիչ հետո վերաշինվել ու պայծառացել, որտեղ ուսել է Մաշտոց կաթողիկոսը, աշակերտելով վանքի վանահայր Ստեփանոսին։ Այս տեղեկությունն էլ հիմք է տալիս ակադ. Մանանդյանին ասելու, թե այս Մաքենոցաց վանքն 9-րդ դարում (ինչու ոչ 7-րդ դարում կամ ավելի կանուխ, այրվելուց առաջ՝ ակադ. Մանանդյանը չի ասում) նշանավոր ուսումնավայր է եղել և ունեցել է անշուշտ մեծ գրադարան (երևի այս գրադարանում է եղել Խորենացու հիշած Եվսեբեոսի Պատմության մի օրինակը)։ Ն. Ակինյանը կարծիք է հայտնել, թե Խորենացու դաստիարակության առաջին շրջանը պետք է ենթադրել այս կողմերը, հավանորեն, «ի Մաքենիս», և ակադ. Մանանդյանը հավանական է գտնում այս ենթադրությունը (էջ 152—3)։

Սրանք բոլորը ենթադրություններ են, ապացույցի կարոտ, և ոչ մի դեպքում չեն կարող ապացույց ծառայել Խորենացու 9-րդ դարում ապրելուն։ Ընդհակառակը, եթե վերը բերված հատվածում կա որևէ տվյալ հեղինակի ժամանակը որոշելու համար՝ նա խոսում է հօգուտ Պատմագրի 5-րդ դարում ապրելուն և Մեսրոպ Մաշտոցի աշակերտ լինելուն, որ, դժբախտաբար, անտես է անում ակադ. Մանանդյանը։ Այդ տվյալը Պատմագրի հաղորդած տեղեկությունն է՝ «...զոր ետ թարգմանել երանելի վարդապետն

մեր Մաշտոց...»: Խորենացին մրտեղից կարող էր իմանալ այս մանրամասնությունը, որը Կորյունը չի հաղորդում, եթե ոչ նույնիսկ Մեսրոպից, իր վարդապետից, կամ այդ գրքի թարգմանիչներից՝ Հովսեփից կամ Եզնիկից, որոնք նրա պատվերով գնացել էին Ասորիք թարգմանություններ անելու։ 9-րդ դարի հեղինակ Խորենացին այս մանրամասնությունը բնավ չէր գիտենա, և եթե նույնիսկ գիտենար և հիշեր՝ նա կասեր «երանելին Մաշտոց», «երանելի վարդապետն Մաշտոց», բայց ոչ թե վարդապետն մեր։

Եթե Խորենացին Եվսեբեոսի Պատմության տեղը համարեր Մաքենոցաց վանքը՝ ուղղակի այս վանքի անունը կտար և ոչ թե իր մեկենասին կառաջարկեր խույզ ու խնդիր լինել Գեղարքունի գավառում, որից դուրս էին գտնվում Մաքենիս գյուղն ու Մաքենոցաց վանքը։ (Գեղարքունի գավառին մենք հետո կվերադառնանք մի այլ հարցի առիթով)։

Հաջորդ թեզիսում ակադ. Մանանդյանն իր կառուցվածքի երկրորդ սյունն է դնում՝ Հայոց Պատմության գրության ժամանակի հետնագույն սահմանը որոշելու համար։ Նա ասում է. «Խորենացին, հաւանորեն, այն «Մովսես քերթող»-ն է, որը Զաքարիա կաթողիկոսի հետ միասին գրել է «Ի փոխումն Աստուածամաւրն եւ պատկերի նորին» ճառը» (էջ 155):

Այս ճառն ակադ. Մանանդյանը չի տեսել։ Սրա մասին նա այսքան տեղեկություն ունի, թե Երուսաղեմի մատենադարանի թիվ 413 ձեռագրում գտնվում է «Զաքարիա կաթողիկոսի եւ Մովսեսի քերթողի ի փոխումն Աստուածամաւրն եւ պատկերի նորին» ճառը։ Այս Մովսես քերթողը, ակադ. Մանանդյանի կարծիքով, հավանորեն հենց հռչակավոր «քերթողահայր» Մովսես Խորենացին է, «որի Պատմությունը հորինված է, ինչպես վերև տեսանք, նույն այս ժամանակաշրջանում՝ Բուղայի արշավանքից հետո» (էջ 155)։

Իսկ մենք վերը տեսանք, որ Հայոց Պատմությունը չէր կարող հորինված լինել Զաքարիա կաթողիկոսի ժամանաշրջանում (855—875)՝ Բուղայի արշավանքից հետո։ Ուրեմն Մովսես քերթողի և Մովսես Խորենացու ժամանակակցությունը, ուրեմն և նույնությունը, ինքնին տապալվում են։

Բայց շարունակենք։ Խորենացու երկերի ժողովածուի մեջ (Վենետիկ, 1865) կա նաև մի գրվածք, հետևյալ ընդարձակ վեր-

նագրով — «Պատասխանի Թղթոյն Սահակայ, յորում և բանք մարգարէականք եւ վասն փոխման Աստուածածնին թէ որպէս եղեւ կամ որպէս շնորհեցաւ անարատ տիպ պատկերին ի փայտն և թէ յո՞յր ձեռն և զի՞նչ եղև պատճառք խնդրոյն կամ թէ յումմէ՛ բերաւ ի Հայս»։ Այս գրվածքը, որ մարգարեության ձևով պարունակում է տեղեկություններ Արծրունիների և Բագրատունիների թագավորության մասին՝ 10-րդ դարի գրական կեղծիք է, վերագրված Մովսես Խորենացուն, սրա բարձր հեղինակությամբ վավերականություն ընծայելու համար գրվածքին։ Կեղծիքն իբրև Խորենացու գործ ընծայելու համար՝ անհամ կերպով բազմաթիվ ֆրազներ ու արտահայտություններ են մուծված նրա մեջ Խորենացու Պատմությունից։ Այս գրվածքի կեղծիք լինելը ճանաչված է բանասիրության կողմից, և ակադ. Մանանդյանն այս չէ հերքում։ Ի՞նչ կապ կա Զաքարիա—Մովսեսի ճառի և Կեղծ-Խորենացու գրվածքի միջև — չգիտենք, քանի որ առաջինը մեզ ծանոթ չէ։ Ակադ. Մանանդյանն իրավացի է նկատում, որ այդ խնդիրը վերջնականապես լուծելու համար անհրաժեշտ է համեմատել այս երկու գրվածքները, որ դեռ կատարված չէ. այնու ամենայնիվ նա միանգամայն հավանական է համարում, որ Կեղծ-Խորենացու գրվածքում Աստվածածնի պատկերի մասին բերված տեղեկությունները քաղված են, իրոք, Մովսես Քերթողի և Զաքարիայի ճառից։ Այս կամայական ենթադրության մեջ կարևորն այն է, որ ակադ. Մանանդյանը Կեղծ-Մովսեսի գրվածքը համարում է ավելի հետո գրված, Մովսես Քերթողի ճառից քաղվածաբար։

Այս տվյալներից ակադ. Մանանդյանը հանում է հետևյալ եզրակացությունը.

«Եթե Մովսես Խորենացին և «Մովսես Քերթող»-ն ապրել են միևնույն ժամանակաշրջանում (1), երկուսն էլ ականավոր քերթողներ են (2), երկուսն էլ Մովսես են (3), երկուսն էլ ունեն գրվածքներ Հոգյաց վանքում գտնվող Աստվածածնի պատկերի մասին (4) — ավելի քան հավանական է, ըստ իս, որ նրանք պետք է լինեն միևնույն անձը» (էջ 157)։

Այս չորս կետերից միակ ճշմարիտը երրորդն է — «երկուսն էլ Մովսես են»։ Բայց Մովսեսներ շատ կան մեր հին ու նոր գրականության մեջ, և միայն անվան նույնությունից չէ կարելի նույնացնել անձերը։ Մյուս կետերն անհիմն են և անընդունելի։

Արդարև, Մովսես Խորենացու ապրելը Զաքարիա կաթողիկոսի ժամանակաշրջանում այն հիմնական կետն է, որն ապացուցելուն նվիրված է ակադ. Մանանդյանի այս երկասիրությունը։ Ուրեմն տրամաբանորեն սխալ է ապացուցելին ընդունել իբրև ապացույց՝ մի ուրիշ բան ապացուցելու համար։ Խորենացու և Մովսես քերթողի ժամանակակցության հիման վրա կարելի կլիներ հավանական ենթադրություն անել (բայց ոչ թե եզրակացնել) այդ երկու անձերի նույնության մասին՝ եթե այդ ժամանակակցությունն ապացուցված լիներ. իսկ մենք, քայլ առ քայլ հետևելով ակադ. Մանանդյանի թեզիսներին և մի առ մի նրանց քննելով՝ տեսանք, որ նրանցից ոչ մեկը չէ ապացուցում Խորենացու 9-րդ դարի երկրորդ կեսի հեղինակ լինելը կամ ժամանակակցությունը Զաքարիային։

Երկու Մովսեսին էլ ակադ. Մանանդյանը հորջորջում է իբրև ականավոր քերթողներ։ Որ Մովսես Խորենացին ականավոր քերթող է, քերթողահայր, մեծ վարդապետ, տիեզերահռչակյալ քերթող և այլն՝ այդ գիտեն բոլոր հին մատենագիրները. նույնը խոստովանում են և մեր ժամանակի բոլոր բանասերները, նույն իսկ Խորենացու ամենաոխերիմ հակառակորդները, մեծապես դըրվատելով նրա Պատմությունն իբրև մատենագրական գոհար։ Բայց Մովսես քերթողի ականավոր քերթող լինելը մենք առաջին անգամն ենք լսում ակադ. Մանանդյանից։ Նրա անունը, բացի վերոհիշյալ ճառի վերնագրից և գուցե Պիտոյից գրքի վերջաբանում նշանակվածից՝ ուրիշ տեղ չէ հիշվում, և ոչ մի մատենագիր նրան չգիտե (Մովսես քերթող Սյունյաց եպիսկոպոսն ուրիշ անձ է)։ Այնպես որ նրան, իբրև ականավոր քերթողի, Խորենացու հետ դասակցելու իրավունք չունի ակադ. Մանանդյանը։ Իսկ եթե այս Մովսես քերթողը նույն է Պիտոյից գրքի վերջաբանում նշանակված Մովսես քերթողի հետ՝ այս դեպքում, դատելով վերջաբանի բովանդակությունից, լեզվից ու ոճից՝ մերժելով պիտի մերժենք նրա նույնությունը Մովսես Խորենացու հետ (այս մասին քիչ հետո)։ Վերջապես ակադ. Մանանդյանի հիշած չորրորդ կետը, թե երկուսն էլ ունին գրվածքներ Հոգյաց վանքում գտնվող Աստվածածնի պատկերի մասին, որ պետք է հիմք ծառայեր Մովսես քերթողին և Խորենացուն միևնույն անձն ընդունելու՝ ինքն իրեն տապալվում է, քանի որ, ինչպես տեսանք,

Խորենացուն վերագրված դրվածքը 10-րդ դարի կեղծիք է և, հենց ակադ. Մանանդյանի ենթադրությամբ, քաղվածորեն հորինված պետք է լինի Մովսես քերթողի — Զաքարիայի ճառից. ուրեմն այս դեպքում Խորենացին ոչ մի կապ ու շփում չունի Մովսես քերթողի հետ, և ինքը՝ ակադ. Մանանդյանն ընկնում է հակասության մեջ։

Այսպիսով տեսնում ենք, որ Մովսես քերթողին Խորենացու հետ նույնացնելու օգտին ակադ. Մանանդյանի բերած չորս հիմքերից ոչ մեկը ոչ մի նշանակություն չունի։ Այս տեսակետից ավելի հետաքրքրական է ակադ. Մանանդյանի հաջորդ թեզիսը Պիտոյից գրքի վերջաբանի նկատմամբ, քանի որ Պիտոյից գիրքը, ընդհանրացած կարծիքով, Մովսես Խորենացու թարգմանածն է, իսկ նրա վերջաբանում հիշվում է Մովսես քերթողը՝ «արարող Պիտոյիցս տառի»։ Այս թեզիսն է.

«Պիտոյից գրքի վերջաբանը հավանական է վերագրել Մովսես Խորենացուն» (էջ 158)։ Այս թեզիսում ակադ. Մանանդյանի արտահայտած ու պաշտպանած մտքերը կարելի է ամփոփել հետևյալ կետերում.

1. Պիտոյից գիրքը թարգմանված է 6-րդ դարի առաջին կեսում (էջ 158)։ Ինձ թույլ եմ տալիս նրա այս խոսքը լրացնել — «կամ 5-րդ դարի վերջերում» — հիմնվելով նույն ակադ. Մանանդյանի վրա, որ իր «Հունաբան դպրոցում» առաջին շրջանի (Պիտոյից, Փիլոն, Թրակացու քերականություն և այլ թարգմանությունների ժամանակը որոշում է՝ 6-րդ դարի առաջին կեսը, կամ 5-րդ դարի վերջերը) (տես «Հունաբան դպրոցը», էջ 223)։

2. Պիտոյից գիրքը ենթարկվել է խմբագրությունների, կրել է հավելումներ, որոնցից մեկն է նրա վերջաբանը՝ «Մովսես քերթողի» վերնագրով (էջ 160)։

3. Այս հավելում-վերջաբանը գրված է 9-րդ դարում (էջ 165, 167). Նրա հեղինակն է Մովսես քերթողը, Զաքարիայի աշխատակիցը, որին ակադ. Մանանդյանը նույնացրել է Խորենացու հետ։

4. Պիտոյից գրքի թարգմանությունն անկարելի է վերագրել վերջաբանի հեղինակին, լեզվի և բառապաշարի մեծ տարբերության պատճառով, որ նկատվում է բուն գրքի և վերջաբանի միջև (էջ 162—167)։

5. Խորենացու Հայոց Պատմության և Պիտոյից գրքի միջև սերտ կապ կա թե՛ գրելու ձևի, հռետորական ուղղության և թե՛ բառապաշարի կողմից. երկուսի մեջ էլ անչափ շատ են հազվագյուտ հունական բառեր՝ հունաբան դպրոցի առաջին շրջանից (էջ 159)։

6. «Պիտոյից գիրքը (ոչ վերջաբանը) չէ կարող վերագրվել Խորենացուն, որ, ինչպես տեսանք, ապրել է իններորդ դարում և իր Պատմությունը գրել է Բուղայի արշավանքից հետո» (էջ 158)։

Զանց եմ անում մյուս կետերը -- Թեոդորոս աշակերտի, Մաշտոցի և այլն մասին, որոնք կարևորություն չունեին ներկա հարցի լուծման համար։

Վերոհիշյալ կետերից անպայման ընդունելի են առաջինը, երկրորդը, չորրորդը և հինգերորդը։ Կարելի է հավանական և ընդունելի համարել նաև երրորդը, սակայն մերժելով Մովսես քերթողի նույնացումը Խորենացու հետ, որ, ինչպես տեսանք, ոչ մի հիմք չունի։

Իսկ վեցերորդ կետն անընդունելի է, տրամաբանորեն սխալ պատճառաբանված և մասամբ հակասում է հինգերորդ կետին։ Տրամաբանորեն սխալ է այն պատճառով, որ Պիտոյից գրքի թարգմանությունը Խորենացուն չվերագրելու միակ ապացույց բերվում է այն, որ Խորենացին ապրել է 9-րդ դարում, այսինքն այն, ինչ որ վիճելի, ապացուցելի է։ Հակասական է այն պատճառով, որ ակադ. Մանանդյանը մի կողմից ընդունում է «սերտ կապ» Խորենացու Պատմության և Պիտոյից գրքի միջև, մյուս կողմից անկարելի է համարում Պիտոյից գրքի թարգմանությունը վերագրել վերջաբանի հեղինակ Մովսես քերթողին, և այնու ամենայնիվ այս վերջինին նույնացնում է Հայոց Պատմության հեղինակ Մովսես Խորենացու հետ։

Այսպիսի մի հարց տանք. Խորենացու Հայոց Պատմության և Պիտոյից գրքի միջև լեզվական և մատենագրական սերտ կապ կա։ Պիտոյից գրքի և նրա վերջաբանի միջև այնքան մեծ զանազանություն կա լեզվի և ոճի կողմից, որ անկարելի է միևնույն անձին վերագրել այդ երկու գործը։ Այս դեպքում Խորենացին Պիտոյից գրքի՞ հետ կարող է մի որևէ կապ ունենալ, թե՞ նրա վերջաբանի հետ, կամ թե՝ վերջաբանի հեղինակը, որ, ան-

շուշտ տարբեր է Պիտոյից գրքի թարգմանչից, կարող է հեղինակ լինել Հայոց Պատմության: Անաչառ քննադատը, որ նախապաշարված չէ կանխակալ կարծիքով՝ անշուշտ կպատասխանի. Խորենացին կարող է կապ ունենալ Պիտոյից գրքի հետ, իսկ վերջաբանի հետ չէ կարող կապ ունենալ, վերջաբանի հեղինակը չէ կարող հեղինակ լինել Հայոց Պատմության: Այսպիսի եզրակացությունը բնական և պարտադիր է անաչառ քննողի համար. բայց ակադ. Մանանդյանը, ինչպես տեսանք՝ ճիշտ հակառակն է պնդում, որովհետև «երկուսն էլ Մովսես, երկուսն էլ ականավոր քերթող...» դատողությունը և Խորենացու Ողբի մի մասում Բուղայի արշավանքի արձագանքը կռահելը նրա աչքում ավելի նշանակություն են ունեցել, քան մատենագրական քննության երևան հանած անժխտելի փաստը:

Հետաքրքրական է դարձյալ, որ ակադ. Մանանդյանը մանրամասն բաղդատելով Պիտոյից գրքի վերջաբանը Պիտոյից գրքի ու դասական այլ հեղինակների հետ և ցույց տալով լեզվային մեծամեծ տարբերությունները մեկի և մյուսների միջև՝ աչքաթող է արել ամենակարևորը և վճռականն այս հարցում (այսինքն թե վերջաբանի հեղինակ Մովսես քերթողը և Մովսես Խորենացին նույն անձն են, թե տարբեր անձեր), — վերջաբանը չէ համեմատել Խորենացու Հայոց Պատմության հետ: Այս համեմատությունն անհրաժեշտ էր. նրա միջոցով կարելի կլիներ որոշել՝ արդյոք լեզվային և մատենագրական սերտ կապ կա վերջաբանի և Հայոց Պատմության միջև, որի հիման վրա կարելի լիներ այս երկու գործը միևնույն անձին վերագրել, կամ, որ նույն է՝ Մովսես քերթողին և Մովսես Խորենացուն նույնացնել, թե՞ այդ երկու գրվածքներն այնքան տարբեր են լեզվային և մատենագրական հատկություններով, որ նրանք չեն կարող միևնույն հեղինակի գործ լինել, ինչպես միևնույն հեղինակի գործ չեն Պիտոյից գիրքը և նրա վերջաբանը:

Թե ինչու այս անհրաժեշտ համեմատությունը զանց է արել ակադ. Մանանդյանը՝ ես չեմ կարող ասել: Բայց ինչ որ նա բաց է թողել՝ ուզում եմ ես լրացնել:

Պիտոյից գրքի վերջաբանը, որ Խորենացու մատենագրության մեջ (Վենետիկ, 1865) բռնում է երկու ոչ ամբողջ երես, քաղկացած է ընդամենը 62 տողից: Առաջին հատվածում հեղի-

նակը ցույց է տալիս, որ հռետորական արվեստ սովորածը փայլում է եկեղեցական, հասարակական և դատաստանական բոլոր հանդեսներում, ցանկալի և սիրելի է հանդիսանում իր ազգի և աշակերտների մեջ։ Երկրորդ հատվածում հեղինակը, որ իրեն երկու անգամ կոչում է Մովսես (վարժապետ մակդիրով), հորդորում է իր աշակերտին՝ Թեոդորոսին, որին անվանում է դարձյալ երկու անգամ, հետևել հռետորական արվեստը սովորելու։ Երրորդ հատվածում, հայտնի չէ թե մտքի ինչ լծորդությամբ, պատմում է հին առակը, թե Արամազդը հրամայել էր, որ բոլոր թռչունները մի տեղ հավաքվեին, որպեսզի իրենցից գեղեցկագույնին թռչունների թագավոր ընտրեն։ Ճայը կամ ագռավն ուրիշ թռչունների թափած փետուրներով զարդարվում է ու հռչակվում ամենագեղեցիկը. բայց սագը, մոտ կանգնած լինելով, ճանաչում է նրա վրա իր փետուրն ու պոկում. նրան հետևում են մյուս թռչունները, և յուրաքանչյուրը պոկում է նրա վրայից իր փետուրը. ճայը խայտառակվում է։

Ահա այս հռչակավոր վերջաբանի 62 տողում պատահում են ի միջի այլոց հետևյալ բառերը.

Աստուստ, վերաթեւել, գեղապարել, երգաբանել, պարերգակ, բանապաճոյճ, արհեստապէս, ճարտասանել, իմաստանեմ, հոգեպատում, կրթականութիւն, գուպարք, բենազն, կացուրդք, յոդնախումբ, քահանայազարդ, ազատերամ, երաստ, երանաւէտ, բաբերանել, ներագրել, դատողական, արտադատել, իրախոյզ, նախաթոռ, գեղապանծ, արհեստաւէր, դիտողական, նախադուռն, ենթակայ, հռետորական, հանդիսաւոր, ուշեղագոյն, պարմանի, ներակրթել, երկասիրաբար, վարժապետ, հոգեծաղիկ, վարսագեղ, առադրել, կրթարան, ճարտարագոյն, սաղապել, մէտ, հրատարակող, օդապար, պետաւոր, գեղաղէշ, դիտաւորութիւն, գումարութիւն, ճախրել, համաչուել, թեւահերձ, հոմերամ, լոգարան, հեզասահ, յորդահոսան, ներանձն, բոլորակամ, քատակայէս, գեբապատիւ, տխրերանգ, արտաքաղել, բաղադրել, սեւաթոյր, բիւրակերպ, դիտաւորել, գերապարծ, գիշերաւէր, մերձակաց, պարատեսել, իւրիրան, համանման, ներգոյ, բացադրել, օրէն, հոմաղն, արտահայտել, զրապանծ, անգիտաբար, իւրեանցաաբար, մօտագգաց, իրադիտող, արտուստ, մերկագոյն, ծաղրերաստ, յոքնաղան = 87 բառ, որոնցից 34 բառ (ընդգծվածները) միայն ինքը՝

Մովսես քերթողը կամ առաջին անգամ ինքն է գործածել (այս վերջին բառերից 16-ը ակադ. Մանանդյանը մեջ է բերում իբրև ոսկեդարյան լեզվին և Պիտոյից — Փիլոնյան խմբի թարգմանություններին օտար բառեր, ուրիշ քանի բառ էլ նա նշում է իբրև Բագրատունյաց շրջանի մատենագրական երկերում գործածական ու սովորական բառեր (էջ 164—167)։

Արդ՝ այս 87 բառից, որոնք Մովսես քերթողը գործ է ածել երկու ոչ լրիվ երեսում, 62 տողում, ոչ մեկը չէ պատահում Մովսես Խորենացու ամբողջ Հայոց Պատմության մեջ, 277 նույնադիր երեսներում։ Այս բառերը մասնագիտական չեն, տերմիններ չեն, որոնք կարող են կիրառվել որոշ մասնագիտական գրվածքներում. սրանք սովորական բառեր են, որոնք ամեն մի գրվածքի մեջ էլ կարող են գործածվել, և սակայն Խորենացին չէ գործածել։ Սրանից հետևցնում ենք, որ Խորենացու բառապաշարը խորապես տարբերվում է Մովսես քերթողի բառապաշարից։ Եթե ակադ. Մանանդյանը վերջարանի 36 բառի համեմատությունից եզրակացնում է, թե նրա լեզուն ոսկեդարի և Պիտոյից — Փիլոնյան խմբի լեզու չէ, այլ 9-րդ դարի լեզու՝ ավելի մեծ իրավունքով մենք կարող ենք ասել, հիմնվելով 87 բառի գործածության վրա, թե Մովսես քերթողի լեզուն Խորենացու լեզուն չէ։

Բայց բառերը միայն խոսքի ատաղձն են կազմում։ Երբ մենք դիտում ենք, թե հեղինակն այս ատաղձից ինչպես է խոսք ստեղծում, նրա կառուցվածքի թե առանձին գարդերի և թե ընդհանուր ճարտարապետության մեջ նկատում ենք ահագին, անհաշտելի տարբերություն Մովսես Խորենացուց։

1. Մովսես քերթողը սիրահար է նմանաձայնությունների, արվեստական ջանք է գործ դնում կողք-կողքի շարելու նմանահնչյուն բառեր. օրինակ. «Գեղապարեացեա ընդ երջանիկ պարս պերճացելոցն երգարանել ի պարերգակն ճեմարանի» (պ. և բ. գրերի վրա)։

«Հանդիպելով ի զուպարս բանամարտիցն ըմբերանեացեա հանճարեղ բանիւ զբանիւն պանծայեալսն» (բ, պ)։

«Ի բոլոր ազատերամն երաստից երանաւէտ բարբերանեցիս» (ե, բ)։

«Բաղձալի արհեստաւէր համբակաց, ընդհանուր հռչակելով դիտողական համբաւով» (հ)։

«Ընթակայս իբր հռետորական հանդիսաւորաց, համանգամայն ուշեղագոյն պարմանեացն» (հ)։

Այս բոլորը մի երեսի վրա։ Խորենացուն միանգամայն օտար է նմանաձայնությունների գործածությունը։

Մովսես քերթողը սիրահար է փոխաբերական խոսքերի. նա փոխանակ բուն բառը գործածելու՝ ուրիշ երկու-երեք բառով աշխատում է տալ բուն բառի իմաստը, որով շատ անգամ մութ է մնում խոսքը։ Օրինակ —

«Վեհագոյն վեհիցն պետաւոր», այսինքն Արամազդ։

«Օդապարբ... թեւահերձք», այսինքն՝ թռչուններ։

«Տխրերանգ հաւ», այսինքն՝ ճայ կամ ագռավ։

«Խորամանկ թռչուն գիշերասէր», այսինքն՝ սագ (?) կամ բուէջ։

«Սեւա՛թոյր սարաս», այսինքն՝ սև փետուրներ, և այլն։

Այսպիսի փոխաբերություններ նույնպես օտար են Խորենացուն։

3. Սրանց հակառակ, Խորենացին սիրում է ճարտասանական ուրիշ ձևեր — նմանություն, բաղդատություն, հարցումն, բացագանչություն, բացադարձություն կամ բարառնություն, որոնց միջոցով նրա խոսքը դառնում է պատկերավոր, կենդանի և ազդու (օրինակներն այնքան շատ են և մատչելի, որ ավելորդ եմ համարում մեջ բերել)։ Մովսես քերթողին օտար են այս ճարտասանական ձևերը։

4. Խորենացին այնպես առատ և տեղին է գործածում շաղկապները, որ միանգամայն պարզ ու հասկանալի է դառնում կապը նախադասությունների մեջ, մտքերի հաջորդականությունն այն աստիճան պարզ է դառնում, որ ընթերցողը կարողանում է հետևել հեղինակի մտածողության ընթացքին, ինչպես մի մարդ, որ փեթակի ապակե պատի դրսից դիտում է մեղվի աշխատանքը բջիջի վրա։ Մովսես քերթողը զուրկ է այս միջոցից. վերջաբանի երկու երեսի վրա միայն մի անգամ պատահում է «իսկ» շաղկապը։ Այս պատճառով նրա գրածը մութ է, մտքի հաջորդությունը՝ անորոշ, դժվարհասկանալի։

5. Խորենացու ոճը կենդանի է, շարժուն, թեթև, ազդու և այնքան կանոնավոր, որ չնայելով երբեմն գործածած երկար պարբերական (периодический) արտահայտության, հեշտությամբ

ըմբռնվում է։ Նա աշխատում է հասկանալի լինել և տպավորություն գործել։ Մովսես քերթողի ոճը սրա հակապատկերն է — ծանր, միապաղաղ, անկենդան։ Նա ոչ թե աշխատում է հասկանալի լինել, այլ զարմացնել ընթերցողին իր փքուն ճոռոմաբան լեզվով, ինքնահնար բռնազբոսիկ բառերով, աշխատում է ցույց տալ իր քերթողական արվեստը։ Եթե Խորենացու ոճը նմանեցնենք մի լեռնային ականակիտ վտակի, որ ապառաժոտ հունով արագ հոսում է կարկաչելով և երբեմն քարավեժներ կազմելով՝ ապա Մովսես քերթողի ոճն ու լեզուն պետք է նմանացնենք մի կանգնած ու հոտած ճահճի։

6. Հիշելու է դարձյալ Մովսես քերթողի այս երկու երեսում հաճախ պատահած քերականական անկանոնությունները, որոնց շնորհիվ մի շարք խոսքեր քերականորեն միանգամայն անհասկանալի են մնում, ինչպես և անսովոր «ի ներ անձինդ» (= յանձին քում), «վարժապետիս քովին» (= քումդ վարդապետիս), որոնցից ազատ է Խորենացին ընդհանրապես։

Եթե լեզվի ու ոճի քննությունը կարող է առհասարակ երբև որոշիչ միջոց ճանաչվել երկու գրվածքը մի անձի կամ տարբեր անձերի վերագրելու հարցում՝ ապա մենք հարկադրաբար պետք է ասենք, որ Պիտոյից վերջաբանը և Խորենացու Պատմությունը անշուշտ տարբեր հեղինակների գործեր են, և անկարելի է երկուսն էլ միևնույն անձին վերագրել, նրանց միջև անհաշտելի տարբերություններ կան լեզվի ու ոճի, իբրև հետևանք տարբեր դպրոցների, տարբեր ճաշակի, տարբեր բնավորության և տարբեր ընդունակության։ Մովսես Խորենացին ընտիր ճաշակի տեր է, տաղանդավոր, վառ երևակայությամբ, զգայուն. գրելու արվեստին և հռետորական ձևերին նա տիրապետում է կատարելապես և գործ է ածում վարպետորեն ու հեղինակաբար։ Նա քերթող է այս բառի հին՝ բարձր իմաստով։ Իսկ Մովսես քերթողը զուրկ է ճաշակից, զուրկ է տաղանդից, զուրկ է երևակայությունից ու զգացմունքից։ Նա սովորել է գրելու արհեստը և հռետորական ձևերը, բայց անընդունակ է տեղին գործածելու. նա խոսքի արհեստավոր է, վատ արհեստավոր. նա քերթող է այս բառի այժմյան գծուծ նշանակությամբ։

Մովսես Խորենացուն և Մովսես քերթողին նույնացնել անկարելի է, մատենագրական տեսակետից ուղղակի հանցանք է։

Ակադ. Մանանդյանի վերջին թեզիսն է.—«Հայոց Պատմության» վերնագրում «Մովսես Խորենացի անունը հեղինակի իսկական անունն է»։ Այս թեզիսը ոչ մի կասկած չէ հարուցանում այն բանասերների մեջ, որոնք Մովսես Խորենացուն համարում են 5-րդ դարի հեղինակ և Սահակ-Մեսրոպի աշակերտ։ Բայց այն բանասերները, որոնք Հայոց Պատմությունը համարում են ուշ ժամանակի գործ (8-րդ—9-րդ դարերի), մեծ դժվարության են հանդիպում այդ գործի հեղինակին որոշելու և անվանելու ժամանակ։ Եթե Հայոց Պատմության հեղինակն ուշ ժամանակ է ապրել, բայց կեղծել է իրեն իբրև 5-րդ դարի հեղինակ, ապա ինչպես բացատրել Մովսես Խորենացի անունը։ Երեք միջոց կա սրա համար.

1. Ենթադրել, թե գրքի իսկական հեղինակի անունը մեզ անհայտ է, բայց այդ անծանոթ հեղինակն իր գործը վերագրել է 5-րդ դարում ապրող, Սահակ-Մեսրոպի աշակերտ Մովսես Խորենացուն։ Բայց այս միջոցից խուսափում են հիշյալ բանասերները, որովհետև այս դեպքում բնականաբար հարց կծագեր, թե ով է այդ նշանավոր, իսկական Մովսես Խորենացին, որի անունով Պատմության անհայտ հեղինակը կամեցել է իր գրվածքը հեղինակավոր ու վավերական դարձնել, քանի որ այդպիսի նշանավոր մատենագրի մասին ուրիշ ոչ ոք տեղեկություն չունի, և նրա գրվածքները ոչ ոքի հայտնի չեն։ Դուրս կգար կրկնակի անտեղություն. մի կողմից՝ 5-րդ դարի մի նշանավոր հեղինակ, Մովսես Խորենացի, որի գրվածքներն անհայտ են, իսկ մյուս կողմից՝ 8-րդ—9-րդ դարերում երևան եկած մի նշանավոր մատենագրական երկ, որի հեղինակն անհայտ է։ Շատ հասկանալի է, որ այս դեպքում մենք Հայոց Պատմությունը կվերագրեինք 5-րդ դարի այդ նշանավոր հեղինակին, Մովսես Խորենացուն, իսկ այս եզրակացությունը հակասում է այդ բանասերների կարծիքին, Հայոց Պատմության ուշ ժամանակի գործ լինելու մասին։

2. Ենթադրել, թե Հայոց Պատմության հեղինակը մի այլ անձ է (Ղևոնդ կամ ուրիշ մեկը), իսկ «Մովսես Խորենացի» անունները մտացածին են, այս անունները կրող անձ չէ եղել։ Այսպես էլ վարվում է Ն. Ակինյանը, ենթադրելով, որ Ղևոնդ Երեցը գրել է Հայոց Պատմությունը, իսկ նրա մահից հետո մի այլ մարդ

հնարել է Մովսես Խորենացի անունները (տես վերը, էջ 19)։ Այս ենթադրության անտեղությունն այնքան ակնհայտ է, որ կարիք չկա բացատրության։

3. Ենթադրել, թե Հայոց Պատմության հեղինակն իսկապես կոչվելիս է եղել Մովսես Խորենացի, բայց նա ապրել է ոչ թե 5-րդ դարում, այլ 9-րդ դարում։ Այս միջոցին էլ դիմում է ակադ. Մանանդյանը և նա այլ կերպ չէր էլ կարող վարվել, քանի որ նրա համար պարզ է եղել, որ Աշխարհացույցը և Հայոց Պատմությունը անշուշտ միևնույն հեղինակի գործ են, իսկ Աշխարհացույցի «բոլոր» օրինակներն էլ[1], ինչպես և Հայոց Պատմությունը կրում են Մովսես Խորենացի անունը։ Բայց այս դեպքում ինչպես բացատրել այն մեծ հակասությունը, որ Մովսես Խորենացին այս անունով ապրելով ու գրելով 9-րդ դարում՝ Պատմության մեջ իրեն ձևացնում է Սահակ-Մեսրոպի աշակերտ, ողբում է նրանց մահը, նրանց գերեզմանի վրա ողբ ասելով՝ ողորմելի հառաչում է և այլն։ Ակադ. Մանանդյանն այս հակասությունը բացատրում է նրանով, որ «Խորենացին թեև իր Պատմությունը հորինել է իր սեփական անունով, սակայն հռետորական բարառնության ձևով իր գործը վերագրել է Սահակ-Մեսրոպի աշակերտ համանուն Մովսեսին»․․ «Խորենացու Պատմությունը, որ այժմ մեզ թվում է կեղծված ու խարդախված, ըստ երևույթին, գրված է պատմագրության հռետորական բացառիկ ու հատուկ ձևով, որ կարող էր թերևս հանդուրժելի համարվել Խորենացու ժամանակ» (այսինքն 9-րդ դարում) (էջ 175)։

Թող «բարառնությունները», «դիմառնությունները» և այլն մատենագրական սովորական ձևեր լինեին հռետորական սքոլաստիկայի վերածնության այս շրջանում, 9-րդ և 10-րդ դարերում (էջ 175)․ բայց ակադ. Մանանդյանը պարտավոր էր գոնե մի օրինակ ցույց տալ, թեկուզ հայ, թեկուզ օտարազգի գրականության մեջ՝ բարառնական ձևով գրված այնպիսի մի ընդարձակ աշխատություն, ինչպիսին է Հայոց Պատմությունը։ Այսպիսի բարառնություն, ուրիշ խոսքով ասելով, աշկարա խաբեբայություն, եզակի մի երևույթ է դառնում ինչպես մեր, այնպես էլ ընդհանուր գրականության մեջ։

[1] Ինչպես վերը տեսանք (էջ 24, ծան.), Աշխարհացույցի հնագույն օրինակները Մովսես Խորենացու անունը չեն կրում։

*Թող Հայոց Պատմությունը կեղծված, խարդախված լինի— ձվ է խանգարում մեզ այսպես բնորոշելու այդ գործը, քանի որ մեռած հեղինակը չէ կարող իր անվանարկված պատիվը պաշտպանել, բայց ի՞նչպես կհամարձակվեր Մովսես Խորենացին, որ ապրում էր 9-րդ դարում, որին ամենքը ճանաչում էին, հետը նիստ ու կաց ունեին, գրվածքները կարդում էին, ազգականներին ծանոթ էին, ի՞նչպես կհամարձակվեր նա իր գրքում իրեն ցույց տալ իբրև չորս հարյուր տարի առաջ ապրած մարդ։ Չէ՞ որ նրա սուտն ու խաբեբայությունը բոլոր ժամանակակիցներին հայտնի կդառնար, և նրա Պատմությունը, իբրև կեղծիք, ընդմիշտ կվարկաբեկվեր։ Եվ ի՞նչ նպատակով այդ տաղանդավոր ու լուրջ հեղինակը պետք է դիմեր այսպիսի մի խաբեբայության, կեղծիքի, որ նրան պետք է հարկադրեր՝ Պատմության բոլոր ընթացքում կեղծարարի դեր կատարել այնպես, որ կեղծիքը չբացվի, այն ինչ այդ կեղծիքը պարզ և հայտնի էր ժամանակակիցներին։*

*Ակադ. Մանանդյանի այս վերջին թեզիսն էլ նույնքան ապացուցված է, որքան նրա նախընթաց թեզիսները, և նույնքան համոզիչ, որքան Ն. Ակինյանի՝ Մովսես=Մովսես մարգարե, և Խորենացի=Խորեն անցի բացատրությունը։*

Մ. Խորենացու բառապաշարը: *Ակադ. Մանանդյանն իբրև իր քննության հավելված գրել է մի հետաքրքրական ուսումնասիրություն՝ «Մովսես Խորենացու բառապաշարը» վերնագրով։*

*Ակադ. Մանանդյանն իր «Հունաբան դպրոցը» հմտալից աշխատության մեջ ժամանակագրական երեք շրջան է որոշում այս դպրոցի գործունեության. առաջին շրջանն սկսվում է 5-րդ դարի վերջերից և տևում է մինչև 6-րդ դարի կեսը. երկրորդ շրջանը բռնում է 6-րդ դարի երկրորդ կեսը, իսկ երրորդ շրջանը բռնում է գրեթե ամբողջ 7-րդ դարը։ Արդ՝ քննելով Խորենացու Հայոց Պատմության մեջ գործածված բառամթերքը՝ նա բերում է—*

*100 բառ, որոնք պատահում են հունաբան դպրոցի առաջին շրջանում (էջ 181—190).*

*30 բառ, որոնք բարդված են մասնիկներով հունաբան ոգով (որոնցից 24-ը պատահում են դարձյալ հունաբան դպրոցի առաջին շրջանում) (էջ 194—198)։*

*14 բառ, որոնք պատահում են հունաբան դպրոցի հաջորդ*

երկու շրջաններում (որոնց վրա ավելացնելու է և 6 բարդություն հունաբան ոգով) (էջ 192—194)։

10 բառ, որոնք հունաբան դպրոցի բառամթերքում չեն պատահում, թեպետ հունաբան ոգով են կազմված (էջ 198—9)։

34 բառ, որոնք հունաբան չեն, բայց թվում են նոր, որովհետև պատահում են Է—Թ դարերի երկերում (էջ 199—206)։

Այս բառերի գործածությունը Հայոց Պատմության մեջ իրավունք է տալիս ակադ. Մանանդյանին գալու այսպիսի եզրակացության. «Որ Խորենացու հունաբան լեզուն անկարելի է իջեցնել հինգերորդ դար՝ այդ այնքան պարզ է, որ ըստ իս չէ կարող այլևս լինել վեճի առարկա։ Միանգամայն պարզ է, որ Պատմության բառապաշարի վրա որոշ ազդեցություն են ունեցել, բացի Պիտոյից—Փիլոնյան թարգմանություններից, նաև հունաբան թարգմանությունների մյուս երկու խումբը։ Իսկ ամենից կարևորն այն է, որ նույն այդ բառապաշարի մեջ նկատելի են անգամ ավելի ուշ շրջանի բառեր, որոնք չեն հանդիպում ութերորդ դարից առաջ և սովորական են ու ընդհանուր տարածված Բագրատունյաց շրջանի միջին հայերենում։ Ուրեմն՝ Խորենացու Պատմության լեզվի քննությունը վոչ միայն խոչընդոտ չէ նրա ժամանակի մեր որոշման, այլև ուշագրավ մի նոր ապացույց է, որը հաստատում է իր հերթին Խորենացու առեղծվածի վերոհիշյալ լուծումը» (էջ 207)։

Ես չեմ մտնի առանձին-առանձի բառերի քննության մեջ, որ շատ երկար կլիներ, մանավանդ, որ այդ գործը կատարել են ուրիշները։ Ես ավելի ընդհանուր կերպով կխոսիմ և Խորենացու հունաբան լեզվի հարցը կպարզեմ մի ուրիշ տեսակետից։

Հունաբանությունը, վոր այնքան խոր ազդեցություն ունեցավ մեր լեզվի վրա, ամենամեծ հեղաշրջումն էր, որին ենթարկվեց մեր գրական լեզուն ամենահին ժամանակից մինչև մեր օրերը։ Ե՞րբ և ի՞նչ պայմաններում ծագում առավ այդ հզոր շարժումը, ո՞վ կամ ովքե՞ր էին նրա հեղինակները—սրանք կարևորագույն հարցեր են լեզվի և մատենագրության համար, բայց որոնք շոշափված չեն ակադ. Մանանդյանի «Հունաբան դպրոցը» աշխատության մեջ։ Նա բավականանում է միայն հերքելով Դավիթ Անհաղթի մասին եղած ավանդությունը, բայց իր կողմից որևէ պատասխան չէ տալիս այս հարցերին։ Նա հունաբանու-

թյունը դիտում է իբրև մի տվյալ եղելություն և աշխատում է հունաբան դպրոցի գրական արտադրությունների փոխհարաբերությունը որոշել ժամանակագրական և մատենագրական տեսակետներից։ Հունաբանության ծագումը նա դնում է 6-րդ դարի սկզբներում, կամ 5-րդ դարի վերջերում, հիմնվելով Ղազար Փարպեցու Թղթում հիշատակված փիլիսոփոս Մովսեսի անվան վրա, նկատելով, որ փիլիսոփոս կոչումը տրվում էր հունաբան դպրոցի գրողներին, իսկ թե ո՞վ է այդ փիլիսոփոս Մովսեսը՝ դրանով էլ չէ զբաղվում։ Սա շատ քիչ է կամ ոչինչ է վերը դրված հարցերին պատասխանելու համար։

Բավարար պատասխան վերը դրված հարցերին, որքան ես ծանոթ եմ մեր հին գրականության, մենք կարող ենք գտնել միայն Խորենացու Պատմության մեջ։ Նա պատմում է (Գ., 61), թե երբ Եփեսոսի ժողովից հետո (431) Եզնիկն իր ընկերներով վերադարձան Բյուզանդիոնից և իրենց հետ բերին ս. Գրքի հունարեն մի ընտիր օրինակ, Սահակը և Մեսրոպը, այդ թարգմանիչների օգնությամբ, ձեռնարկեցին մի անգամ (ասորերենից) փութանակի թարգմանվածը նորից հորինել, նորոգել։ Բայց որովհետև, շարունակում է Խորենացին, նրանք հմուտ չէին մեր արվեստին՝ գործը շատ կողմերից թերի էր դուրս գալիս։ Այս պատճառով մեծն Սահակ ու Մեսրոպ մեզ ուղարկեցին Աղեքսանդրիա, «ի լեզու պանծալի, ի ստոյգ յօդանալ ճեմարանին»։ «Մեք» բառը (մերում արուեստի, զմեզ առաքեցին) Խորենացին գործ է ածում ոչ թե իր անձի մասին,—այսպիսի դեպքում նա սովորաբար եզակի ձև է գործածում, այլ մի խումբ ընկերների մասին։

Ողբի մեջ, երբ պատմում է իրենց վերադարձը և հուսահատությունը՝ շատ որոշ կերպով երևում է այս, երբ մեք և ես ձևերը շարունակ փոփոխակի գործ են ածվում («Մինչ նոքա զմերն յուսային դարձ եւ պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւս»... և այլն (տես վերը, էջ 11)։

«Արվեստ» բառը չէ նշանակում հունարենի գիտություն, քանի որ թե՛ Սահակը, թե՛ Մեսրոպը և թե՛ Բյուզանդիոնից իր ընկերներով վերադարձած Եզնիկը լավ գիտեին այդ լեզուն, ինչպես շատ վկայություններ կան։ Արվեստ, կամ ինչպես Ողբի մեջ կոչված է, ամենիմաստ արվեստ, ավելի ընդարձակ նշանակություն ունի,—լեզվի գիտական ուսումնասիրություն, քերակա-

նություն, ճարտասանություն, փիլիսոփայություն, որ հին ոճով կոչվում է քերթողական արվեստ և նոր ոճով՝ ազատական արվեստ, այսինքն այն գիտությունը, որ չէին սովորած Սահակը, Մեսրոպը և Բյուզանդիոնում սովորած թարգմանիչները, որոնք հունարենին հմուտ էին գործնականապես միայն։

Ուրեմն մի խումբ ընդունակ հայ երիտասարդներ ուղևորվում են Ալեքսանդրիա բարձրագույն քերթողական ուսում ստանալու։ Քանի՞ հոգի էին դրանք և ովքե՞ր էին — Խորենացին չէ գրում[1], բայց որ ինքն այդ խմբի մեջ գլխավոր և լավագույն ուժն է եղել՝ երևում է Ողբի մեջ հեղինակի՝ իր մասին ասածներից. «Ո՞վ ուրախասցի ընդ յառաջադիմութիւն աշակերտիս, ո՞վ զհայրականն բարբառեսցի զուարճութիւն, մասամբ ինչ յաղթահարեալ յորդւոյս... մինչ նոքա զմերն յուսային դարձ և պատուասիրել իմով ամենիմաստ արուեստիւս եւ կատարելագոյն յարմարութեամբս»։ Նրանք ուղևորվեցին Եփեսոսի ժողովից հետո, մի երկու տարի անց (մինչև որ թարգմանությունը նորոգելու ձեռնարկեին, համոզվեին, որ գործը թերի է դուրս գալիս), ուրեմն մոտավորապես 432—3 թվականներին։ Գնացողները երևի պետք է լինեին մոտ 20—22 տարեկան հասակում և Հայաստանում անշուշտ գործնականորեն սովորած պետք է լինեին փոքր ի շատե հունարեն։

Ալեքսանդրիայում նրանք լիովին ուսումնասիրում են քերթողական արվեստը, երկար ժամանակ, գիտական և գործնական աշխատանքների ընթացքում, լիովին ընտելանում են հունարեն լեզվին, նրա ոգուն, քերականական և բառակազմական հատկություններին, նախդիրներով կազմված բառերի նրբություններին։ Նրանք տոգորվում են հունարենով, սովորում են հունարեն մտածել և իրենց հունարեն մտածածը հայերեն արտահայտել.—մի հոգեբանական երևույթ, որ միշտ նկատվում է երկար ժամանակ հայրենիքից դուրս ապրող, օտար լեզվի և գրականության մթնոլորտում ուսանող մարդկանց մեջ։ Բնական է, որ այս կրթված ու հայրենասեր գրական գործիչները միտք կհղանային ոչ միայն հայերին էլ մասնակից անել քերթողական արվեստի ուսման,

---

1 Թերևս սրանցից լինեին «Գորգի, Բանան եւ ոմն Դաւիթ», որոնց անունները հիշում է Խորենացին մի ուրիշ առիթով» (Ա., 6)։

հայերենի վերածելով համապատասխան գրքեր, այլև ռեֆորմի ենթարկել հայերեն լեզուն, պատվաստելով նրան մասնիկներով բարդություններ կազմելու հատկությունն ու հունարենի համաձայնության ընտիր ձևերը[1]։

Գրական գործունեության այսպիսի ծրագրով թարգմանիչներն Ալեքսանդրիայից վերադարձան Մեսրոպի մահից հետո, ուրեմն 439-ից հետո, բայց թե երբ՝ հայտնի չէ, գուցե բավական ուշ։

Ահա, բարձրագույն ուսում ստացած, քերթողական արվեստին հմտացած, հունարեն լեզվին ու նրա ոգուն սիրահար, գրական ու ռեֆորմատորական գործունեության եռանդով ոգևորված այս հեղինակավոր խումբն էր, որ հիմնադիր եղավ մեր մեջ հունաբան դպրոցին, որի նախընծա վաստակները երևան կարող էին գալ և եկան 5-րդ դարի 50—80-ական թվականներին[2]։

Սրանց թվին էր պատկանում և նրանց մեջ լավագույն ուժն էր հանդիսանում Մովսես Խորենացին, որ ութսունական թվականների սկզբին գրում էր. «այր ծեր եմ և հիւանդոտ եւ անպարապ ի թարգմանութեանց», ինչ որ միանգամայն արդարանում է վերը բերված ժամանակագրական հաշվով, որովհետև եթե նա 433 թվին 20—22 տարեկան լիներ՝ ապա 483-ին կլիներ 70—72 տարեկան։ Թրակացու Քերականությունը, որ կոչված է Արուեստ Դիոնիսեայ քերականի, Պիտոյից գիրքը, Փիլոնի ճառերը, Հայոց Պատմությունն այս ժամանակաշրջանի գրական արդյունքներ են։

Այս հունաբան դպրոցը, որի հիմնադիրներն ու առաջին գործիչները եղան Ալեքսանդրիայում ուսած վերոհիշյալ թարգմանիչները, երկարատև գոյություն պահպանեց Հայաստանում, 5-րդ դարի կեսերից սկսած մինչև 7-րդ դարի վերջը, և ունեցավ իր աստիճանական զարգացման շրջանները։ (Տե՛ս Հ. Մանանդյան, «Հունաբան դպրոցը», էջ 14, 102, 111, 223 և այլն)։ Սկզբում հունաբանությունը, բառակերտության և քերականական

---

1 Մասնիկների միջոցով բառեր կազմելու հունարենի հատկությունը յուրացրել էր մեզանից առաջ լատիներենը, իսկ մեզանից հետո՝ սլավոներեն—ռուսերենը։

2 Ինչպես շատերից նկատված է՝ Եղիշեն, անտարակույս, օգտվել է Փիլոնից, որ հունաբան դպրոցի առաջին շրջանում է թարգմանված։

հունական ձևերի ու հունական ոճի գործածության նկատմամբ եղել է ավելի չափավոր, այնպես որ առաջին շրջանի հունաբան գրվածքներում նկատվում է ընտիր հայկաբանություն՝ հունաբանությամբ խառն. այնուհետև հունաբանությունն սկսել է հետզհետե ավելի և ավելի խորանալ, այն աստիճան, որ հայերեն գրվածքն այլևս անհասկանալի է դառնում նույնիսկ գրաբար լավ գիտցողին. հարկավոր է լինում նրանց թարգմանությունը տառացի թարգմանել հունարենի և այս հունարենի միջոցով հասկանալ հայերեն թարգմանությունը։ Այս երևույթն էլ բնական է, և սրա օրինակը տեսնում ենք այժմ էլ մեր լեզվում, որի մեջ օտարաբանությունը, և մասնավորապես ռուսաբանությունը, դողդոջուն քայլերով ու զգուշությամբ սկսվելով՝ ներկայումս շատ է զարգացել և երբեմն հասնում է անհասկանալի դառնալու աստիճանի ծայրահեղության։

Հունաբան դպրոցի այս հիմնադիրների և առաջին գործիչների շարքին է պատկանում Մովսես Խորենացին և ոչ թե 9-րդ դարի հունաբան գրողները։ Սրան ապացույց է ծառայում Հայոց Պատմությունն իր լեզվի ու ոճի հատկություններով։

Խորենացու Պատմության լեզվի ընդհանուր նկարագիրն է— ճոխ և ընտիր հայկաբանություն, որի մեջ տեղ-տեղ ցրված են հունաբանության տարրեր, ինչպես կանաչ դաշտի վրա գույնզգույն ծաղիկներ, որոնցով դաշտը զարդարվում ու երփներանգ է դառնում, առանց սակայն ընդհանուր կանաչությունը կորցնելու։ Պատմության այն հատվածները, որոնք զերծ են հունաբան տարրերից—և այսպես է նրա մեծագույն մասը—այնքան ընտիր հայերեն են, դասական հայերենի ոգով, որ դժվար է զանազանել հայկաբանության լավագույն տիպարների լեզվից։ Այս մասերում Խորենացու լեզվի զանազանությունը Եղնիկի լեզվից կայանում է իսկապես նրանց ոճի մեջ; հեղինակների խառնվածքի մեջ։ Եղնիկը խորհուն է և հանդարտ, Խորենացին բանաստեղծ է և աշխույժ, բայց երկուսի էլ լեզվի տարազը, բառերն ու քերականությունը նույնն են։ Այսպիսի լեզու 9-րդ դարում փնտրելը զուր աշխատանք է, իսկ Պիտոյից գրքի վերջաբանի լեզվի հետ նրան նույնացնելը նշանակում է լեզվային հատկությունները որոշելու կարողության բացակայություն։

Խորենացու հունաբանությունը շատ չափավոր է ու ճաշա-

կավոր։ Նա չէ խրտնեցնում ընթերցողին, ընդհակառակը, հեշտությամբ ու հաճությամբ է ընդունվում։ Նրա գործածած հունաբան բարդությունների մեծագույն մասը դեռ այսօր էլ ընդհանուր գործածական են մեր այժմյան գրական լեզվում. իսկ նրա հունաբան շարադասության ձևերը (բացարձակ սեռական, հայցական հոլովով ենթակա անորոշ դերբայի հետ, հայցական սեռի խնդիր կրավորական բայի մոտ, հարաբերականի և հարաբերյալի տեղափոխություն, երկրորդական նախադասությունների տեսակ-տեսակ կրճատումներ և այլն) այնքան սովորական ու ընտել դարձան հաջորդ հեղինակների համար, որ հայերեն քերականության ուսման մեջ մտան, իբրև հայերենի համաձայնության հատկություններ։ Ակադ. Մանանդյանը Հայոց Պատմության մեջ գտել է, ինչպես վերը տեսանք, 154 հունաբան բառեր ու բարդություններ, որոնք ցրված են Պատմության 277 էջերում, այսինքն մի քիչ ավելի, քան երկու էջում մի բառ։ Այնինչ Պիտոյից գրքի վերջաբանը երկու ոչ լրիվ էջում ունի 43 հունաբան բառեր, որոնց թվում հունական ոգով բարդություններ 20 հատ (վերաթևել, հանդիպել, ըմբերանել, ներագրել, արտադատել, համատոհմեայ, ենթակայ, համանգամայն, առադրել, համաչուել, հոմերամ, ներանձն, արտաքաղել, բաղադրել, պարատեսող, համանման, ներգոյ, բացադրել, հոմազն, արտայայտել), ուրեմն մի էջում 22 հունաբան բառ, որոնցից 10-ը հունաբան բարդության նախդիրներով։ Կարելի՞ բան է այս երկու լեզուն հունաբանության կողմից իրար հետ համեմատել, մանավանդ թե նույնացնել։

Խորենացու Պատմության հունաբանությունը հունաբան դպրոցի երկրորդ և երրորդ շրջանի հետ համեմատելն ավելորդ եմ համարում. սրանց մեջ հունաբանությունն այնպիսի ծայրահեղության է հասնում, որ հայ կարդացողի համար անհասկանալի է դառնում—նրանց մեջ ոչ միայն չկա հայկաբանություն, այլև չկա նույնիսկ հայերեն լեզու, այլ կան հայերեն բառեր, մեծ մասը ձուլված հունական կաղապարի մեջ։ Եթե կամենայինք որևէ համեմատություն անել Խորենացու և այս երկու շրջանի հունաբանությունների միջև՝ պետք է ասեինք. Խորենացու հունաբանությունն այնպես է հարաբերում Պիտոյից գրքի վերջաբանի հունաբանության, ինչպես այս վերջինս հարաբերում է հունաբան դպրոցի երկրորդ և երրորդ շրջանի հունաբանության։

Վերջաբանն անհամեմատ ավելի հունաբան է, քան Խորենացու Պատմությունը. երկրորդ և երրորդ շրջանների թարգմանություններն անհամեմատ ավելի հունաբան են, քան Պիտոյից գրքի վերջաբանը։

Խորենացու հունաբանությունը սահմանափակվում է երկու գավառում — բառակազմության մեջ (հունական կաղապարով և մասնիկներով բարդություններ հունական ոգով), և շարադասության մեջ, որոնց մի քանի օրինակը վերը բերի. բայց նա միանգամայն զերծ է հունաբանությունից ստուգաբանական ձևերում, որոնք անխտիր պատահում են հունաբան դպրոցի բոլոր երեք շրջաններում էլ, օրինակ՝ սեռական հոլով ը մասնիկով (մարդոյը, մարդոցը), տրական և ներգոյական հոլովներ ում մասնիկով (ի տեսակում—նենթակայում), ներգոյական հոլով ն, ըն, ներ մասնիկներով (նամանակի, նը մեզ, ըն մարմնի, ի ներ անձինդ). երեք սեռի համար «մի» բառի զանազան գործածություններ (արական եզ, իգական մու, չեզոքական մի), իգական սեռի ցուցական դերանուններ (սա, սէ, սերա, նա, նէ, ներա), անցյալ հարակատարի ձև է նախադիր մասնիկով (կոփել — էկոփել, մեռանել—էմեռանել), կրավորական անցյալ դերբայի անսովոր հոլովում (սիրեցելոց, ասիցելոց, փոխանակ սիրեցելոց, ասացելոց), և զանազան խորթ հոլովական ձևեր — երկնայինց, մի ըստ միոջէց, ի ներ զինչէումն, և այլն։ Ուրեմն, Խորենացու լեզվային հմուտ ճաշակը և առողջ բնազդը թույլ չեն տվել լեզվի օրգանական մասերին և հատկություններին դիպչել, ինչ որ սակայն անխտիր կերպով արել են հունաբան դպրոցի մյուս ներկայացուցիչները։

Վերջապես, ակադ. Մանանդյանի բերած բառացուցակը պերճախոս ապացույց է, որ Խորենացին, իբրև հունաբան մատենագիր, դասվելու է անշուշտ այդ դպրոցի առաջին շրջանի մատենագիրների շարքը։ Արդարև, այն հարյուր բառը, որ հայոց դասական գրաբարի մեջ չեն պատահում՝ ընդհանուր են Խորենացու և առաջին շրջանի թարգմանիչների համար. այն երեսուն հունաբան բառակազմությամբ բառերից նույնպես ընդհանուր են Խորենացու և առաջին շրջանի թարգմանիչների համար քսան և չորսը. այնպես որ այդ երկու խումբ բառերի վերաբերմամբ Խորենացին անպայման դասակից և ժամանակակից է հունաբան դպրոցի առաջին շրջանի թարգմանիչներին։ Այս բանն ավելի

ցայտուն կերպով կերևար, եթե ակադ. Մանանդյանը բերած լիներ այն բազմահարյուրավոր բառերն ու հունաբան բարդությունները հունական դպրոցի երկրորդ և երրորդ շրջաններից, որոնք Խորենացու մոտ չեն պատահում։ Եթե այդ բազմաթիվ և մեծ մասամբ խժդժական բառերի կողքին դնենք այն վեց հունական բարդությունները, որոնք ընդհանուր են Խորենացուն և այս երկու շրջանների թարգմանիչներին՝ չենք կարող ուրիշ կերպ դատել քան այն, որ այդ վեց բարդությունները Խորենացին չէ վերցրել երկրորդ կամ երրորդ շրջանի թարգմանիչներից, այլ ինքը կազմել է անկախաբար. կարծում եմ՝ եթե հունաբան դպրոցի երեք շրջանների մատենագիրներն իրավունք ունեին հազարավոր բառեր ու հունական ոգով բարդություններ կազմել՝ այդպիսի իրավունքից զուրկ չէր և Խորենացին, մանավանդ որ ավելի ևս իրավունք ուներ, լինելով միաժամանակ քաջ հայկաբան ու քաջ հելլենաբան և ունենալով զարգացած ճաշակ ու անկախ միտք։

Այսպիսով, քննելով ակադ. Մանանդյանի բերած բառամթերքը և համեմատելով Խորենացու հունաբանությունը երեք շրջանների հունաբանության հետ՝ ես գալիս եմ բոլորովին հակառակ եզրակացության, այսինքն՝ որ Խորենացու հունաբանությունն անհամեմատ ավելի մոտ է հունաբան դպրոցի առաջին շրջանի հունաբանության, քան հաջորդ երկու շրջանների, և որ Խորենացու հունաբանության չափավորությունն ըստ քանակի և որակի ապացույց է, թե Հայոց Պատմությունը գրված է հունաբանության սկզբնական շրջանում մեր մեջ, այն է՝ 5-րդ դարի վերջերում։

Չեմ ուզում լռությամբ անցնել ակադ. Մանանդյանի ուրիշ երկու դիտողությունների մոտով, որոնցով նա կամենում է ապացուցել Խորենացու կախումը երկրորդ և երրորդ շրջանի գրվածքներից, ուրեմն ուշ ժամանակի հեղինակ է։

Առաջին դիտողությունը վերաբերում է Խորենացու հետևյալ հատվածին. «Ուրեք ուրեք գտեալ աշխատութեամբ, հաւաքեալ փոխեցին ի յոյն լեզու, որպէս զԱ. առ Բ, եւ զԶ եւ զԹ. առ Փ. եւ զԿ առ Ե եւ զՇ առ Թ: Եւ ժողովեալ զայսոսիկ արանց, զորոց եւ մեք զանուանսն հաւաստի գիտեմք՝ նուիրեցին ի փառս Հելլենացւոց աշխարհին». (Ա., 2)։ Այս հանելուկային գրերը մեկնություն են գտնում Սահմանք իմաստասիրության թարգմանու-

կան գրվածքում հետևյալ կերպով. «...զԹուականն Փիւնիկեցիք գտին... զԵրաժշտականն Թրակացիք, իսկ զԱստեղաբաշխականն Քաղդէացիք... իսկ զԵրկրաչափականն Եգիպտացիք» (Սահմ., գլ. ԺԷ)։ Սահմանաց գիրքը, ըստ ակադ. Մանանդյանի հետազոտության, հունաբան դպրոցի երրորդ շրջանում է թարգմանված, ուրեմն 7-րդ դարում. սրանից հետևությունը պարզ է—Խորենացին, որ օգտվում է 7-րդ դարի գրվածքից՝ ավելի ուշ ժամանակի հեղինակ է։

Ես չեմ վիճում, որ Խորենացու մեջ ընդգծված խոսքերի և Սահմանաց գրքից համառոտակի բերված հատվածի միջև կապ կա և որ Սահմանաց գրքի հատվածը կարող է աղբյուր ծառայած լինել Խորենացու հանելուկային տառերին։ Բայց ինձ թվում է, թե այստեղ մենք գործ ունենք մի սովորական ընդմիջարկության հետ։ Խորենացին հանելուկներ չէ գործածում առհասարակ, ընդհակառակը, հանելուկային խոսքերը, այլաբանությունները աշխատում է պարզել, բացատրել (հմմտ. Ի Պարսից առասպելաց երկրորդ գլուխը, հայկական ժողովրդական վեպի առասպելների ճշմարտումը)։ Նա իր մեկենասին այդպիսի հիմար հանելուկ չէր առաջարկի։ Շարադրության կողմից էլ այդ նորագրված խոսքերը շատ հեշտությամբ կարող են նկատվել իբրև ընդմիջարկություն, քանի որ այդ խոսքերը դուրս գցելով՝ շարադրության ընթացքում թերություն չի նկատվի։ Այս ընդմիջարկությունը կատարված է Խորենացու Պատմության հին ձեռագրերից մեկում (մի մարդ այս տառերը գրել է իր օրինակի լուսանցքում. արտագրողը լուսանցքից փոխադրել է բնագրի մեջ) ածանցվել է այն մայր օրինակին (ներկայումս կորած), որից ծագել են մեզ այժմ հայտնի բոլոր ձեռագրերը (տես Խորենացու Պատմության քննական հրատարակության առաջաբանը, հոդվ. 42, էջ Թ)։ Այսպիսի մի ուրիշ ընդմիջարկություն էլ եղել է Պատմության Երրորդ գրքի 53-րդ գլխում. «Երեւութացեալ հոգւոյն աչաց թաթ ձեռին աջոյ գրելով ի վերայ վիմի, Ա, Ե, Է, Ը, Ի, Ո, Ւ, զի որպէս ի ձեան վերջք գծին կուտեալ ունէր քարն»։ Այսպես էլ շատ անգամ տպվել ու թարգմանվել է Խորենացին և բազմաթիվ ենթադրությունների տեղիք տվել։ Այնինչ համեմատությունից դուրս եկավ, որ այդ յոթը ձայնավոր գրերը միայն մի ձեռագիր ունի, իսկ մյուսները չունին, ուստի և իրավապես նրանք դուրս

գծվեցին քննական հրատարակությունից։ Երկու դեպքերի զանազանությունը սրանումն է միայն, որ առաջին ընդմիջարկությունը կատարվել է հին ժամանակ, և այդ ժամանակից ուրիշ ձեռագրեր չունենք համեմատելու և ստուգելու համար, իսկ երկրորդը կատարվել է նոր ժամանակ և ուրիշ ձեռագրերի հիման վրա ուղղագրվում է։

Երկրորդ դիտողությունը վերաբերում է Խորենացու այս խոսքին, թե «առաքինութիւն բանականին է խոհականութիւն» (Ա., 1), որ, ակադ. Մանանդյանի ենթադրությամբ, առնված է, հավանորեն, Արիստոտելին վերագրված «Յաղագս առաքինութեանց» երկի հայերեն թարգմանությունից.— «Նւ է խոհեմութիւն առաքինութիւն բանականին», որ դարձյալ 7-րդ դարի գործ է համարում ակադ. Մանանդյանը։ Ես այստեղ փոխառություն չեմ նկատում։ Այդ խոսքը, որի ընդհանուր իմաստն այն է, թե բանականության արդյունքը կամ արտահայտությունը խոհականությունն է, այնքան տարրական գաղափար է, որ Ալեքսանդրիայում ուսած և հունական փիլիսոփայության ծանոթ անձերի համար մի առած պետք է համարվեր, ինչպես հիմա մեզ համար՝ երկու անգամ երկու=չորս խոսքը, և Խորենացին ինքնուրույն կերպով գործ է ածել այդ հունական առածն իր անփական թարգմանությամբ. նա գործ է ածում «խոհականություն» բառը, որ շատ ավելի ճիշտ է, քան մյուս անհայտ թարգմանչի գործածած «խոհեմություն» բառը։

* * *

Ես կետ առ կետ հետևեցի ակադ. Մանանդյանի բոլոր թեզիսներին ու դիտողություններին, որոնցով նա աշխատել է ապացուցել իր հիմնական միտքը, թե Խորենացու Պատմությունը գրված է 9-րդ դարի երկրորդ կեսում, Բուղայի արշավանքներից հետո։ Իմ քննությունից երևում է, որ ակադ. Մանանդյանի թեզիսներից և դիտողություններից ոչ մեկը, և ոչ բոլորը միասին վերցրած, չեն ապացուցում նրա հիմնական միտքը, ընդհակառակը, նրանցից շատերն ապացուցում են տրամագծորեն հակառակը, այսինքն թե Հայոց Պատմությունը 5-րդ դարի գործ է, գրված Սահակ-Մեսրոպի աշակերտ Մովսես Խորենացու ձեռ-

*քով։ Արտաքուստ ճշմարտանման թվացող խաբուսիկ փաստերը, որ ակադ. Մանանդյանը ճարտարորեն հավաքել ու դասավորել է, կարող են համոզիչ թվալ նրանց, որոնք նրա այս աշխատությունը հարևանցի կարդում անցնում են. բայց երբ մեկն այդ փաստերը մի առ մի և մանրամասն զննում է՝ նրանք դուրս են գալիս ոչ միայն անստույգ և անհավանական, այլև շատ անգամ ուղղակի կռվում են հեղինակի դեմ, բոլորովին այլ եզրակացության են բերում։ Այս պատճառով կարծում եմ, ես լիակատար իրավունք ունեիմ ասելու, թե ակադ. Մանանդյանի ներկա, համենայն դեպս խիստ հետաքրքրական, աշխատության մեջ* խորենացու առեղծվածը լուծված չէ։

# ՀԱՎԵԼՎԱԾ

*Իմ այս գրվածքի սկզբում ես քաղվածորեն բերի Ն. Ակինյանի փաստերն ու տեսակետները (առանց քննելու, որ իմ ծրագրից դուրս էր և որին կարիք էլ չկար), հետո մանրամասն քննեցի ակադ. Մանանդյանի թեզիսներն ու դիտողությունները։ Այս երկու հեղինակների միջև մեծ նմանություն կա — երկուսն էլ անպայման համոզված են, որ Խորենացու Պատմությունն ուշ ժամանակի գործ է, մի գրական կեղծիք, և երկուսն էլ աշխատում են մի հարմար ժամանակաշրջան գտնել մեր պատմության ու գրականության մեջ՝ որտեղ և երբ կարելի լիներ զետեղել Հայոց Պատմությունը և նրա անհայտ՝ ոչ Սահակ-Մեսրոպի աշակերտ հեղինակին։ Մեկն այդ ժամանակաշրջանը որոշում է 9-րդ դարի սկիզբը, մյուսը՝ 9-րդ դարի երկրորդ կեսի սկիզբը։ Երկուսն էլ գործ են դնում ամեն հնարավոր, նույնիսկ բռնազբոսիկ միջոցներ՝ իրենց տեսակետները պաշտպանելու համար։ Բայց երկուսին էլ չի հաջողվում։*

*Այս երևույթը խրատական է, որից պետք է հանել համապատասխան եզրակացություն։ Երկու հեղինակներն էլ, միևնույն տեսակետն ունեցող, երկուսն էլ կատարելապես հմուտ 6—9-րդ դարերի Հայոց պատմության և գրականության, որոնում են այս ժամանակամիջոցում ամենահարմար տեղը՝ Հայոց Պատմությունը տեղավորելու, երկուսն էլ օգտվում են պատմական, աշխարհագրական, մատենագրական և լեզվաբանական աղբյուրների ընձեռած բոլոր զենքերով, ամեն ջանք գործ են դնում իրենց տեսակետը պաշտպանելու, բայց երկուսին էլ չի հաջողվում։ Սա իրավունք է տալիս հետևցնելու, թե այսպիսի ջանքեր, եթե այսուհետև էլ լինին, նույնքան անհաջող կլինին, ինչպես այս երկուսը, և, հետևաբար, Հայոց Պատմությունը և նրա հեղինակ Մովսես Խորենացուն դարձյալ պետք է տանել 5-րդ դարը, ինչպես նրանք*

ճանաչված էին ավելի քան հազար տարի, և որտեղից նրանք, վերջին մի քանի տասնամյակների միակողմանի քննադատության շնորհիվ իջեցվեցին ներքև։ Այս պատճառով ես հարկ եմ համարում վերստին արծարծել այս տեսակետը նոր լուսաբանություններով՝ Խորենացու Պատմության և անձի վերաբերմամբ։

## Ա. ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՀԱՅՈՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ԳՐԵԼ Է ՀԻՆԳԵՐՈՐԴ ԴԱՐՈՒՄ

Այս թեզիսն ապացուցվում է բազմաքանակ և բազմատեսակ փաստերով, որոնք բոլորը նույն կետին են հանգում և դեպքերի կերպով ներքին համերաշխություն ունին։ Այս փաստերը Խորենացու քննադատներն անտես են արել, որովհետև սրանք հակասում են իրենց այն համոզմունքին, թե Հայոց Պատմությունը ոչ թե 5-րդ դարի, այլ ավելի ուշ ժամանակի գործ է։ Բայց մի մատենագիր քննել միայն մի տեսակետից, և աչքաթող անել այդ տեսակետին հակասող փաստերը—սա միակողմանի ուսումնասիրություն է, որի եզրակացությունները, բնականաբար, կարող են սխալ լինել։

Ես պետք է աշխատեմ այստեղ համախմբել այն փաստերը, որոնք խոսում են հօգուտ այն բանի, որ Հայոց Պատմությունը և նրա հեղինակ Մովսես Խորենացին պատկանում են 5-րդ դարին, միևնույն ժամանակ անտես չանելով նոր քննադատության երևան բերած փաստերը, որոնք հակառակ են այս տեսակետին։ Իհարկե, անշնորհակալ գործ է՝ այնքան բազմաթիվ քննադատների կողմից վարկաբեկված, կեղծիք հայտարարված մի գրական երկ պաշտպանելը, ավանդական կարծիքի կողմնակից հանդիսանալը։ Այսպիսի մարդկանց համար պատրաստ են «ավանդապահ», «հնամոլ», «պահպանողական» և նման հորջորջումներ։ Բայց ես չեմ կարող թաքցնել, ինչ որ իմ խորին համոզմունքն է, չեմ կարող ժամանակակից հոսանքին հետևող ձևանալ՝ երբ այդ հոսանքը ես սխալ եմ համարում։

Սկսում եմ Խորենացու կենսագրությունից, որի համար գլխավոր նյութը մատակարարում է ինքը՝ հեղինակը։ Նա պատմում է, ինչպես վերը հիշեցինք, թե երբ Եփեսոսի ժողովից հետո Սահակ կաթողիկոսը Մեսրոպի հետ ձեռնարկեցին ս. Գրքի

փութանակի կատարված թարգմանությունը նորից թարգմանելու կամ նորոգելու հունարեն ընտիր օրինակից՝ գործը շատ կողմերից թերի էր դուրս գալիս, որովհետև նրանք «անգէտք էին մերում արուեստի»։ Ուստի երկու վարդապետները նրան՝ Մովսեսին մի քանի ընկերներով ուղարկեցին Ալեքսանդրիա, «ի լեզուպանծալի, ի ստոյգ յօդանալ ճեմարանին»։ Այնտեղ տարիներ դեգերելով, արվեստներին կատարելապես վարժվելով՝ վերադառնում են Հայաստան, երբ Սահակն ու Մեսրոպն արդեն վախճանված են լինում։ Հայաստանում նա լավ ընդունելություն ու հանգիստ չէ գտնում, ենթարկվում է ծաղրի, արհամարհանքի, վտանգների. նրա ուսած արվեստը, գիտությունները անպետք են ճանաչվում. տգետները նրա դեմ հալածանք են բորբոքեցնում (Բ., 92)։ Թե այնուհետև ինչ է տեղի ունենում, այդ մասին նա չէ գրում. բայց տեսնում ենք, որ վերջը նա Բագրատունյաց Սահակ իշխանի հանձնարարությամբ ձեռնարկում է գրել Հայոց Պատմություն, որի մեջ շատ անգամ ներկայանում է մեզ իբրև հեղինակավոր, բարձր դիրք ունեցող, իր արժեքը և նշանակությունը լավ գիտակցող մի մարդ, ծերության հասակում, «անպարապ ի թարգմանութեանց», որին սիրելի և սովորական են գրական աշխատանքները։

Իհարկե, մենք պարտավոր չենք հալած յուղի տեղ ընդունել՝ ինչ որ Խորենացին ասում է իր մասին և ոչ էլ մերժել առանց համոզիչ պատճառների։ Պետք է Պատմության մեջ կամ Պատմությունից դուրս տվյալներ որոնենք, որոնք կամ արդարացնեին կամ հերքեին այս տեղեկությունները։

Արդ՝ Պատմությունը մեզ մատակարարում է բավականաչափ տվյալներ, որոնք արդարացնում են հիշյալ տեղեկությունները։

Բոլոր քննադատներն անխտիր խոստովանում են Խորենացու բարձր գրական արժանավորությունները, որոնցով նա գերազանցում է բոլոր մյուս հայ պատմագիրներից։ Նա ոչ միայն կատարելապես տիրում է քերթողական արվեստին, որը գործ է ածում մեծ հմտությամբ ու գեղարվեստական ճաշակով, ոչ միայն լիովին գիտե հունարենը, որի հետևողությամբ ստեղծում է բազմաթիվ հայերեն բառեր ու բարդություններ և օգտվում է նրա համաձայնական ձևերից, այլև ծանոթ է հելլենական պատմության, բանաստեղծության, դիցաբանության, փիլիսոփայության,

որոնցից հարկավոր դեպքում օգտվում է։ Նա գիտե Հոմերոսի Իլիականը, հիշում է Եղիական պատերազմը, Տեվտամոսի Պրիամոսին օգնություն ուղարկելը Զարմայրի մասնակցությամբ, գիտե դյուցազն Աքիլլեսին, կաղ ու սրագլուխ Թերսիտեսին. գիտե Ոդիսականը. Տրդատ Բագրատունու շահատակությունը նմանեցնում է Ոդիսևսին, որ կոտորում էր Պենելոպեի սեղեխներին։ Գիտե Հերոդոտոսին, մատնանիշ է լինում նրա չորրորդ գրքի վրա, որտեղ խոսվում է մայր ցամաքի բաժանման մասին (Հերոդոտոս, գիրք Դ., գլ. 40)։ (Սակայն այս հատվածը կա նաև Պրոկոպիոսի մոտ. Խալաթյանց, Армянские Аршакиды, II, էջ 3)։ Գիտե Պղատոնին, որից մի ցիտատ է բերում—«իսկ արդ արդեօք ի՞նչ սիրելւոյ այլ ոք ես, քանզի եւ չէ իսկ ոք» (Պարսից պատապելաց, Բ.), և իր ուսուցչին կոչում է նոր Պղատոն։ Ճանաչում է Սոկրատին, նրա թունավորումը աթենացիների ձեռքով համեմատում է Տրդատի թունավորման հետ նախարարների ձեռքով։ Ծանոթ է Եվհեմերոսի փիլիսոփայության (թեև անունը չի տալիս) և ըստ այնմ մարդկացնում է հին աստվածներին,—Բելին, Հայկին, Շամիրամին, Արային, Վահագնին և այլն։ Հմուտ է հունական դիցաբանության և հաճախ ակնարկություն է անում նրա վրա (Հունաց «պերճ եւ ողորկ ասասպելք», չորս Արամազդի գոյությունը, Հերակլ, Լապիտներ, Կենտավրոսներ, Պերիթես, Պարիֆայե և այլն)։ Գիտե Եզոպոսին, որի վարքից քաղում է տեղեկություն Նեքտանեբոսի և Կրեսոսի ժամանակցության։ Այս հիշատակությունները, որոնք բերվում են պատահական առիթներով, ցույց են տալիս, որ Խորենացին խորապես հմուտ էր հեթանոսական Հունաստանի պատմության, դիցաբանության, փիլիսոփայության և գրականության։ Այս հմտությունը, քերթողական արվեստի հետ միասին, նա կարող էր ձեռք բերել միայն Ալեքսանդրիայում, որտեղ դեռ կենդանի էր հին հունական կուլտուրան, կարող էր հելլենական հին ստեղծագործությունները կարդալ Ալեքսանդրիայի մուզեում, բայց ոչ Բյուզանդիոնում, որ 5-րդ դարի 30—40-ական թվականներին ծփում էր աստվածաբանական վեճերով։ Ժամանակով Խորենացուն մոտ ուրիշ հեղինակներ Հունաստանում ուսած, ինչպես՝ Կորյուն, Եզնիկ, Գյուտ կաթողիկոս, Ղազար Փարպեցի, երևան չեն հանում այսպիսի հմտություն հելլենական գրականության (Եզնիկի «Եղծ Կրոնից

Յունաց իմաստնոցն» ինքնուրույն չէ)։ Ավելացնենք սրա վրա ինչ որ պատմում է Խորենացին Ոլիմպիոդորոս գիտնականի նկատմամբ։ Մի հայ մարդ (Գորգի կամ Բանան կամ Դավիթ) պատմում է հետևյալը. «Ո՛վ ծերեր, երբ ես Հունաստանում իմաստություն էի սովորում, մի անգամ իմաստուն և հմտագույն մարդկանց մեջ խոսակցություն բացվեց աշխարհագրության և ազգերի բաժանման մասին... այս մարդկանցից մեկը, կատարելագույնը, որ կոչվում էր Ոլիմպիոդորոս, հետևյալը պատմեց և այլն (Ա. 6)։ Այս Ոլիմպիոդորոսը, Եգիպտական Թեբայից, հայտնի պատմաբան էր, որ գրել է պատմական մի գրվածք՝ 407—425 թվականների»[1]։ Ուրեմն, մի հայ ուսանող 5-րդ դարի առաջին կեսում լսում է եգիպտացի Ոլիմպիոդորոս պատմագրի ավանդած զրույցը և տարիներ հետո Հայաստանում պատմում է ծերերին, որոնց մեջ է գտնվել և ինքը՝ պատմագիրը։ Սա մի կողմից ապացուցում է Խորենացու ապրելը 5-րդ դարում, մյուս կողմից շատ պատշաճում է Խորենացու տարիքին, որ 5-րդ դարի 80-ական թվականների սկզբին կլիներ շուրջ 70 տարեկան, ինչպես վերը տեսանք։ Տարակույս չկա, որ Ոլիմպիոդորոսի զրույցի մասին պատմությունը չէր կարող գրել 5-րդ դարից հետո ապրող մի այլ պատմագիր։

Մի ուրիշ ապացույց էլ, որ Խորենացին եղել է Ալեքսանդրիայում, գտնում ենք Գ. գրքի 62-րդ գլխում, որտեղ բավական մանրամասն նկարագրում է Եգիպտոսը, Նեղոս գետը և Ալեքսանդրիա քաղաքը. «Մտաք Եգիպտոս, յաշխարհն համբաւատենչ, յանչափից հրաժարեալ ի ցրտոյ եւ ի տօթոյ, ի հեղեղաց եւ յերաշտից, ի գեղեցկութեան մասին երկրի զգիրն ունելով, ամենազան պտղովք լցեալ եւ անձեռագործ պարսպեալ Նեղոսիւ, որ ոչ պահպանութիւն միայն, այլ եւ կերակուր նմա բաւական մատուցանել բնաւորեաց յինքենէ եւ առոգմամբ տէր գոլ պատահեաց եւ չորութեան եւ խոնաւոյ առ երկրին գործաւորութիւն, եւ զանեղան ի նմա դիւրածել գետոյն բերիւք՝ հանգիտակ

---

[1] Ջուր է ակադ. Մանանդյանն այս Ոլիմպիոդորոսին նույնացնում 6-րդ դարի փիլիսոփա Ոլիմպիոդորոսի հետ («Հունաբան դպրոց», էջ 41)։ Այստեղ խոսքն աշխարհագրության և ազգերի բաժանման մասին է. Ոլիմպիոդորոսը հին պատմական զրույցներ է պատմում. ուրեմն նա 5-րդ դարի պատմաբան Ոլիմպիոդորոսն է։

կղզւոյ տառատագիւտս առնէ, շուրջ պարունակելով եւ ընդ ամենայն հոսելով, տրոհմամբ երկոտասանից վտակաց։ Ցորում բարեյարմար մեծն Աղեքսանդրիա է շինեալ քաղաք բարեժամանակ ի մէջ ծովուն, ձեռագործ լիճ կառուցեալ» (կամ ձեռագործ լճի)։

Գր. Խալաթյանը, որ ամենամանրակրկիտ կերպով որոնում է աղբյուրներ, որոնցից կարող էր Խորենացին օգտվել՝ այս ցիտատի մեջ մատնանշել է միայն ընդգծված բառերը (Փիլոնի, Գր. Նազիանզացու և Սուտ Կալլիսթենեսի մոտ գործածված ուրիշ առիթներով և ուրիշ տեղերի մասին)։ Սա նշանակում է, որ Խորենացին վերոհիշյալ նկարագրության և մանրամասնությունների համար աղբյուր չէ ունեցել, այլ գրել է իբրև ականատես: Նույնը կարելի է ասել նաև քրիստոնյա Ալեքսանդրիայի նկարագրության մասին, որ սեփական Խորենացունն է, այնինչ հեթանոս Ալեքսանդրիայի նկարագրությունն առնում է Սուտ Կալլիսթենեսից։

Խորենացու հունասիրությունը, հատկապես նրա բարձր գնահատությունը հելլենական գիտության ու քաղաքակրթության, բնականաբար բղխում են հենց նույն հանգամանքից, այսինքն՝ որ նա երկար ժամանակ ապրել է Ալեքսանդրիայում, զարգացել է հելլենական քաղաքակրթության շրջանում, յուրացրել է այնտեղի և այն ժամանակի գիտությունները, արվեստները և աշխարհայացքը, միտքն ու ճաշակը կրթել է այն միջավայրում, ինչպես այժմ մենք ասում ենք՝ «եվրոպականացել է»։ Նույնպիսի երևույթ ներկայումս էլ հաճախ կարող ենք դիտել այն մարդկանց մեջ, որոնք երկար ժամանակ ապրելով և ուսանելով մի բարձր քաղաքակրթություն ունեցող երկրում կամ շրջանում, հետո վերադառնում են իրենց հետամնաց հայրենիքը՝ աշխատելու և միշտ առիթ են ունենում համեմատելու իրենց աշխարհը լուսավորված աշխարհի հետ, որտեղ նրանք ուսում և կրթություն են ստացել։ Այսպիսի գիտակցական հունասիրություն, հիացմունք հելլենական քաղաքակրթությունից չէ նկատվում և չէ էլ կարող նկատվել մեր գրականության մեջ (բացառությամբ Գրիգոր Մագիստրոսի (11-րդ դար), որ գրեթե հունացած հայ իշխան էր)։ Ընդհանրապես, մեր ամբողջ միջնադարյան գրականությունը, պատմական և կրոնական, 5-րդ դարից հետո, գունավորված է աղոտ կամ բացահայտ հունատեցությամբ՝ կրո-

նական խտրության և Հույների կողմից հայ եկեղեցու դեմ հարուցված հալածանքների պատճառով։

Խորենացու հունաբան լեզուն էլ նույն բանն է ապացուցում և բնական ու հասկանալի է միայն 5-րդ դարի երկրորդ կեսում կամ վերջին քառորդում։ Նա միաժամանակ թե՛ դասական է և թե՛ հունաբան, կազմում է անցման շրջան, հունաբանության սկզբնավորության շրջան, երբ էվոլուցիայի օրենքով, հունաբանությունը պետք է մեղմ ու չափավոր արտահայտություն ունենար։ Նրա լեզվի դասականությունն ապացույց է, որ նա պատկանում է դասական շրջանի մատենագիրներին կամ նրանց անմիջական հաջորդն է, իսկ չափավոր հունաբանությունը նշան է, որ նա մեկն է այդ գրական ուղղության հիմնադիրներից, սկզբնողներից։ Եվ ո՞վ ավելի մեծ իրավունքով և ավելի կշռված համոզմունքով կարող էր ձեռնարկել այսպիսի մի մեծ գրական հեղաշրջման՝ քան նա, որ հոգով սիրահար էր հունական քաղաքակրթության և կատարելապես հմուտ էր թե՛ մայրենի լեզվին և թե հունարենին, ինչպիսին էր Ալեքսանդրիայում ուսած Մովսես Խորենացին։

Դավանաբանական վեճերի բացակայությունը Խորենացու Պատմության մեջ դարձյալ բնորոշում է նրան իբրև 5-րդ դարի գործ, երբ Հունաց և Հայոց եկեղեցիների մեջ տարաձայնություն դեռ չկար Քաղկեդոնի ժողովի պատճառով, և երկու եկեղեցիները դավանաբանորեն մի էին։ Առաջին անգամ Հայոց եկեղեցին իր բացասական վերաբերմունքը դեպի Քաղկեդոնում ընդունված երկաբնակությունն արտահայտեց 6-րդ դարի սկզբներին, 506—8 թ. թ., և այս ժամանակից սկսած՝ հերձված՝ պառակտում է ընկնում երկու եկեղեցիների միջև, շատ խոշոր կրոնական և պատմական հետևանքներով, և այս ժամանակից սկսած Հայոց պատմական և կրոնական գրականության բնորոշ գիծն է կազմում հունատեցությունը։ Բայց մենք շուտով կտեսնենք, որ Խորենացին անմասն չէ դավանաբանական վեճերից, միայն բոլորովին տարբեր հողի վրա,՝— հայ եկեղեցու ծոցում,— և կբացատրենք դրա պատճառը։

Խորենացին Մեսրոպ-Մաշտոցի կենսագրության և գրերի գյուտի պատմության նվիրում է ամբողջ ութ գլուխ (Գիրք Գ., գլ. 47, 52, 53, 54, 57, 58, 60, 67), չհաշվելով Ողբը, ընդհանրա-

պես հետևելով Կորյունին, բայց ավելի բացահայտ, կապակցված և տեղ-տեղ լրացնելով Կորյունի բաց թողածը։ Այսպիսի մանրամասնությունը բնական և հասկանալի է Մեսրոպի անմիջական աշակերտի և ժամանակակցի կողմից, որ ցանկացել է լիակատար կերպով պատմել ու անմահացնել իր սիրած ուսուցչի գործը և որի համար գրերի գյուտը դեռ չէ կորցրել իր թարմությունն ու թողած տպավորությունը ժամանակակիցների վրա։ Հետագա պատմիչներն այն անզուգական անձին և նրա հորինած ազգային այբուբենին հազիվ թե մի քանի տող են նվիրում, չնայելով որ իրենց տրամադրության տակ ունեին թե Կորյունի գրած Վարքը և թե Խորենացու Պատմությունը։ Այս մասում հետաքրքրական է, որ Խորենացին մի այլ տեղ հիշում է Եվսեբեոսի Եկեղեցական Պատմությունը, «... զոր ետ թարգմանել երանելի վարդապետն մեր Մաշտոց ի հայ լեզու» (Բ., 10), «վարդապետն մեր» բնորոշ խոսքերով։ Այս վերջին մանրամասնությունը Կորյունը չունի։ Ավելի նշանավոր է գրերի գյուտի մոմենտի նկարագրությունը— տեսիլքի նման մի երևույթ՝ աջ ձեռքի թաթ, որ գրում էր վեմի վրա, և գրածի հետքը տպավորվում էր։ Կորյունի մոտ այս մոմենտը մութ է և անորոշ—«... որում պարգևէր իսկ վիճակ յամենաշնորհողէն Աստուծոյ հայրական չափուն ծնեալ ծնունդս նորոգ եւ սքանչելի սուրբ աջովն իւրով նշանագիրս հայերէն լեզուին»։ Այս մութ խոսքերից Խորենացին չէր կարող ստեղծել իր նկարագրությունը, չէր կարող և իրենից հնարել, քանի որ նրա նկարագրած պատկերը մի ռեալ իրողություն է, տեսարանական պատրանք—լուսեղեն ռեֆլեքս, որի էությունը սակայն ինքն էլ չգիտեր, այլ երևույթը համարում էր կատարված «ի վերնոցն տուելոց շնորհաց», ինչպես գրում է 53-րդ գլխի վերնագրում։ Միակ հավանական ենթադրությունն է, որ Խորենացին այս նկարագրությունը գրել է հենց Մեսրոպի խոսքերից, երբ նա աշակերտներին պատմելիս է եղել, թե ինչպես տեղի ունեցավ գյուտը, առանց նույնպես գիտենալու, թե իր տեսած աջը և գրերը՝ հենց իր սեփական ձեռքն է եղել և իր գրած գրերը ։ Կորյունը գյուտի այս մանրամասնությունը չգիտե, որովհետև դասակից չէ եղել տարիքով կրտսեր Խորենացուն և Մեսրոպի պատմածին ներկա չէ եղել։

Նույնը պետք է ասել և ս. Սահակի վերաբերմամբ։ Խորե-

նացին նրան նվիրում է ինը գլուխ (Գ., 49, 51, 57, 61, 63, 64, 65, 66, 67), չհաշվելով Ողբը և ուրիշ տեղերում եղած մանր հիշատակությունները։ Սահակի քաղաքական ու տոհմական գործունեության մասին Խորենացին պատմում է այնպիսի մանրամասնություններ, որոնք բացակայում են Ղազար Փարպեցու մոտ և ծանոթ չեն ուրիշ աղբյուրներից։ Մասնավորապես նշելու է Սահակ կաթողիկոսի կատարած դերը Գահնամակը կազմելու գործում (գլ. 51 և 65), որով հասկանալի է դառնում մեր ձեռքը հասած այդ Գահնամակը։ Ս. Սահակի գործունեության, տեղեկությունների ճշտության վերաբերյալ այսպիսի մանրամասնությունը հասկանալի կդառնա այդ կաթողիկոսի աշակերտի և ժամանակակցի համար։ Հետագա հեղինակները շատ կարճ են հիշատակում ս. Սահակի կյանքն ու գործունեությունը, իսկ նրա դերը քաղաքական ու տոհմական հարցերում բոլորովին չեն հիշում։

Ինչպես հայտնի է, Փավստոսի Պատմությունը պարունակում է Հայոց պատմության ժամանակաշրջանը Տրդատի մահից հետո մինչև Հայաստանի երկու մասի բաժանվելը, իսկ Ղազար Փարպեցու Պատմությունը, իբրև Փավստոսի շարունակություն, սկսվում է այս բաժանումից և հասնում է մինչև ս. Սահակի և Մեսրոպի մահը (նրա առաջին դրվագը)։ Խորենացու Պատմության երրորդ գիրքն ընդգրկում է ճիշտ այս երկու շրջանները։ Սակայն եթե նա առաջին մասի համար, մինչև Հայաստանի բաժանումը, որպես աղբյուր ուներ Փավստոսի Պատմությունը, որից ազատորեն օգտվել է, երկրորդի համար այսպիսի աղբյուր չուներ։ Ղազարի Պատմությունը շատ քիչ բան է տալիս այս շրջանի թագավորների, նրանց փոխհարաբերության, նախարարների շարժումների մասին։ Պարսից Շապուհի թագավորության մասին և ոչ մի խոսք չէ ասում, բացի այն, թե նա նշանակվեց Հայաստանի թագավոր, իսկ թե նա Հայաստան ոտք կոխել է, թե ոչ՝ նույնիսկ չի հիշատակում։ Իսկ այս շրջանը Խորենացին նկարագրել է բավական մանրամասն, կենդանի դիպվածներով։ Այս տեղեկությունների համար նա գրավոր աղբյուր չուներ, ուրեմն գրել է իբրև ժամանակակից կամ ժամանակով փոքր ինչ հեռու, ինչպես ինքն էլ ասում է (Գ., 1)։ Եվ նրա ժամանակագրությունն էլ այս մասում (380 թվականից սկսած) ստույգ է, ինչպես

շեշտում է նրա հակառակորդ Ա. Մ. Գարագաշյանը (Քննական Պատ., մասն Գ, էջ 210—11)։

Բերենք և մի այլ բնորոշ օրինակ։ Խորենացին պատմում է (Գ., 60), թե Մեսրոպը և Սահակը Հովսեփին ու Եզնիկ Կողբացուն ուղարկեցին Միջագետք՝ թարգմանություններ անելու, խոստանալով, որ երբ իրենց թարգմանած գրքերը բերեն՝ ապա նրանց նույնպիսի գործով կուղարկեն Բյուզանդիոն։ Բայց նրանք քսու մարդկանցից լուրեր ստանալով, իբրև թե Սահակն ու Մեսրոպը մտադիր են ուրիշներին ուղարկել Բյուզանդիոն՝ առանց ուսուցիչների հրամանն ունենալու, ինքնագլուխ գնում են Բյուզանդիոն։ Նրանց ընկերներն էլ՝ Ղևոնդ և Կորյուն, նրանց նախանձելով՝ իրենք էլ իրենց կամքով գնում են Բյուզանդիոն։ Հետո նույն քաղաքն են հասնում Հովհան և Արձան, որոնք թեպետ ավելի վաղ էին ուղարկված, բայց ճանապարհին երկար անտանեցին, «յուլաբար ուղևորելով եւ ծուլաբար դեգերելով»։ Այս պատմությունը հետաքրքրական է նրանով, որ մասամբ հակառակ է Կորյունի պատմածին և մասամբ նոր է։ Հովսեփի և Եզնիկի մասին Կորյունն ասում է, թե նրանք ուսուցիչների պատվերը կատարելով և թարգմանությունները նրանց ուղարկելով՝ այնուհետև գնացին Բյուզանդիոն։ Ղևոնդի և իր մասին այսքան է հիշում, թե դեպք եղավ գնալ։ Հովսեփի և Արձանի Բյուզանդիոն գնալը բոլորովին չէ հիշում և Արձանին նույնիսկ չգիտե։ Թվում է, թե Խորենացին ավելի ճշմարիտ է (Կորյունն սքողել է ընկերների և իր թերությունները)։ Բայց այսպես թե այնպես՝ Խորենացու փուտ դնելն այս երեք զույգին էլ, նրանց անհնազանդ կամ ծույլ դուրս բերելը կարող է բացատրվել անձնական նկատումով միայն։ Խորենացին ուզում է ցույց տալ, թե բոլոր աշակերտների մեջ ինքն է միայն հնազանդ եղել իր ուսուցիչներին և ուսման մեջ առաջադեմ։ Չնչին մի փաստ, բայց հոգեբանական տեսակետից կարևոր ապացույց, թե Խորենացին աշակերտ է եղել Սահակին ու Մեսրոպին։

Վերջապես, Խորենացու հոռետեսությունը և հուսահատ հոգին հասկանալի և բնական են 5-րդ դարում, մինչև 80-ական թվականների կեսը, Վահանի հաշտություն կնքելը պարսիկների հետ։ Մի կողմից հեղինակը խորին վշտով ողբում է Արշակունյաց թագավորության բարձումը և քահանայապետության դադարումը

Լուսավորչի ցեղից։ Այսպես կվարվեր այնպիսի մի մարդ, որը ժամանակով մոտ է այդ աղետալի անցքերին և անձամբ իր վրա էլ զգում է նրանց հետևանքը։ Մյուս կողմից նա մռայլ գույներով տեսնում է իր հայրենի երկիրը, առանց լավագույն վիճակի հույսի.—այս դրությունն էլ լիովին համապատասխանում է Հայաստանի բարոյալքված վիճակին, երբ անձնական շահի համար հավատուրացությունը սովորական երևույթ էր դարձել, երբ առաքինի մարդիկ արհամարհված էին և ասպարեզից հեռացած, երբ իշխանները, մի-մի ավազակ դարձած, ասպատակում էին ու կողոպտում երկիրը, իսկ Վահան Մամիկոնյանի ստամբակությունը Պարսից դեմ, սակավաթիվ ընկերներով Պարսիկների դեմ վարած անհավասար կռիվը հաջողության ոչ մի հավանականություն չուներ, մինչև մի անակնկալ դիպված,—Պերոզի մահն ու նրա բանակի բնաջինջ կոտորվելը Հեփթաղների կռվում և Վաղարշի թագավորելը 484-ին,—վճռական քաղաքական փոփոխություն առաջ բերին Պարսկաստանում և փրկարար հանդիսացան Վահանի ու Հայաստանի համար։

Բացի այս փաստերից, Հայոց Պատմությունը մատակարարում է մեզ բազմաթիվ կողմնակի նյութեր, որոնց հիման վրա կարող ենք կազմել հեղինակի բնութագիրը, ծանոթանալ նրա հոգեկան հատկություններին, որոշելու համար, արդյոք նա կեղծարա՞ր է, թե իրոք այն է, ինչ որ իր մասին ասում է, խաբեբա՞ է, թե արդարամիտ հեղինակ։ Հիրավի, եթե Հայոց Պատմությունը 5-րդ դարի գործ չէ, այլ ավելի ուշ ժամանակի, այս դեպքում նրա հեղինակը դուրս կգա մի ինքնակոչ կեղծարար և խաբեբա—սա անժխտելի եզրակացություն է։ Բայց Պատմությունը հիմք տալի՞ս է այսպիսի եզրակացություն անելու։

Կեղծարարն ամենից շատ հոգ է տանում, որ իր կեղծիքը չբացվի. նա աշխատում է ծածկվել, չերևալ ընթերցողին, նրա հետ գործ չունենալ։ Հայո՛ց դարձի խմբագրողը միայն առաջաբանում ու վերջաբանում հիշում է իրեն՝ իբրև Հռոմից Հայաստան եկած, Ագաթանգեղոս անունով մեկը, որ իբր թե պատվեր է ստացել Տրդատ Թագավորից՝ գրել Հայոց դարձի պատմությունը, և պատվերը կատարել է։ Այնուհետև, ամբողջ պատմության ընթացքում, ո՛չ Ագաթանգեղոսը և ոչ կեղծարար խմբագրողն այլևս հանդես չեն գալիս—պատմությունն անանուն է։

Այսպես չէ Հայոց Պատմության մեջ. այստեղ հեղինակը միշտ մեր աչքի առաջն է իբրև քննադատող, գովող կամ պարսավող, ուրախացող կամ վշտացող, ընթերցողին հաշիվ տվող. նա, կարծես, պատմագիր չէ, այլ ընթերցողի կողքին նստած զրուցընկեր։ Նրա անհատականությունը, նրա եսը ամեն տեղ զգում է կարդացողը, ենթարկվում է նրա հոգեկան տրամադրությանը։ Հայոց Պատմությունը գրելու առաջարկությունն ստանալով Սահակ Բագրատունուց՝ հայտնում է, թե այս խնդրի միջոցով նրա հոգուն ավելի վաղ ծանոթացավ, քան անձին, որ այդ խնդիրը սիրելի է իր ճաշակին և սովորությանը, գովում է նրան։ Երբ Սահակը խնդրում է գրել Պարսից առասպելների մասին՝ հանդիմանում է նրան, թե ինչ տարօրինակ սեր ունիս այսպիսի փուչ ու սուտ առասպելների. սա պետք է վերագրել քո մանկական հասակին և խակամիտ տհասության։ Սիրող անձը սիրած մարդու համար իր եսը կմոռանա. ահա ես էլ իմ ձեռքով շարադրում եմ այն խոսքերն ու գործերը, որոնք ես ատում եմ և որոնք լսելն իսկ միայն զզվանք է պատճառում։ Սրանք կեղծարարի կեղծիք ու խոսքեր չեն, այլ ռեալ մարդու և ռեալ իրականության արտահայտություն։ Ամբողջ գիրքը լիքն է այնպիսի տեղերով, որոնց մեջ արտահայտվում է հեղինակի անձնավորությունը. բոլորը բերել՝ կնշանակեր մի քանի տասնյակ էջ քաղվածքներ անել. բայց չեմ կարող չհիշել նրա գանգատը Երկրորդ գրքի վերջին գլխում։

Պատմելով Տրդատ թագավորի թունավորումը՝ հեղինակը շարունակում է. «Եւ զի այսքիկ ճշմարիտ այսպէս՝ մխիթարեսցուք մերովք վտանգիւքս եւ մեք. զի եթէ ընդ փայտ գալար զայս արարին, ասէ Քրիստոս, իսկ ընդ չորն զի՞նչ լինիցի։ Արդ եթէ ընդ սուրբս աստուծոյ եւ որք ի թագաւորութենէ զինքեանս նուաստացուցին այս է, զի՞նչ մեր բանս առ Աստուծոյ յաղագս ի ձէնջ վտանգիցս, որոց վտանգք եւ աղքատութիւն սեպհական է։ Այլ սակայն ասացից։ Ո՞վ ոք ի ձէնջ թօշակս յաղագս մեր, ո՞վ ոք վարդապետացն մաղթանս, ո՞վ ոք բան յօժարեցուցանող կամ յորդորական, ո՞վ ոք յերթալս մերում բեռնաբարձս, ո՞վ ոք ի գալն մերում հանդիստ, ո՞վ ոք տուն կամ օթանոց մեզ պատրաստեաց։ Թողից զայլն, զի եւ ոչ զլեզուս չարս եւ զոգխոսութիւն հանդերձ սնոտի փառամոլութեամբ եւ կատաղի լեզուանութեամբ սանձահարեցէք, այլ նիւթ նոցա անմտութեանն զձեր ուսումնա-

տեացդ տալով բարս՝ բորբոքեցէք առաւել քան զհնոցն Բաբելոնին» (Բ., 92)։ Սրանք կեղծարարի խոսքեր ու կեղծիքներ չեն. սրանք աղաղակող բողոք են, վշտահար հոգուց դուրս պոռթկած, որոնք իրենց անկեղծությամբ արճիճի նման ճնշում են ընթերցողի հոգին։

Գանք մյուս հարցին։ Արդյոք Հայոց Պատմության հեղինակը խաբեբա, ստախոս է, արդյոք այն բազմաթիվ տեղեկությունները, որոնք հակասում են իրականության, իր գլխից է հնարել որոշ դիտավորությամբ, թե՞ հետևանք են ուրիշ պատճառների—մեզ անհայտ աղբյուրների, իրար հակասող աղբյուրների սխալ բացատրության, ընդմիջարկության և այլն. ուրիշ խոսքով՝ նա այդպիսի դեպքերում ստո՞ւմ է, թե սխալվում է։ Ինքը՝ հեղինակը հաճախ հավատացնում է, թե աշխատել է միայն ճշմարիտը գրելու, արդարամիտ է, շինծու, անհավաստի պատմություններից զգուշանում է։ Բայց մենք կարող ենք այս հավատացումներին հավատ չընծայել, քանի որ այս տեսակ հավատացումները խաբեբաների սովորական ձևեր են։ Սակայն ուրիշ կերպ պետք է վերաբերվենք նրա բազմաթիվ հայտարարություններին, որտեղ խոստովանում է իր չգիտությունը, կասկած է հայտնում իր գրածի ստուգության մասին, այսինքն վարկաբեկում է ինքն իրեն և իր գրած պատմությունը։ Այսպիսի ինքնաքննադատության մենք հանդիպում ենք նրա Պատմության մեջ քսան և չորս անգամ (Ա. գիրք, գլ. 3, 5, 6, 6, 12, 16, 19, 19, 90, 91։ Բ. գիրք, գլ. 7, 7, 8, 8, 13, 34, 42, 57, 64, 64, 75, 88, Գ. գիրք, գլ. 1, 65)[1]։

Բերենք այս ցուցումներից մի քանիսը։ Վահեի մահը գրելուց հետո շարունակում է. «Յայսմ հետէ մինչեւ ցթագաւորելն Վաղարշակայ ի Հայս ոչ ինչ ճշմարտագոյն ունիմ պատմել քեզ, քանզի շփոթ իմն ամբոխից լեալ՝ այր զայրամբ ելանէին տիրել աշխարհիս» (Ա., 31)։ Ուրեմն մոտ երկու հարյուր տարի ժամանակի մասին հեղինակը ոչինչ չէ պատմում, ասելով թե ճշմարիտ պատմելիք բան չունի։ Սա իհարկե խոշոր պակասություն է նրա Պատմության համար։ Եթե հեղինակը ստախոս, խաբեբա լիներ, ամենայն հեշտությամբ այս երկու հարյուր տարվա ժա-

[1] Բնորոշ է, որ այսպիսի ինքնաքննադատություն միայն երկու անգամ է պատահում Գ. գրքում, այսինքն ժամանակակից Պատմության մեջ։

մանակամիջոցը կլցներ՝ հնարելով մի քանի հատուկ անուններ, նման Ա. 19 և 22 գլուխներում բերված անունների ցանկին, կամ նման Արգարի հայր Արշամին, որ երբեք գոյություն չէ ունեցել։

Պարսից արքունիքում ս. Սահակի արտասանած ճառի բովանդակությունը բերելով ու գրվատելով՝ նկատում է. «Բայց թէ ասիցէ ոք՝ պարտ է մեզ զասացեալն մեծին Սահակայ ի Պարսից հրապարակախօսութեանն գրել՝ գիտասցէ, զի ոչ յումեքէ ի լսելիս մեր հասեալ է բովանդակն ճշմարտութեամբ, եւ ոչ մեք ի պատմութեանս հիւսել հաւանիմք» (Գ., 65)։ Ի՞նչը կխանգարեր ստախոս հեղինակին՝ իրենից այդ ճառը շարադրել, ինչպես շարադրել է բազմաթիվ նամակներ։

Երբ մեկենասը խնդրում է գրել վերջին Տիգրանի հաստատած մանր տոհմերի մասին՝ հեղինակը պատասխանում է. մենք հանվանե չենք պատմում, մասամբ որովհետև մեզ հայտնի չեն, մասամբ խուսափելով աշխատանքից և մասամբ որովհետև նրանցից շատերի անհաստատությունը կասկած է ծագեցնում բոլորի մասին էլ։ Ուստի չենք ճառի վերջին Տիգրանից կարգված ցեղերի մասին, թեկուզ այս մասին շատ անգամ էլ աղաչես, և այլն (Բ., 64)։

Արայեան Արայի հաջորդների մասին պատմելուց առաջ ասում է. կնշանակեմ այս գրքում մեր ազգի ավագագույն մարդկանց և նախնյաց անունները և նրանց մասին եղած զրույցներն ու գործերը, ոչ մի ինքնահնար բան նրա մեջ չմտցնելով, այլ վերցնելով գրքերից, ինչպես և իմաստուն և հմուտ մարդկանց խոսքերից, որոնցից բարեխղճաբար հավաքել ենք։ Եվ հայտնում ենք, որ մենք այս Պատմության մեջ արդարախոս ենք եղել ըստ մեր ուղղամտության և ցանկության. բայց թե ինչպես են այն աղբյուրները, որոնցից հավաքել ենք՝ այդ աստուծուն է հայտնի... այսպես նշանակելով հավաստին կամ փոքր ինչ ճշմարտությունից շեղվելով՝ այնուհետև կսկսեմ, և այլն (Ա., 19)։ Այսպես չէ գրում, այսպես չէ վարվում խաբեբա, ստախոս հեղինակը, որ ամոթ կամ խղճի խայթ չէ զգում իր տգիտությունը քողարկելու համար իրենից անպատիժ կերպով տներ հնարելու։ Այսպես կարող է գրել ու վարվել անկեղծ ճշմարտախոս հեղինակը, որ սկզբունք ունի գրել՝ ինչ որ իրեն հավաստի է թվում, իսկ չգիտցած բանի համար չէ քաշվում ասել՝ չգիտեմ, թեկուզ սրանով ստվեր է ընկնում իր հմտության և պատմության վարկի վրա։

Ամփոփելով վերը գրվածները, գտնում ենք, որ Հայոց Պատմությունը տալիս է բավականաչափ ապացույցներ՝ արդարացնելու Խորենացու իր մասին հաղորդած տեղեկությունները, թե նա Սահակի և Մեսրոպի աշակերտն է, նրանց հրամանով գնացել և ուսել է Ալեքսանդրիայում, ուրեմն և նա 5-րդ դարի հեղինակ է. տալիս է նաև բավական ապացույցներ, որ նա անկեղծ ու արդարախոս հեղինակ է, որի վկայությանն իրավունք չունինք չհավատալու։ Որ նա իր ժամանակակիցներից կրել է նեղություններ, արհամարհանք՝ սրա ապացույցը հետո կբերենք, բացատրելով պատճառները։ Առայժմ դառնանք Պատմությունից դուրս արտաքին աղբյուրների, որոնք հաստատում են Խորենացու անձի և նրա Պատմության վավերականությունը։

Վրաց հին գրականության մեջ պահպանված է մի պատմական գրվածք Հայոց հին Պատմության մասին՝ հետևյալ վերնագրով[1]. «Հայոց թագավորությունը՝ սկսած Նոյի որդուց». [այս տեղեկությունները]՝ գտնված լինելով Պատմոթինի մեջ՝ ներկայացրած են այս գրքում նախար[ար]ական տոհմերի մասին քաղվածքներով հանդերձ»։ Այս գրվածքը անանուն հեղինակի գործ է, 9-րդ դարի երկրորդ կամ առաջին կեսից, ինչպես ցույց է տալիս պրոֆ. Մելիքսեթ-բեկը։

Այս «Պատմոթենից» բերում եմ քաղվածք, զուգահեռաբար դնելով Խորենացու Հայոց Պատմությունից համապատասխան տեղերը։

| Պատմոթին | Մովսես Խորենացի |
| --- | --- |
| Նոյի որդւոց անունները՝ Սեմ, Քամ և Յափետ՝ գտնված են մարաց կամ պարսից լեզվով. թարգմանաբար հետևյալն են՝ Զրուան, Տիտան և Յապետոս[2]։ | «Հաւ ասնելով իմոց բանից... ի Բերոսեանն Սիբիլլայ... Զրուանն եւ Տիտանն եւ Յապետոսթէ լինէին իշխանք երկրի, որ ինձ թուին Սեմ, Քամ եւ Յաբեթ։ (Ա., 6)։ |

---

[1] Բերում եմ պրոֆ. Լ. Մելիքսեթ-Բեկի թարգմանությամբ. նրա «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» հետաքրքրական աշխատությունից, Երևան, 1934, էջ 74։

[2] Պատմոթենի Յապետոս (փոխանակ Յապետոս) ձևը Խորենացու Յապետոսթէի դեմ, ինչպես և Ռփիստի անունը, որ Խորենացու մոտ չկա և Թիրոսի գիրքը ճյուղագրության մեջ՝ շատ հետաքրքրական են Խորենացու այժմյան բնագրի քննության համար, բայց իմ նպատակից դուրս է։ Համենայն դեպս այս ճյուղագրությունն ըստ Խորենացու է և ոչ ըստ ս. Գրքի։

Յափեթը ծնեց Գամերին,
Գամերը ծնեց Ռիփաթին,
Ռիփաթը[1] ծնեց Թիրասին,
Թիրասը ծնեց Թորգոմին (Թորգոմային)
Թորգոմոն ծնեց Հայկին
Սա՝ Արմենեկին.

Արմենեկը՝ Արմայիսին

Սա՝ Ամասիային.
Ամասիան ծնեց Գեղային.
Սա՝ Հարմային.
Հարման ծնեց Արամին.
Արամը ծնեց Արա-գեղեցկին.

Արան ծնեց Անուշավանին.
Սա՝ Պառետին.
Պառետը ծնեց Արբակին[2].
Արբակը ծնեց Զավանին.
Սա՝ Փանասկորին[3].
Փանասկորը՝ Հավանակին.
Սա՝ Վաշտակին.
Վաշտակը՝ Հայկակին։
Հայկակի մասին ասում են, որ նա Բելոքոսի օրոք էր։ Նա առաջ բերեց անմիտ ապստամբություն, որի ժամանակ սպանվեց։ Ապա...
Ամբայկ.
Առնակ.
Շավարշ.
Նուարար.
Վստամ.
Կար.
...Զարմայր[4].

Յաբեթ ծնանի զԳամեր.
Գամեր ծնանի
զԹիրաս[1]
Թիրաս ծնանի զԹորգոմ.

Թորգոմ ծնանի զՀայկ.
Հայկ ծնանի զԱրամանեակ (զԱրմենեակ)
Արամանեակ (Արմենեակ) ծնանի զԱրամայիս.
Արամայիս ծնանի զԱմասիայ.
Ամասիայ ծնանի զԳեղամ.
Գեղամ ծնանի զՀարմայ.
Հարմայ ծնանի զԱրամ.
Արամ ծնանի զԱրայն գեղեցիկ։ (Գ., 5)
Արայեան Արայի որդի Անուշաւան
Պարէտ.
Արբակ.
Զաւան.
Փառնակ. Սուր։
Հաւանակ.
Վաշտակ.
Հայկակ։
Զամանէ ասեն լինել առ Բելոքոսիւ եւ ամբոխս ինչ արարեալ անխորհուրդս եւ մեռանել ի նմին։

Ամպակ.
Առնակ.
Շաւարշ.
Նորայր.
Վստամկար.
Գոռակ, Հրանտ, Ընձաք.

---

[1] Տես 102 էջի [2] ծանոթությունը։

[2] Բնագրում Արշակ. աղավաղությունն առաջ է եկել վրացական Խուցուրի Բ և Շ գրերի շփոթություններ։

[3] Փանասկոր (փոխ Փառնակսոր) առաջ է եկել Փառնակ և Սուր անունների իրար խառնվելուց։

[4] Կարից հետո պակասում են վեց անուն։ Հաջորդ երեք անունը՝ «Սավագնա, Կամպրա Մխուսետա», աղավաղություն է Խորենացու հավածում ցրիվ շարված բառերին, որ վրացի Թարգմանիչը համարել է հատուկ անուններ

Սավագնա.
Կամպրա.
Միուտեվտա, ուղարկվեց եթիոպական զորքի հետ և սպանվեց հելլենական հերոսներից։

Հրաչե.
Փառնեվազ.
Պաճոյճ.
Կոռնակ.
Փառս.
Մյուս Հայկ.
Երվանդ սակավակեաց.
Տիգրան մեծն։

Գզակ. Հօրոյ. Զարմայր.
Սա աւգնական Պրիամու ի Տեւտամայ առաքեալ ընդ եթովպացի զօրուն՝ մեռանի ի բաջացն Հելլենացւոց։ (Ա., 20)։
Պարոյր, որդի Սկայորդւոյ.
Հրաչեայ.
Փառնաւազ.
Պաճոյճ.
Կոռնակ.
Փառոս[3]
Միւս Հայկակ
Երուանդ Սակաւակեաց
Տիգրան։ (Ա., 22)։

Շարունակելն ավելորդ է։ Որևէ թյուրիմացության առաջն առնելու համար պետք է հիշել, որ Սեբեոսի Պատմության (առաջին դպրության) մեջ բերվում են անունները Հայկից սկսած մինչև Շավարշ, որին հաջորդում է Փառնավազ։ Մյուս անուններն ու տեղեկությունները պակասում են։

Անկասկածելի փաստ է ուրեմն, որ 9-րդ դարում վրացերեն լեզվով խմբագրված Պատմոթինի աղբյուրը անշուշտ Խորենացու Հայոց Պատմությունն է. նշանակում է, Հայոց Պատմությունն այնքան հռչակված ու տարածված պետք է լիներ, որ 9-րդ դարում մինչև իսկ Վրաստան հասներ և այստեղ աղբյուր ծառայեր քաղվածօրեն Հայոց պատմություն գրելու։ Այս անհերքելի փաստը միայն բավական է հիմն ի վեր կործանելու ինչպես ակադ. Մանանդյանի, նույնպես և Ն. Ակինյանի կառուցվածքները Հայոց Պատմության 9-րդ դարի գործ լինելու մասին, իրենց բոլոր ապացույցներով։

Նույն 9-րդ դարում մի վրացի հեղինակ, նրանց նշանավոր Արսեն Սափարացի կաթողիկոսը, պատմելով այն մասին, թե

---

և տրոհել է ըստ իր հասկացողության։ Այսինքն՝ հայերեն բնագիրը — առ աւգնական Պր[ի]ամու ի տեւտա [մայ]... դարձրել է Սավագնա Կամպրա Միուտեվտա։ Աղավաղությունը ճանաչել և բացատրել է պրոֆ. Մելիքսեթ-Բեկը (էջ 74)։

[3] «Փառոս» ունին Խորենացու միայն երեք ձեռագիր. մինն էլ ունի Փաւռոս, մյուսները և Հովհ. կաթողիկոս ունին «Փաւռս», որին համապատասխան է և վրացերենը։ Ուրեմն «Փառոս»-ն ուղղելի է «Փաւռս»։

Կոմիտաս կաթողիկոսը Հոհան Մայրագոմեցու հետ ինչ միջոցներով էին կռվում Քաղկեդոնի ժողովի կողմնակիցների դեմ՝ ի միջի այլոց ասում է. [Կոմիտասը] «Մեկնաբանեց հերձվածողական գրությունները Տիմոթեոս Աղեքսանդրացվո, որ Կուզ կոչվեց և Պետրոս Թափիչինը, որը Գայլ կոչվեց» և Սևերոսի և այլ հերձվածողների, և [այս գրությունները] մակագրեց [այնպես], իբրև թե ուղղափառ վարդապետների՝ սուրբ Սահակի և Մովսեսի ճառերն են, և այսպիսի կեղծիքով հավատացրեց ամբողջ երկիրն Հայոց»[1]: Մովսեսի ճառը բարեբախտաբար պահպանվել է, նա տպագրված է առաջին անգամ Ար. Տեր-Միքելյանի ձեռքով, Սամուել Անեցու Հավաքածոյին իբրև հավելված (Վաղարշապատ, 1839, էջ 255—261) և կրում է հետևյալ վերնագիրը. «Երանելոյ մեծի քերթողահօրն Մովսէսի եպիսկոպոսի»: Նույնը տպված է և «Գիրք Թղթոց» ժողովածուի մեջ (Թիֆլիս, 1901, էջ 22—28) և կրում է «Երանելի մեծ քերդողահայրն Մովսէսի Խորենացի եպիսկոպոսի» վերնագիրը: Սրա մեջ «Խորենացի» միջանկյալ է թվում, բայց Խորենացի անվան հիշատակությունը նոր բան չէ ավելացնում, քանի որ քերթողահայր Մովսես ասելով բոլորը հասկանում էին և հասկանում են Խորենացուն:

Այս ճառն ընդհանրապես ճանաչված էր կեղծիք[2]. կեղծման ժամանակը, լեզվից դատելով՝ ակադ. Մանանդյանը որոշում է 6-րդ դարը կամ ամենաուշը 7-րդ դարի սկիզբները[3]: Այս ճառի մասին Արսեն կաթողիկոսի հաղորդած տեղեկությունը միանգամայն հաստատում է այս երկու կետը, այսինքն թե նա կեղծիք է և 7-րդ դարի գործ է, բայց իր կողմից թանգագին նորություն է հաղորդում կեղծողի և կեղծելու դիտավորության մասին: Այս դիտավորությունը քիչ հետո կբացատրենք. այստեղ միայն հարկավոր է նկատի առնել, որ 7-րդ դարի սկզբում այնքան հռչակված և հեղինակավոր էր քերթողահայր Մովսեսի (Խորենացու) անունը, որ կարևոր էին համարում նրա անունով կեղծ ճառ հորինել հայ ժողովրդին խաբելու համար:

Նույն Արսեն կաթողիկոսը մի քիչ հետո պատմում է, թե

---

1 Մելիքսեթ-Բեկ, «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին», էջ 73—74:

2 Տես, ի միջի այլոց, Օրմանյան, Ազգապատում, էջ 50:

3 Հունարեն դպրոցը, էջ 255:

ս. Սահակը, Մաշտոցը, նրանց աշակերտները՝ Ղևոնդ, Հովսեփ մեկնաբանեցին սրբերի գրվածքները, բարի սերմեր ցանեցին հայոց մեջ. բայց հերձվածողները (այսինքն Քաղկեդոնի հակառակորդները) «ատրաշեկ կրակով դիտմամբ խոցեցին նրանց հոգիներն ու անմեղ ժողովրդին, և ինքը՝ Մովսես քերթողը նախազգուշացրեց նրանց կործանումը, բայց հերձվածողները նրան էլ չլսեցին»: (Վրաց աղբյուրները, էջ 40—41):

Այստեղ դարձյալ Մովսես քերթողը (Խորենացին) հանդես է գալիս որպես մեզ լավ հայտնի Սահակին, Մեսրոպին և նրանց աշակերտներ Ղևոնդին ու Հովսեփին ժամանակակից և ակնարկություն է լինում Խորենացու Ողբի վրա:

Խորենացու Պատմության և նրա անձի մասին եղած այս երեք վկայությունները 9-րդ դարի վրացական աղբյուրներից են:

Խորենացու մասին 8-րդ դարից մենք մի պայծառ վկայություն ունենք Հովհան Օձնեցու «Ընդդէմ երևութականաց» ճառի մեջ: Նա ասում է, թե Սուրբ Հոգին մերոնցից [Հայերի միջից] էլ դուրս բերեց լուսավորիչներ՝ առաջին լուսավորչից հետո. «Զերկոսին զնոսա ասեմ սուրբս՝ զՍահակ եւ զՄաշտոց, եւ զամենեսին զընտրեալսն զարբանեակս նոցուն եւ զգործակիցս, զԵզնակ եւ զայլսն, եւ կամ որ ըստ նոցանէ եւ ոչ հեռի ի նոցանէ զմեծն իմաստասիրաց եւ զհռչակեալն ընդ տիեզերս զտէր Մովսէս. որք էին միանգամայն արուեստաւորք, թարգմանիչք եւ ուղղափառք» (Հովհան Իմաստասէր, Վենետիկ, 1833, էջ 66):

Ուրեմն Հովհան Օձնեցի կաթողիկոսը (վախճանված 727-ին) ամենամեծ գովեստներով հիշատակում է մեծ իմաստասեր, հռչակավոր Մովսեսին, ժամանակով ոչ հեռու Սահակից, Մեսրոպից, Եզնիկից, իբրև արվեստավոր (քերթողական արվեստի հմուտ) և թարգմանիչ:

Յոթերորդ դարը հարուստ է վկայություններով Մովսես Խորենացու և նրա Պատմության մասին:

Յոթերորդ դարի վերջերին Անանիա Շիրակացին գրել է մի ժամանակագրություն, որ սկսվում է Ադամից և հասնում է մինչև իր ժամանակը—685 թվականը: Այս ժամանակագրության սկզբում հանվանե հիշված են «Մովսէսի Խորենացւոյ եւ Անդրէասի»: Եւ հիրավի, ժամանակագրության առաջին մասը, Ադամից մինչև Նոյ, բառացի առնված է Խորենացու Պատմությունից: Նույն

որդիներից սկսած մինչև Պարսից Աքեմենյան հարստությունը առնվում է Անդրեասից (Թարգմանություն Հիպպոլիտի Ժամանակագրությունից), իսկ շարունակությունը մինչև 685 թվականը գրել է ինքը՝ Շիրակացին։

Տվյալ գրվածքն այս ձևով հայտնի է եղել Գր. Խալաթյանցին (Армянские Аршакиды, էջ 52—54, նրա մի հին օրինակը կա ՀՍՍՌ Պետ. Ձեռագրատանը, գրված 971 թվին)։ Նա չէ կարողացել հերքել իրողությունը, թե այս աշխատությունը գրել է Շիրակացին և թե նրա մեջ հիշված է Մովսես Խորենացին, որից էլ արտագրված է մի քանի էջ, մի ապացույց, որ տապալում էր նրա հետազոտության ամբողջ կառուցվածքը։ Այս անելանելի դրությունից դուրս գալու համար նա պարզապես հետևյալն է ասում Խորենացու հատվածի մասին.

„Быть может оно впоследствии присоединено к готовому уже сочинению Андреаса, как подходящее к нему вступление“.

Դուրս է գալիս Խալաթյանցի կարծիքով, թե Շիրակացին ժամանակագրությունը գրելիս բաց է թողել սկզբնական ժամանակը և չէ գրել «Մովսէսի Խորենացւոյ և Անդրէասի» վերնագիրը. դարեր անցնելուց հետո մի բարի մարդ լրացրել է նրա թերին և ավելացրել «Մովսէսի Խորենացւոյ» բառերը։

Ահա թե ինչ բռնազբոսիկ միջոցների են ստիպված լինում դիմել այն բանասերները, որոնք Խորենացու Պատմությունը 8—9-րդ դարերի գործ են համարում։

Սեբեոս եպիսկոպոսը 661 թվին իր Պատմության Գ գլխի վերնագրում գրում է. «երկրորդեցից ի պատմագրացն Մովսէսի Խորենացւոյ և Ստեփաննոսի Տարաւնացւոյ, հաւաստի և ճշմարիտ մատենագրաց, զորդի ի հաւրէ ճանաչել», և գլուխն սկսում է Խորենացու Պատմությունից արված քաղվածքով։ Այս բացահայտ վկայությունը, որ ապացուցում է Խորենացու Պատմության գոյությունը 661 թվին, բանասերների կողմից դարձյալ կասկածի ենթարկվեց, որովհետև ընդունում էին, թե այստեղ հիշված Ստեփաննոս Տարաւնացին ոչ այլ ոք է, քան Ստ. Տարաւնացի Ասողիկը, որ գրել է 1004 թվին. սրա վրա հետո ավելացավ և նորագույն կարծիքը, թե Մովսես Խորենացին 8—9-րդ դարերի պատմիչ է։ Ուստի այս ամբողջ գլուխը և նրան հաջորդող երկու գլուխ-

ները (=հին տպագրությունների Բ. դպրությունը) հայտարարվեցին ուշ ժամանակի և անհայտ հեղինակի գործ, որ պատահմամբ ընկել է Սեբեոսի Պատմության սկիզբը։ Բայց հետո ապացուցվեց, որ Ստ. Տարոնեցին Ասողիկը չէ, այլ մի ուրիշ հնագույն պատմիչ, որի անունը բացի այստեղից հիշվում է նաև ուրիշ տեղերում՝ երեք անգամ, և որի գրած ժամանակագրությունից մի հատված գտնվեց ու հրատարակվեց (այս մասին տես Սեբեոսի նոր հրատարակության առաջաբանը, էջ Խ-ԽԴ)։

Նույն Սեբեոսի Պատմության առաջին գլխում, որտեղ նա գրում է ըստ Մար Աբաս Մծուրնացու, մի քանի անգամ գործ է ածված՝ «Բէլն Տիտանեան», «արքայն Տիտանեան», «Տիտանն»։ Նույն հորջորջումը գտնվում է նաև Խորենացու Պատմության մեջ։ Երկու հեղինակներից մեկն անշուշտ օգտվել է մյուսից։ Քննությունն անկասկածելի կերպով ցույց տվեց, թե այս հորջորջման ստեղծողը Խորենացին է և միայն Խորենացին կարող է լինել, իսկ Սեբեոսի Մար Աբաս Մծուրնացին (ուրեմն հետո, մինչև 628 թվականը) օգտվել է Խորենացու Պատմությունից։

Պատմության նույն գլխում (էջ 3) գրված է՝. «չոգաւ բնակեցաւ յերկիրն Արարադայ, ի տանն որ ի լեռնոտինն, որ զառաջինն շինեալ էր Զրուանայ հաւրն՝ և եղբարբքն հանդերձ»։ Քննությունը ցույց տվեց, որ այս անորոշ խոսքերն ու ակնարկությունը քաղված են Խորենացու Ա. գրքի Զ գլխից և միայն Խորենացու Պատմության այս գլխի միջոցով կարելի է հասկանալ Սեբեոսի գրածը։

Նույն Պատմության ԽԳ գլխում (էջ 135) Դվնի եկեղեցական ժողովի դավանաբանական թղթում, որ գրված է 654-ին, կամ 643-ին, կա մի հատված, «Զթէանով ոմն զկին մարդ զաշակերտ Պիւթագորայ հարցեալ եղև, թե յետ քանի աւուր մերձաւորութեան ի կին մարդ արժան է յարքունիս մտանել։ Եւ նա ասէ. «յիւրմէն նոյն աւուրն, յաւտարէն և ոչ բնաւ»։

Քննությունը ցույց տվեց, որ հատվածս առնված է Պիտոյից գրքից, որ բանասիրության ընդհանուր կարծիքով, Մովսես Խորենացու թարգմանությունն է (վերջին երեք ապացույցների մասին մանրամասն տես Սեբեոսի նոր հրատարակությունը, ծան. 8, 9 և 69)։

Ուրեմն Սեբեոսի Պատմությունը պարունակում է չորս վկա-

յություն, որ Խորենացու Պատմությունը (և Պիտոյից գրքի թարգմանությունը) գոյություն են ունեցել 661, 645, 628 թվականներին։

Մի ուրիշ փաստաթուղթ, որով հաստատվում է, թե 7-րդ դարում հայտնի է եղել մի նշանավոր ու հեղինակավոր անձ՝ Մովսես քերթողահայր կամ Մովսես Խորենացի անունով՝ այդ վերը հիշված կեղծ ճառն է, այս հեղինակին վերագրված, որ մտել է Գիրք Թղթոցի մեջ, նրա մասին հետո դեռ կխոսենք։

Վեցերորդ դարը պատմական գրականությունից զուրկ է, ուստի և Խորենացու անվան հիշատակության առիթ ու տեղ չկա։ Այս դարում գրված է եղել Պետրոս Սյունյաց եպիսկոպոսի Պատմությունը, որ մեր ձեռքը չէ հասել։ Նշանակելու է սակայն որ Օրբելյանն իր Պատմության մեջ երեք անգամ առիթ է ունենում Պետրոս Սյունյաց եպիսկոպոս-պատմագրի անունը տալու, և երեք անգամն էլ հիշում է, թե նա եղել է Մովսես Խորենացու աշակերտը, հավանորեն այս տեղեկությունը հանելով Պետրոս եպիսկոպոսի Պատմությունից։ Ժամանակագրորեն այս տեղեկությունը ոչ մի դժվարության չէ հանդիպում։ 5-րդ դարի ութսունական թվականներին ապրող ծերունի Մովսես Խորենացուն կարող էր մանկության օրերում աշակերտ լինել Պետրոս եպիսկոպոսը, որ մատենագրեց 6-րդ դարի առաջին կեսում։

Հինգերորդ դարից մենք ունենք Ղազար Փարպեցու կարևոր վկայությունը Մովսես փիլիսոփոսի վերաբերմամբ։ Իր Թղթի մեջ առ Վահան Մամիկոնյան, իրեն արդարացնելով ստախոս աբեղաների մեղադրանքների դեմ՝ վերջը ասում է. ենթադրենք թե ես մեղավոր եմ և իրավացի եմ կրում իմ պատիժը, բայց ինչու ուրիշ առաքելանման մարդիկ այսպիսի և դեռ սրանցից էլ ավելի նեղություններ հանդիպեցին այս աշխարհում և խստագույն վշտերի մեջ վախճանեցան։

Սրանից հետո թվարկում է հալածանքների ենթարկված մի շարք անձերի անուններ (այստեղ բնագրից մի թուղթ ընկած լինելով՝ շարքը, դժբախտաբար, թերի է մնում)։

Այս անձերի մեջ առաջին տեղում հիշատակում է Մովսես փիլիսոփոսին հետևյալ խոսքերով. «Երանելի փիլիսոփոսն Մովսէս, որ արդարև մինչդեռ էր ի մարմնի՝ ցանկ երկնային զօրացն էր քաղաքակից. ոչ ապաքէն ի տեղւոջէ ի տեղի աբեղեանց Հայոց

հալածական արարին։ Ո՞չ զլուսաւորիչն եւ զտգիտահալած գրեանն նորա առ անգիտութեան փաթաղ-իկէս կոչէին. և այլ բազում ինչ իրօք Թշնամանեալ՝ յետոյ ապա յաղագս այլոց ամօթոյ՝ զխաբէական զեպիսկոպոսութիւնս նման դեղոց մահու արբուցեալ հեղձուցին զսուրբն։ Որոյ ի ժամ վախճանին զինչպիսի անհաւոր նզովս գրով ի վերայ գլխաւորաց քահանայութեանդ ասացեալ է՝ ձեզէն իսկ գիտէք տեղեկացեալքդ»։ Սրան հաջորդում է Թուղթն ընկած տեղը. Թվարկման վերջում ավելացնում է. որ սրանք այսպէս Թշնամանվել են, հայհոյանքներով հալածվել՝ ոչ թե մենք լսել ենք հեռավոր ժամանակներից մեզ հասած զրույցներից, այլ հենց մեր ժամանակ սրանք պատահեցին, և մենք ինքներս բոլորը տեսանք (Ղ. Փարպեցի, Թիֆլիս, 1904, էջ 202—3)։

Ուրեմն՝ Ղազար Փարպեցին վկայում է, որ իրենից քիչ ժամանակ առաջ ապրելիս է եղել մի շատ նշանավոր մարդ, Մովսես անունով, որին նա կոչում է լուսավորիչ և փիլիսոփա (նույն է թե քերթող), որ այս Մովսեսը գրած է եղել տգիտահալած գրքեր. որ նրան արհամարհել են ու հալածել տեղից տեղ։ Այս վկայությունները միանգամայն համապատասխանում են այն տեղեկություններին, որ իր մասին Խորենացին հաղորդում է Ողբում և Բ. գրքի վերջին գլխում։ Ղազարը դարձյալ վկայում է, թե այդ Մովսեսին, վերջը, ուրիշներից ամաչելով, եպիսկոպոս ձեռնադրեցին և այսպիսով նրա բողոքի ձայնը խեղդեցին։ Այս վկայությունն էլ ստուգվում է այն հեղինակավոր, ինքնավստահ և իշխողական տոնով, որով խոսում ու դատում է Հայոց Պատմության հեղինակը[1]։ Այս փաստերին շատ լավ հարմարում է այն հին

[1] Այն բանասերները, որոնք Փարպեցու հիշած Մովսես փիլիսոփային չեն ուզում նույնացնել Մովսես Խորենացու հետ, սովորաբար իբրև հիմք բերում են այն առարկությունը, թե այս երկու անձերի նույն լինելու դեպքում՝ Փարպեցին պետք է հիշած լիներ Խորենացու Պատմությունը։ Այս առարկության դեմ պետք է նկատել, որ Փարպեցին իր Թուղթը գրում է զայրացած՝ գազազած հոգով, իբրև հանիրավի հալածված և այս վիճակում նա առանց քաշվելու հիշում է հալածանքով իրեն վիճակակից Մովսեսին և նրա տգիտահալած գրքերը։ Իսկ իր Պատմությունը գրելիս նա հալածանքներից ազատ էր, վայելում էր Վահան Մամիկոնյանի հովանավորությունը, և քանի որ հայտնի էր Խորենացու հակակրությունը դեպի Մամիկոնյան տոհմը՝ անտակտություն կլիներ իր բարեկամի, մեկենասի՝ Հայաստանի մարզպան Վահան Մամիկոնյանի

ավանդությունը, թե Գյուտ կաթողիկոսն անհայտության մեջ պահել է իր աշակերտակից Մովսեսին և նրան ձեռնադրել եպիսկոպոս։ Այս մասին հետո ավելի մանրամասն։

Բացի սրանից, Ղազարը ցույց է տալիս, թե ովքեր են եղել հալածիչները և թե հալածանքները անհատական բնույթ չեն կրել, այլ ուղղված են եղել որոշ դասակարգի մարդկանց դեմ։

Առ ժամանակ թողնելով հալածանքների և նրանց լուսաբանությունը՝ ամփոփենք վերոհիշյալ տվյալները Մովսես Խորենացու և նրա Պատմության ժամանակի մասին։

Մենք տեսանք, որ Խորենացու իր անձի մասին հաղորդած կենսագրական տեղեկությունները լիովին արդարանում են նրա Պատմության մեջ։ Որ նա երկար ժամանակ ապրել է Ալեքսանդրիայում, կատարյալ հունական կրթություն է ձեռք բերել, ի միջի այլոց «ամենախիմաստ արվեստ», այս երևում է նրա լայն աշխարհայացքից, Հունաց պատմության, փիլիսոփայության, բանաստեղծության, դիցաբանության ծանոթությունից, նրա ճաշակով քերթողական ոճից, նրա հունագիտությունից և հունասիրությունից։ Որ նա եղել է Սահակի և Մեսրոպի աշակերտ՝ այս երևում է նրա անկեղծ սիրուց և երախտագիտությունից դեպի իր վարդապետները, նրանց կյանքի ու գործունեության նկարագրությանը այնքան ընդարձակ տեղ տալուց իր Պատմության մեջ, որտեղ, ի միջի այլոց, հաղորդում է այնպիսի մանրամասնություններ, ոչ չկան Կորյունի և այլ աղբյուրների մեջ։ Որ նա 5-րդ դարի վերջին քառորդի հեղինակ է՝ այս երևում է Պատմության վերջին մասերի ժամանակագրության ճշտությունից, այն մանրամասն պատմական տեղեկություններից, Հայաստանի երկու մասի բաժանվելուց հետո, որոնք ուրիշ աղբյուրների մեջ չկան և որոնք ինքը գրել է իբրև ժամանակակից կամ ժամանակով փոքր ինչ հետո (ինքն էլ ասում է. «Որ ինչ առ մերով ժամանակաւս եղեալ կամ դոյզն ինչ հետի՝ զրուցեցից քեզ անսխալ» (Գ., 1)։ Իսկ որ նա հալածանքներ է կրել՝ այդ էլ լրացնում է Ղազար Փարպեցին։ Որ նա կեղծարար, խա-

---

նկատմամբ՝ Պատմության մեջ հիշատակել հակամամիկոնյան պատմագրին։ Բացի սրանից՝ նա կարող էր նույնիսկ ծանոթ էլ չլինել Խորենացու Պատմության, որ միայն մի քանի տարի առաջ էր գրվել և ընդօրինակություններով դեռ բազմացած ու ընդհանրացած չէր։

բերա մարդ չէ՝ երևում է Պատմության շատ տեղերի քննությունից։

Հայոց Պատմությունից հանված այս տեղեկությունները հաստատվում են մի շարք հավաստի տեղեկություններով և փաստերով՝ 5—9-րդ դարերի հայ և վրացական գրավոր աղբյուրներից։ Ղազար Փարպեցին գիտե իրենից քիչ ժամանակ առաջ ապրած լուսավորիչ և փիլիսոփոս (քերթող) Մովսեսին։ 7-րդ դարի սկզբներում Մովսես Խորենացու անունն այնքան հռչակված է եղել իբրև նշանավոր գրական անձի, որ նրա անունը շահագործել են՝ նրա անունով մի կեղծ ճառ հորինելու՝ երկաբնակների դեմ կռվելու համար։ Նույն դարի 60-ական թվականներին Սեբեոսը չորս անգամ հիշում է Մովսես Խորենացու Պատմությունն ու Պիտոյից գիրքը և օգտվում է նրանցից։ Նույն դարի 80-ական թվականներին Անանիա Շիրակացին իր ժամանակագրության մեջ հիշում է Մովսես Խորենացուն և նրանից առնում ժամանակագրությունը Ադամից մինչև Նոյ։ 8-րդ դարի սկզբներում Հովհան Օձնեցի կաթողիկոսն ամենամեծ գովեստներով հիշում է Մովսեսին իբրև ժամանակով ոչ հեռու Եղնիկից։ 9-րդ դարում Վրաստանի Արսեն կաթողիկոսը երկու անգամ հիշատակում է Մովսեսին՝ իբրև շատ հեղինակավոր հոգևորականի՝ Սահակ կաթողիկոսի անվան հետ[1]։ Նույն 9-րդ դարում մի ուրիշ անանուն վրացի

1 Եթե մեկը կամենա առարկել, թե Ղազարի, Օձնեցու, Արսեն կաթողիկոսի հիշած նշանավոր տիեզերահռչակ Մովսեսը, որ, նրանց ասելով, ապրելիս է եղել 5-րդ դարում, ժամանակով մոտ Եղնիկին և Փարպեցուն, ուրիշ Մովսես է և ոչ թե Խորենացին՝ ապա նա պարտավոր պիտի լինի ցույց տալ, թե ով է այդ բազմահռչակ Մովսեսը, որ այլուստ հայտնի չէ, որոնք են նրա ոգիտահալած գրքերը, որոնք անծանոթ են մնացել, և ինչ գրական արդյունքների համար այդ Մովսեսն արժանացել է այնպիսի բարձր գովեստների։ Այդ Մովսեսը միայն Խորենացին կարող է լինել, և նրա ամենանշանավոր գործը, որով արժանացել է նման գովեստների՝ միայն նրա Հայոց Պատմությունը։ Եթե ներկայումս, երբ քննադատությունը Հայոց Պատմության պատմական արժեքը շատ նվազեցրել է, երևան է հանել նրա բազմաթիվ սխալները, և այնուամենայնիվ այդ Պատմությունը համարում է մի եզակի մատենագրական հիշատակարան, ապա հին դարերում, երբ այս մերկացումները չէին եղել, և Պատմության ամեն մի խոսքն ընդունվում էր իբրև պատգամ՝ այդ Պատմության հարգն ու հրապույրն անչափ բարձր էր, նա համարվում էր հայոց սուրբ գիրքը, և այդ պատճառով էլ նրա հեղինակ Մովսեսն արժանացել է այնքան բարձր և անօրինակ գնահատումների։

*հեղինակ ընդարձակ քաղվածքներ է անում Մովսես Խորենացու Պատմությունից, առանց հեղինակի անունը տալու։*

*Այսքան բազմակողմանի, մեկը մյուսի հետ համերաշխ և համաձայն փաստերը լիակատար իրավունք են տալիս եզրակացնելու, թե* Մովսես Խորենացին արդարև ապրել է 5-րդ դարում, եղել է ս. Սահակի և Մեսրոպի աշակերտ և գրել է Հայոց Պատմությունը 5-րդ դարի վերջին քառորդում:

## Բ. ՄԵՐ ՁԵՌՔԸ ՀԱՍԱԾ ԽՈՐԵՆԱՑՈՒ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ ՍԿԶԲՆԱԳԻՐԸ ՉԷ, ԱՅԼ ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ Է ԱՎԵԼԻ ՈՒՇ ԺԱՄԱՆԱԿԻ

*Այն տվյալները, որոնցից վերոբերյալ եզրակացությունը հանեցի՝ մեծ մասամբ հայտնի էին կամ կարող էին դուրս բերվել Հայոց Պատմության ուշադիր և անկանխակալ ուսումնասիրությունից։ Բայց նրանք ուշադրության չառնվեցին այն բանասերների կողմից, որոնք վերջին 50—60 տարվա ընթացքում Պատմությունն ուսումնասիրելիս գտան փաստեր, որոնք մատնանշում էին պատմական անցքեր և ալբյուրներ 7—9-րդ դարերից, որոնց հիման վրա էլ նրանք այս Պատմության գրության ժամանակն իջեցրին մինչև 9-րդ դարը։ Ոչինչ կարելի չէր լինի առարկել այս մեթոդի դեմ՝ եթե նրանք միաժամանակ նեղություն հանձն առնեին հերքելու բոլոր այն փաստերը, որոնք խոսում են իրենց եզրակացության դեմ։ Հիրավի, եթե Հայոց Պատմությունն 8—9-րդ դարերի գործ է, և նրա հեղինակը 5-րդ դարում ապրող Սահակի-Մեսրոպի աշակերտ Մովսես Խորենացին չէ, ապա ինչպես բացատրել այն բազմաթիվ փաստերը, որոնք վկայում են հօգուտ այս բանի։ Պետք էր մի առ մի հերքել այս բոլոր փաստերը, գոնե բացատրել այնպես, որ նրանք չհակասեին իրենց եզրակացության։ Հակառակ դեպքում ստացվում է մի անօրինակ բան. մի կողմից՝ Խորենացու Պատմությունը 5-րդ դարի գործ է. սրա համար կան բազմաթիվ՝ չհերքված փաստեր. մյուս կողմից՝ Խորենացու Պատմությունը 8—9-րդ դարերի գործ է. սրա համար բերվում են ուրիշ բազմաթիվ փաստեր, որոնց մի քանիսն անհերքելի է։ Տրամագծորեն հակադիր այս երկու տեսակետներից որն է ճշմարիտը։*

Այս հակասությունն առաջ է եկել վերջին տարիների քննադատության միակողմանիությունից։ Բանասերները, նկատելով Խորենացու Պատմության մեջ պատմական անցքեր կամ աղբյուրներ, որոնք 5-րդ դարից հետո են տեղի ունեցել կամ գրվել՝ սրանց բացատրության համար դիմել են ամենահեշտ ճանապարհին—եզրակացրել են, թե մի պատմություն, որ պարունակում է տեղեկություն 6-րդ դարում կատարված անցքի մասին՝ կամ իբր աղբյուր գործ է ածել 7-րդ դարի մի գրվածք՝ բնականաբար պետք է գրված լինի այդ պատմական դեպքից կամ այդ գրական աղբյուրից հետո։ Այս մեթոդն ընդունելի և միակն է, երբ գործ ունինք մի անհայտ գրվածքի հետ, որի ոչ գրության ժամանակն է հայտնի, և ոչ հեղինակը. բայց այս մեթոդն անընդունելի է Խորենացու Հայոց Պատմության վերաբերմամբ, քանի որ անկասկածելի բազմաթիվ ապացույցներ կան նրա վավերականության—5-րդ դարի գործ լինելուն։ Այս դեպքում բանասիրությունը, հանդիպելով Հայոց Պատմության մեջ ուշ ժամանակներ մատնանշող պատմական անցքերի կամ աղբյուրների՝ պետք է ուշի ուշով քններ այս անցքերն ու աղբյուրները, ինչպես արավ Կոնիբիրը, կամ պետք է գտներ մի այլ բացատրություն, որով հարթվեր այդ աչքի ընկնող հակասությունը։

Առանց քննության մեջ մտնելու, թե Հայոց Պատմության մեջ մատնանշված անցքերը կամ աղբյուրներն իրոք ավելի ուշ ժամանակի են պատկանում, և à priori ընդունելով այդպիսի անցքերի և աղբյուրների գոյությունը կամ հնարավորությունը՝ ես գտնում եմ, որ այդպիսի հակաժամանակագրական փաստերն ուրիշ բնական և հավանական բացատրություն ունին։ Այդ բացատրությունն այն է, որ մեր ձեռքը հասած Հայոց Պատմությունը Մովսես Խորենացու գրած սկզբնագիրը չէ, այլ խմբագրություն է այդ սկզբնագրի, և խմբագրողը կամ խմբագրողներն սկզբնագրի մեջ փոփոխություններ են մտցրել,—ինչ-ինչ մասեր դուրս գցել, ուրիշ մասեր ավելացրել, լեզուն, ոճը կոկել՝ համապատասխան իրենց դիտումներին, իրենց ունեցած տեղեկություններին կամ ճաշակին։

Ոչ մի արտասովոր ու անբնական բան չկա այս կարծիքի մեջ. գրվածքների հետագա խմբագրության դեպքեր շատ կան նաև մեր հին մատենագրության մեջ, և Խորենացու Պատմու-

թյունը, որ ամենից շատ կարդացվող գիրքն էր և իբրև ընթերցանության դասագիրք էր ծառայում, հարկավ, կարող էր և պետք է ենթարկվեր խմբագրության ու մշակումների թե՛ ըստ լեզվի և թե՛ ըստ բովանդակության։

Ինչպես հայտնի է, Ղազար Փարպեցու Պատմության սկզբում մի ընդարձակ հատված կար, որի մեջ պատմված էր գրերի գյուտը, բառ առ բառ նման Խորենացու պատմածին։ Այս բանը տեղիք էր տվել զանազան ենթադրությունների։ Բայց Փարպեցու քննական հրատարակության աշխատանքների ժամանակ Գալուստ Տեր-Մկրտչյանը (Միաբան) բաղդատեց էջմիածնի մատենադարանի՝ Փարպեցու Պատմության երկու ձեռագրերը, որոնցից մեկն արտագրված էր մյուսից, և դուրս եկավ, որ այդ հատվածը մայր ձեռագրում չկա, այլ մուծված է երկրորդի մեջ, այն էլ Խորենացու անդրանիկ՝ Ամստերդամի տպագրությունից (1695-ին)։ Այսպիսով այդ հատվածը ճանաչվեց ընդմիջարկություն, և քննական հրատարակության մեջ Փարպեցու Պատմության բնագրից դուրս գցվեց։ Նույն Փարպեցու Պատմության մեջ այսպիսի մի ընդմիջարկություն է ս. Սահակի տեսիլն ու նրա մեկնությունը, որտեղ ակնարկություններ կան 9-րդ և 10-րդ դարերի անցքերի մասին։ Եթե մենք ունենայինք Փարպեցու հին ձեռագրեր, 8—9-րդ դարերից, կտեսնեինք, որ նրանց մեջ բացակայում են տեսիլքն ու մեկնությունը, ուրեմն և հանգիստ խղճով նրանց էլ դուրս կգցեինք իբրև ընմիջարկություններ. բայց քանի որ այդպիսի հին ձեռագրեր չկան՝ տեսիլքն ու մեկնությունը Պատմության մեջ մնում են խիստ կասկածի տակ, իբրև ընդմիջարկություններ. բայց այս տեսիլքի ու նրա մեկնության հիման վրա մենք Փարպեցու գրության ժամանակը չենք իջեցնում մինչև 10-րդ դարը, ինչպես անում ենք Խորենացու նկատմամբ։

Կորյունի «Վարք սրբոյն Մեսրոպայ» մեզ հասել է երկու խմբագրությամբ։ Ընդարձակն սկզբնագիր է, Կորյունի գրածը, իսկ համառոտը խմբագրություն է ավելի ուշ ժամանակի և կրում է Խորենացու ազդեցության հայտնի հետքեր։ Ենթադրենք թե սկզբնագիրը կորած լիներ, և մենք նրա մասին տեղեկություն չունենայինք։ Այս դեպքում բնականաբար սկզբնագիր պետք է համարեինք համառոտը, և առաջ կգային անվերջ կասկածներ ու

ենթադրություններ Կորյունի անձի, նրա ապրած ժամանակի և վարքի գրության ժամանակի մասին, քանի որ համառոտի լեզուն և ուրիշ գրական աղբյուրների ազդեցությունը նրա վրա՝ պետք է հակասեին այն տեղեկության, թե Կորյունը Մեսրոպի ավագագույն աշակերտներից մեկը և նրա գործակիցն է եղել։ Մոտավորապես այսպիսի մի դրություն ստեղծվել է Խորենացու Պատմության համար։

Մի ուրիշ լավագույն օրինակ էլ Շիրակացու Աշխարհացույցն է։ Մինչև 1881 թվականը բոլոր բանասերները միամտորեն հավատացած էին, թե մինչև այդ ժամանակ մի քանի անգամ տպագրված Աշխարհացույցն սկզբնագիր է, բուն հեղինակի գրածը։ Նույնիսկ Սուքրին, որ 1881 թվին հրատարակեց ընդարձակ Աշխարհացույցը, մնում էր նույն կարծիքին, թե սկզբնագիրն այն հին համառոտն է, իսկ իր հրատարակած ընդարձակը նրանից խմբագրված է հավելումներով։ Մանրամասն քննությունը միայն երևան հանեց, թե ոչ համառոտը և ոչ ընդարձակն սկզբնագիր չեն, այլ երկուսն էլ, մեկը մյուսից անկախ, խմբագրված են մի ավելի ընդարձակ սկզբնագրից, որ այժմ անհետ կորած է։

Ճիշտ այս բանն է տեղի ունեցել և Հայոց Պատմության վերաբերմամբ. մեր ձեռքը հասած Պատմությունը խմբագրված է Խորենացու գրած սկզբնագրից, որ այժմ անհետ կորած է։ Եթե Աշխարհացույցը երկու անգամ մեկը մյուսի հետևից կարող էր ենթարկվել խմբագրության, նույնն ավելի մեծ հավանականությամբ կարող էր պատահել և Պատմության հետ, որ Աշխարհացույցից անհամեմատ ավելի հաճախ էր կարդացվում, շատ էր տարածված և իր տենդենցներով կարող էր անհամապատասխան լինել այս կամ այն դարում Հայաստանում տիրող տենդենցներին, ուրեմն և կարիք պետք է զգացվեր նրան տեղ-տեղ փոփոխության ենթարկելու, հարմարեցնելու ժամանակակից տենդենցներին։

Մեր ձեռքը հասած Պատմության խմբագրություն լինելը դժբախտաբար չենք կարող հաստատել Պատմության բազմաթիվ ձեռագրերի բաղդատությամբ, որովհետև սրանք բոլորը շատ նոր ժամանակից են։ Հայոց Պատմության ամենահին ձեռագիրը, որ հասել է մեր ձեռքը՝ Էջմիածնի թիվ 249 ձեռագիրն է (Կարի-

նյանի ցուցակով՝ 242)։ Սրա նորոգված մասերը 1567 և 1684 թվականներից են, իսկ հնագույն մասը, որ գրեթե Պատմության երկու երրորդ մասն է կազմում՝ 14-րդ, գուցե և 13-րդ դարից է (տես Մովսես Խորենացու Պատմություն, Թիֆլիս, 1913, Առաջաբան, էջ ԺԹ—ԻԱ)։ Իսկ 5-րդ դարից մինչև 13-րդ դարը, ութ հարյուր տարի ժամանակ, շատ ընդարձակ շրջան էր, երբ կարող էր տեղի ունենալ այս խմբագրությունը։ Այս շրջանից, թեկուզ 9-րդ դարից, ոչ մի ձեռագիր մեզ չէ հասել, որ կարողանայինք համեմատել նորագույն-ձեռագրերի հետ և երևան հանել տարբերությունները հին ձեռագրի և նորերի միջև։ (Նորագյուտ հնագույն Պատառիկի մասին քիչ հետո)։

Բայց եթե Խորենացու Պատմության ձեռագրերը մեզ այս հարցում չեն օգնում՝ պատահաբար մի կողմնակի ցուցմունք կա, որ լիովին ապացուցում է Խորենացու սկզբնագրի այլայլված լինելու փաստը և որի մասին գրել եմ դեռ 1892 թվի դեկտեմբերին[1]։

Որովհետև հարցը շատ կարևոր է, իսկ իմ հոդվածը շատերին հայտնի չէ և անմատչելի է՝ հարկ եմ համարում համառոտակի բերել նրա բովանդակությունն ու եզրակացությունը։

Ֆրանսիացի հայագետ Ա. Կարրիերը 1892 թ. օգոստոսին և դեկտեմբերին տպագրեց «Հանդէս ամսօրեայ»-ում երկու հոդված, որոնց մեջ քննություն էր առնում Խորենացու Պատմության Բ. գրքի 83-րդ (ՁԳ) գլուխը։ (Այս գլխում Խորենացին պատմում է, թե Դիոկղետիանոսի Մաքսիմինա դուստրն ամուսնացավ Կոստանդ կեսարի հետ, որ Հռոմի Կոստ թագավորի որդին էր, Հելենա պոռնիկից ծնված։ Տրդատը հարսանիքի ժամանակ ծանոթանում է Կոստանդիանոսի հետ. Կոստանդի մահից հետո Դիոկղետիանոսը նրա տեղ կայսր է նշանակում Կոստանդիանոսին։ Սա դեռ կեսար եղած ժամանակ կռվի մեջ հաղթվելով՝ երազում տեսնում է մի խաչ՝ վրան գրված. «Այսու յաղթեա», խաչը սիգնոյն (signum, զինվորական նշան) դարձնելով՝ հաղթում է թշնամիներին։ Վերջն իր կնոջից հրապուրվելով՝ քրիստոնյաների դեմ հալածանք է հարուցում, որի պատճառով հիվանդանում է ելեփանդական բորոտությամբ (ծանր տեսակի բորոտություն, որի ժա-

[1] Տես «Մուրճ» ամսագիր, 1892, դեկտեմբեր, էջ 1852—1863։

մանակ մարմնի մորթը փղի մորթի նման կարծրանում է, խստորուկ)։ Բժիշկները և կախարդները չեն կարողանում օգնել։ Քուրմերը խորհուրդ են տալիս՝ փոքրիկ երեխաներ մորթել, արյունը հավաքել ավազանի մեջ և տաք-տաք լողանալ նրանց արյունով, որով բժշկություն կգտնի։ Բայց Կոստանդիանոսը խղճահարվում է երեխաների լացից, մայրերի ողբից, և լավ է համարում հիվանդ մնալ, քան այնքան երեխաներ մորթոտել։ Այս մարդասիրության փոխարեն առաքյալները գիշերը տեսիլքում երևում են նրան և պատվիրում են մկրտվել Հռոմի Սեղբեստրոս եպիսկոպոսից, որով բժշկություն կգտնի։ Կոստանդիանոսը մկրտվում է, քրիստոնյա է դառնում, առողջանում է, և նրա առաջ ասված ջնջում է բռնավորներին, ինչպես համառոտ պատմում է Ագաթանգեղոսը։

Կարրիերը ցույց տվեց, որ այս գլխի բովանդակությունը, տեղ-տեղ բառացի կերպով, վերցված է Սեղբեստրոսի ընդարձակ Վարքի հայերեն թարգմանությունից, որ կարող էր կատարված լինել ամենավաղը 6-րդ դարի կեսերին (հետո այս թարգմանության ժամանակը իջեցվեց մինչև 7-րդ դարի վերջին քառորդը). ուրեմն Խորենացու Պատմությունը, որի մեջ իբրև աղբյուր գործ է ածված 6-րդ դարի կեսերից մի գրվածք՝ կարող է գրված լինել 6-րդ դարի կեսից հետո, կամ 7-րդ դարում։

Կարրիերի այս հոդվածը, որ հեղաշրջում էր ավանդական համոզմունքը Հայոց Պատմության գրության ժամանակի մասին և դուրս էր բերում նրան իբրև 7—8-րդ դարերի մի կեղծիք, ահագին աղմուկ հանեց հայ բանասիրության մեջ։ Սկսեցին այս մասին թեր և դեմ կարծիքներ հայտնել։ Ես էլ այս հարցով զբաղվեցի և եկա այն եզրակացության, թե այդ 83-րդ գլուխը, որ պարունակում է Կոստանդիանոս կայսեր դարձի առասպելական պատմությունը՝ հարազատ Խորենացու գրածը չէ, այլ հետասամուտ է։ Իմ այս եզրակացության հիմք ծառայեցին հետևյալ դիտողությունները.

1. Խորենացու Պատմության մեջ պակասում է Հայերի քրիստոնեության ընդունելու պատմությունն իր բոլոր հանգամանքներով, այսինքն Խորենացին չի պատմում Գրիգորի չարչարանքները, վիրապը ձգվելը, Հռիփսիմյան կույսերի Հայաստան գալը, նահատակվելը։ Տրդատի հիվանդությունը, Գրիգորին վի-

րապից հանելը, քարոզությունը, թագավորի բժշկությունը, Գրիգորի՝ Հայաստանի եպիսկոպոս ձեռնադրվելը Կեսարիայում, Տրդատին և հայ ժողովրդին մկրտելը:

Այս բաները Խորենացին չէր կարող չգիտենալ, քանի որ ձեռքի տակ ուներ Ագաթանգեղոսի Պատմությունը, որի վրա հաճախ մատնացույց է լինում և քանի որ մյուս կողմից նա գիտե և զանազան տեղերում հիշում է Գրիգորին մանուկ հասակում Կեսարիա փախցնելը, ամուսնանալը, երկու որդի ունենալը, Տրդատի մոտ ծառայության մտնելը, գիտե Հռիփսիմյան կույսերին և նրանց ընկերներից մեկին՝ կույս Նունեին:

Նա չէր կարող արհամարհել Հայոց դարձն ու մկրտությունը, քանի որ անչափ բարձր է գնահատում Գրիգորին և Տրդատին, իբրև Հայոց լուսավորության զուգահավասար գործակիցների. չէր կարող զանց առնել պատմել իր ընիկ թագավորի՝ Տրդատի դարձն ու մկրտությունը, մինչդեռ պատմում է օտար թագավորի դարձն ու մկրտությունը, ինչպես նաև Վրաց դարձը Նունեի քարոզությամբ: Սրանից բնականաբար հետևում է, թե Խորենացին գրած է եղել Հայոց դարձի պատմությունը, բայց մեզ անհայտ պատճառով դուրս է ընկել նրա Պատմությունից, անհետ կորել է:

2. Հայոց դարձի այս կորած պատմությունը Խորենացու Պատմության մեջ պետք է գրավեր նրա Երկրորդ գրքի 83-րդ գլուխը, որտեղ այժմյան մեր ունեցած բնագրում պատմվում է Կոստանդիանոս կայսեր դարձը: Այս եզրակացությունը հետևում է նրանից, որ նախընթաց 82-րդ գլխում պատմվում են Տրդատի գործերը նախքան քրիստոնեություն ընդունելը, իսկ հաջորդ՝ 84-րդ գլխում տեսնում ենք, որ Տրդատը, արդեն քրիստոնյա, գնում է Կոստանդիանոս կայսեր տեսության: Ուրեմն Խորենացու սկզբնագիր 83-րդ գլխում պատմված է եղել Հայոց դարձը, իսկ այժմյան բնագրում պատմված է Կոստանդիանոսի դարձը: Սրանք երկուսը չէին կարող մի գլխում ամփոփվել, քանի որ Հայոց դարձն ըստ ինքյան մի ընդարձակ նյութ է և այնքան կարևոր ու ինքնամփոփ, որ Խորենացին չէր կարող նրան կցել Կոստանդիանոսի դարձի պատմությունը, որ իր կողմից դարձյալ մի ինքնամփոփ և անկախ Պատմություն է: Այս երկու դարձերի պատմությունները չէին կարող առանձին-առանձին գլուխներ կազմել, որովհետև այս դեպքում 82-րդ և 84-րդ գլուխների մեջ

կտացվեին երկու գլուխ՝ 83-րդ թվահամարով։ Սրանից եզրակացնում ենք, որ Խորենացու սկզբնագիր Պատմությունից դուրս է գցված Հայոց դարձի պատմությունը և փոխարինված է Կոստանդիանոսի դարձի Պատմությամբ։ Ուրեմն այս վերջինը Խորենացու գրածը չէ, այլ հետո է մտցված Հայոց Պատմության մեջ, փոխարինելու համար սկզբնագիր պատմությունը Հայոց դարձի մասին։

3. Այս եզրակացությունը, որ հանում ենք Հայոց Պատմության բնագրի քննությունից՝ հաստատվում է մի կողմնակի փաստով։

Ինչպես հայտնի է՝ Ասողիկը, իր Պատմության երկրորդ հանդեսը գրելիս՝ հավատարմությամբ հետևում է Խորենացուն, երբեմն բառացի արտագրելով, երբեմն համառոտելով։ Այսպես էլ վարվել է նա ներկա դեպքում, սկսած Խորենացու 82-րդ գլխից հաջորդաբար։ Նա մասամբ բառացի և մասամբ կրճատ ձևով բերում է Խորենացու 82-րդ գլուխը. 83-րդ գլխից, որ պարունակում է Կոստանդիանոսի դարձը՝ ոչ մի բառ չէ բերում, այլ դրա փոխարեն համառոտակի դնում է Հայոց դարձի Պատմությունը. այնուհետև բառացի կամ քաղվածորեն բերում է 84-րդ գլուխը և այսպես շարունակում։

Որպեսզի այս բանը շոշափելի դառնա՝ կբերեմ մի ընդարձակ հատված Ասողիկից, առանց ընդմիջումների, դիմացը դնելով Խորենացու Պատմությունից համապատասխան մասը, Ասողիկի մեջ ցրիվ գրելով այն կտորները, որոնք Խորենացու մոտ չկան։

| Ասողիկ | Խորենացի |
| --- | --- |
| Արդ խնդրելով զառաջին ամն Տրդատայ՝ գտաք թագաւորեալ յերրորդ ամին Դիոկղետիանոսի եւ երկրորդ ամի Շապհոյ Պարսից արքայի։ Որոյ հասեալ ի Կեսարիա՝ յոլովք ի նախարարացն Հայոց ընդ առաջ ելանէին։ Եւ յառաջին ամին թագաւորութեան Տրդատայ սուրբն Գրիգոր անտանելի չարչարանացն տարեալ վասն Քրիստոսի հաւատոյն՝ վի- | Գլ. 82..... մանրախուզիւ քննեալ գտաք զթագաւորելն Տրդատայ յերրորդ ամի Դիոկղետիանոսի եւ գալ այսր մեծաւ զօրու։ Որոյ հասեալ ի Կեսարիա՝ յոլովք ի նախարարացն ընդ առաջ լինէին..... |

րապընկէց լինէր։ Իսկ քաջին Տրդատայ արագապէս բազում ճակատս տուեալ նախ ի Հայս եւ ապա ի Պարսս. զորոյ զփորձ առեալ կորովեացն Պարսից զասպետութեան հըսկային՝ բազում վիրօք զձին սատակեցին նետաձգութեամբ, որ զարկուցեալ յերկիր ընկենոյր զարքայն։ Իսկ նորա յարուցեալ եւ ի հետի յարձակեալ՝ փոխանակ իւր զբազումս ընկենոյր ի թշնամեացն եւ զմիոյ ուրումն ձի կալեալ աշտանակեաց արխաբար։ Դարձեալ յերկրորդումն միւս անգամ կամաւոր լեալ ի հետի՝ սուսերաւ զփղացն զերամակս պուղէր։ Եւ այսպիսի նահատակութեամբ յամեալ ի Պարսս եւ յԱսորեստան՝ անդր եւս քան զՏիգրոն յարձակէր։

Եւ ի հնգետասաներորդ ամին Տրդատայ սուրբ՝ կուսանքն Հռիփսիմեանք եւ Գայիանեանք վասն աստուածպաշտութեան հալածեալք ի Դիոկղետիանոսէ, եկեալ ի Վաղարշապատ քաղաք զմարտիրոսական չարչարանս ընկալան ի Տրդատայ արքայէ. յորում աստուածատուր պատուհասն ի վերայ Տրդատայ եւ աշխարհիս Հայոց։ Եւ ի նմին աստուածահրաշ յայտնութեամբ ելեալ ի վիրապէն սուրբն Գրիգոր լուսաւոր վարդապետութեամբ սկիզբըն առնէ եւ բժշկութեան հարուածոցն. որ հինգ օր անսուաղ մնացեալ ամենայն բազմութեանն, ունկն դնելով վարդապետութեան սրբոյն Գրիգորի, որ են յա-

Իսկ քաջին Տրդատայ երագապէս եւ բազում ճակատս տուեալ, նախ ի Հայս եւ ապա ի Պարսս՝ իւրով անձամբ առնէր զյաղթութիւնն... Կորովեացն Պարսից զփորձ առեալ զասպետութեան սխային... բազում վիրօք պատեալ զձին սատակեցին նետաձգութեամբ, որոյ զարկուցեալ յերկիր՝ ընկենոյր զարքայն։ Իսկ նորա յարուցեալ եւ հետի յարձակեալ՝ փոխանակ իւր զբազումս ընկենոյր ի թշնամեացն եւ զմիոյ ուրումն զձին կալեալ՝ արխաբար աշտանակէր։ Դարձեալ յերկրորդէն միւս անգամ կամաւոր լեալ հետի՝ սուսերաւ զերամակս փղացն պուղէր։ Եւ այսպիսի նահատակութեամբք յամեալ ի Պարսս եւ յԱսորեստան, անդր եւս քան զՏիգրոն յարձակէր։

Գլ. 83. (Չունի ամբողջ ցրիվ տըպված պարբերությունը. «Եւ ի հնգետասաներորդի ամին — վաթսուն օր վարդապետութեան նորա»։ Սրա փոխարէն ունի Կոստանդիանոսի դարձի պատմությունը, որի համառոտ բովանդակությունը վերը բերինք)։

ռաջաւոր պահք ամի ամի պահեալք մինչեւ ցայժմ. թող զայլ եւս վաթսուն օր վարդապետութեան նորա։

Այլ ի գնալն Տրդատայ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս՝ նիւթէ չարին Շապուհ ի վերայ մերոյ աշխարհիս եւ ի խորհուրդուէ նորա ելեալ բազմութիւն հիւսիսային ազգացն յաշխարհս մեր եւ ի նորին բանս հրապուրեալ նահապետ ազգին Սլկունեաց՝ ապստամբեալ յարքայէ ամրանայ յամուրն Ողական։ Եւ այն ինչ ընդ հուպ եկեալ մեծին Տրդատայ յարեւմտից՝ առաքէ առ Սլկունն զՃենազնեանն Մամգունն», էն[1]։

Գլ. 84... Ի գնալն Տրդատայ ի Հռոմ առ սուրբն Կոստանդիանոս՝ պարապ առեալ խորհրդոց Շապհոյ՝ նիւթէ չարիս ի վերայ մերոյ աշխարհիս, թողեալ զհիւսիսայինսն ամենայն ելանել ի Հայս... ի նորին բանս հրապուրեալ Սղուկ... նահապետ ազգին Սլկունեաց՝ ամրանայր յամրոցին որ անուանեալ կոչի Ողական։ Եւ այն ինչ ընդ հուպ եկեալ մեծին Տրդատայ յարեւմտից... Զօրյանձն առնոյր ճենազնեայն Մանգոնն», եւն[2]։

Այս համեմատությունից երևում է, որ Ասողիկը հավատարմությամբ համառոտում է առաջին և երրորդ պարբերությունները Խորենացու 82-րդ և 84-րդ գլուխներից. բնականաբար միջին պարբերությունն էլ (ցրիվ շարվածը), որ պարունակում է Հայոց դարձի պատմությունը՝ պետք է համառոտած լիներ 83-րդ գլխից, որ սակայն Խորենացու այժմյան բնագրում պակասում է. իսկ ինչ որ Խորենացու այժմյան 83-րդ գլխումը կա՝ Ասողիկը ոչ մի բառով չէ բերում։ Պարզ է, որ Ասողիկն օգտվել է Խորենացու այնպիսի ձեռագրից, որի մեջ 83-րդ գլուխը Հայոց դարձի Պատմությունն է եղել պարունակելիս և ոչ թե Կոստանդիանոսի դարձի պատմությունը. ուրեմն այս վերջինս հետսամուտ գլուխ է, որ փոխարինել է սկզբնագրի Հայոց դարձի պատմությունը պարունակող գլուխը։ Հետաքրքրական է այստեղ նկատել նաև այս ուշագրավ երևույթը, որ Ասողիկի Պատմության մեջ էլ Հայոց դարձի պատմությունը թերի է. նրա մեջ չկա Գրիգորի Կեսարիա գնալը, եպիսկոպոս ձեռնադրվելը և Տրդատին մկրտելը։ Սրա մասին՝ քիչ հետո։

Ապա ուրեմն Խորենացու Բ. գրքի 83-րդ գլուխը, որ քաղ-

[1] Ասողիկ, Պետերբուրգ, 1885, էջ 60—62։

[2] Այս պարբերության վերջին մասում նախադասությունների տեղափոխություն եմ կատարել՝ հեշտելու համար Ասողիկի պատմածին։

վածորեն կազմված է Սեղբեստրոսի Վարքից (709—728), անհարազատ է, որով փոխարինված է Խորենացու գրած հարազատ պատմությունը Հայոց դարձի մասին։

Ինչու է կատարված այս փոխարինությունը, ինչպես ասած խարդախումը՝ «Մուրճ»-ում տպագրված հոդվածումս ես չէի բացատրել. բավարար բացատրություն չկար այն ժամանակ։ Ներկայումս, կարծում եմ, հնարավորություն կա այդ խարդախումը բացատրելու։

Ակադեմիկոս Ն. Մառը 1905 թվին հրատարակեց Ագաթանգեղոսի Պատմության մի դեռ անհայտ վարիանտ արաբերեն լեզվով, ռուսերեն թարգմանությամբ հանդերձ։ Միակ ձեռագիրը, որից կատարված է տպագրությունը՝ սկզբից թերի է եղել, ուստի և հայտնի չէ, թե ինչ անուն էր կրում գիրքը կամ ում ձեռքով էր խմբագրված։ Ն. Մառը անկասկածելի կերպով ցույց է տալիս, թե իր հրատարակած արաբերեն բնագիրը թարգմանված է եղել հունարենից, իսկ այս հունարենը հավանորեն ծագել է հայերեն մի բնագրից, որ այժմ կորած է։ Այս արաբական խմբագրությունը բավական մեծ տարբերություններ ունի հայերեն Ագաթանգեղոսից. ամենագլխավորն այն է, որ Գրիգոր Լուսավորիչը Տրդատի հետ միասին մկրտում է նաև Վրաց, Աբխազների և Ալանների թագավորներին, որով նա հանդիսանում է լուսավորիչ ոչ միայն Հայոց, այլև միաժամանակ Վրաց, Աբխազների և Ալանների։

Երբ միմյանց հետ համեմատում ենք արաբական վարիանտը, հայերեն Ագաթանգեղոսը և Խորենացին՝ նկատում ենք, որ

1. Արաբերենն ու Խորենացին գիտեն, որ Կոստանդիանոսն իր մայր Հեղինեին ուղարկել է Երուսաղեմ Քրիստոսի խաչափայտը գտնելու։ Այս բանը հայերեն Ագաթանգեղոսում չկա։

2. Խորենացին հեթանոս հայերի աստվածների անունները բերում է հունարեն լեզվով. նույնպես է և արաբերենում. իսկ հայերեն Ագաթանգեղոսի մեջ աստվածների անունները բերված են հայերեն։

3. Խորենացին վկայում է, թե Կոստանդիանոսի դարձը Սեղբեստրոսի ձեռքով պատմել է Ագաթանգեղոսը։ Այս պատմությունն արաբերեն Ագաթանգեղոսում կա, իսկ հայերենում չկա։

Ուստի հավանական է ենթադրել, որ Խորենացին օգտվել է ոչ թե մեր այժմյան Ագաթանգեղոսից, այլ այն բնագրից, որից ծա-

ծագել է արաբական վերսիան։ (Մառն էլ այս կարծիքին է)։ Իսկ այս դեպքում Խորենացին, իր աղբյուրին հետևելով, պետք է պատմեր, որ Տրդատի հետ մկրտված են եղել նաև հիշյալ երեք ազգերի թագավորները, այսինքն ս. Գրիգորին պետք է դուրս բերեր իբրև լուսավորիչ չորս ազգի և ոչ թե միայն հայ ազգի, հակառակ հայերեն Ագաթանգեղոսին, որի մեջ Գրիգորն ազգայնացրած է, դուրս է բերված Հայոց աշխարհի լուսավորիչ։

Այս բանը բնական կհամարվեր և ոչ մի առարկություն չէր հանդիպի 5-րդ դարում, երբ Հայերը, Վրացիք, Աբխազներն ու Ալանները մի եկեղեցի էին կազմում։ Բայց 7-րդ դարից հետո երբ Վրացիք բաժանվեցին Հայոց եկեղեցու միաբանությունից, երբ երկու եկեղեցի դառնալով սկսեցին միմյանց փոխադարձաբար հերձվածող կոչել՝ այլևս անհանդուրժելի կդառնար, որ ս. Գրիգորը լուսավորիչ լիներ ոչ միայն Հայերի, այլև Վրացոց և ուրիշների, չէր կարելի թույլ տալ, որ Վրացիք էլ նույնքան իրավունք ունենային ս. Գրիգորին կոչել իրենց լուսավորիչը, որքան և Հայերը. չէր կարելի թույլ տալ, որ Խորենացու նման հեղինակավոր ու տարածված պատմագիրը վկայեր, թե ս. Գրիգորը հավասարապես լուսավորիչ է եղել Հայոց, Վրաց, Աբխազների և Ալանների։ Պետք էր այդ հետքը ոչնչացնել, որպեսզի ս. Գրիգորը դառնա բուն ազգային — Հայոց լուսավորիչ, ինչպես է հայերեն Ագաթանգեղոսում։ Իմ կարծիքով՝ այս է եղել պատճառը, որ Խորենացու սկզբնագիր 83-րդ գլուխը, որի մեջ պատմվում էր Հայոց, Վրաց, Աբխազների և Ալանների դարձի պատմությունը՝ Խորենացու բնագրից դուրս է գցված, բայց պակասը լրացնելու համար տեղը դրված է Կոստանդիանոսի դարձի պատմությունը, որին լավ հարմարվում է 84-րդ գլուխը, որտեղ պատմվում է Տրդատի՝ Կոստանդիանոսին տեսության գնալը (նրա դարձից հետո)։ Օրանով կարելի է բացատրել և Ասողիկի լռելը հայոց մկրտության մասին։ Ասողիկն իր ձեռքի տակ ուներ Ագաթանգեղոսը, ըստ որում Լուսավորիչը մկրտել է միայն հայերին, ուներ և Խորենացու սկզբնագիր Պատմությունը, ըստ որում Լուսավորիչը մկրտել է չորս ազգերի թագավորներին.— երկու հեղինակավոր աղբյուրներ, որոնք հակասում են իրար. որին տալ առավելություն։ Ասողիկը չէ կարողացել վճռել այս դժվար հարցը, ուստի որոշել է բոլորովին բաց թողնել մկրտու-

թյան պատմությունը, որպեսզի հակասած չլինի կամ Խորենացուն կամ Ագաթանգեղոսին։

Գրիգոր Լուսավորչի պատմությունը և Հայոց դարձը նկարագրող սկզբնագիր պատմության ու նրա բազմաթիվ խմբագրությունների հարցն այնքան մութ է ու խճճված, որ այս հարցերի շրջանում կարելի է ավելի կամ նվազ հավանական ենթադրություններ անել՝ առանց ստուգությունը երաշխավորելու։ Բայց ինչ էլ որ լինի Խորենացու Պատմության Բ. 83-րդ գլխի խարդախման պատճառը[1], այդ խարդախումն անվիճելի է, ուրեմն որ Խորենացու Պատմությունը մեր ձեռքը չէ հասել իր սկզբնական վիճակում, այլ ենթարկվել է խոշոր և դիտավորյալ փոփոխությունների։ Եթե անհայտ խմբագրողը կամ խմբագրողներն այնքան լայնացրել են իրենց խմբագրական գործը, որ Խորենացու գրած մի գլուխը փոխարինել են մի ուրիշ անհարազատ գլխով՝ հասկանալի է, որ ուրիշ շատ տեղեր էլ նրանք փոփոխություններ ու հավելումներ կմտցնեին ըստ իրենց ճաշակի, կամ ժամանակի տենդենցի, կամ ըստ իրենց ունեցած տեղեկությունների։ Եվ սրանից են առաջ գալիս ժամանակագրական և նոր աղբյուրների գործածության անտեղությունները, որոնց բացատրության

[1] Եթե ճիշտ լինի իմ կարծիքը Բ., 83 սկզբնագիր գլուխը բնագրից դուրս ձգելու պատճառի մասին՝ այս դեպքում ընդմիջարկությունները պետք է լինեին ամբողջ Բ., 86 գլուխը՝ Ցաղագս Ներսեհի երանելւոյ, եթէ որպէս եղեւ պատճառք փրկութեան Վրաց, որ արդեն կասկածի է ենթարկված, նույնպես և փոքրիկ հատվածը Գ., 66 գլխում՝ «ի մկրտել սրբոյն Գրիգորի զՏրդատ արքայ եւ զբոլոր Հայս»—սրանք երկուսն էլ կհակասեին Բ., 83 հարազատ գլխի մեր ենթադրած բովանդակության։ Բայց սրան հակառակ խոսում է այն փաստը, որ այժմյան Բ., 83 անհարազատ ճանաչված գլուխը, նույնպես և Բ., 86-ը, որ նրան վիճակակից կդառնա՝ երկուսն էլ լեզվով ու ոճով չեն զանազանվում Պատմության մնացյալ մասերից, այսինքն լեզվի՝ ձևի կողմից հարազատության դրոշմ են կրում։ Ուստի ես, զգուշության համար, կարող էի բավականանալ լոկ ցույց տալով այն անուրանալի փաստը, որ Հայոց դարձի պատմությունը Խորենացու Պատմությունից դուրս է գցված, առանց նրա բովանդակության և դուրս գցվելու պատճառի մասին կարծիք հայտնելու և առանց այժմյան Բ., 83 գլուխն անհարազատ ընդմիջարկություն հայտարարելու։ Բայց քանի որ մեզ համար պարզ չէ, թե մինչև ո՛ր աստիճան փոփոխությունների է ենթարկված Խորենացու սկզբնագիր Պատմությունը և թե բովանդակության հետ նրա լեզուն էլ խմբագրության չէ՞ ենթարկված—օգտակար համարեցի այդ վարկածներս էլ պահել՝ իբրև ապագա հետազոտությունների նյութ։

համար բանասերներն ուրիշ ճանապարհ չգտան, քան Խորենացու Պատմության գրության ժամանակն իջեցնել մինչև 9-րդ դարը:

Իբրև ընդմիջարկություն նկատված կամ կասկածված ուրիշ կտորներ էլ կան Հայոց Պատմության մեջ, որոնք մասամբ մատնանշված են ուրիշների կողմից, այսպես են՝ 1. Ձայնավոր գրերը գրերի գյուտի պատմության մեջ (Գ., 53). 2. Արվեստների և ազգերի անունները մի-մի տառով նշանակված հանելուկը (Ա., 2). 3. «Եւ երրորդ ոմն Դաւիթ» (Ա., 6). 4. Իր ճանապարհորդության նկարագրության գլուխը կամ գոնե նրա առաջին մասը՝ լեզվի զգալի տարբերության պատճառով (Գ., 62) և այլն: Նույնպես ընդմիջարկություններ կդառնան ս. Նունեի վրաց առաքելուհի լինելու գլուխը (Բ., 86) և «ի մկրտել սրբոյն Գրիգորի զՏրդատ արքայ եւ զբոլոր Հայս» հատվածը (Բ., 66), եթե հաստատվի իմ կարծիքը Բ., 83 հարազատ գլխի (Հայոց դարձի պատմության) անհետանալու պատճառի մասին[1]:

Լեզվի և ոճի տեսակետից խմբագրական փոփոխությունների բազմաթիվ փաստեր կան համախմբված Խորենացու քննական հրատարակության (Թիֆլիս, 1913) խուռն ծանոթությունների մեջ, որ ամեն մի հետաքրքրվող կարող է ստուգել, և այս բոլորը 13—16-րդ դարերի ձեռագրերի շրջանում: Իսկ թե որքան այսպիսի փոփոխություններ են կատարվել դրանից առաջ, 5—13-րդ դարերի ձեռագիրների մեջ՝ մեզ մնում է անհայտ, որովհետև այդ ժամանակներից ձեռագիր մեր ձեռքը չէ հասել: Ես այստեղ կբերեմ Խորենացու Պատմության համեմատությունը մի փոքրիկ մագաղաթյա պատառիկի հետ, որ նոր է գտնված Էջմիածնի մատենադարանում և պարունակում է արտագրություն Խորենացու Բ., 86 գլխի (Վրաց դարձի պատմությունը ս. Նունեի ձեռքով)

---

[1] Կարելի է ցույց տալ և ուրիշ ընդմիջարկություններ առանձին-առանձին ձեռագիրներում: Տրդատ Թագավորի շքեղ հանդիսավոր Թաղման վերաբերյալ անվավերական հատվածը, որ մեզ հայտնի ձեռագիրներից ոչ մեկում չկա՝ եղել է Թովմայ Արծրունու օրինակում, որից համառոտ քաղվածն է բերում Թովման, ճիշտ տեղը նշանակելով — Բ գրքի վերջին գլխում: Դարձյալ Պետ. Ձեռագրատան մի ձեռագրում (Եզյանի), որ Քննական հրատարակության մեջ նշանակված է y տառով՝ գտնվում է ս. Սահակի տեսիլը և նրա մեկնությունը, որ սակայն ուրիշ ոչ մի ձեռագրում չէ պատահում:

սկզբից մինչև «կանգնել գնշան խաչին» բառերը։ Մագաղաթյա պատառիկը 11-րդ դարից է, ուրեմն արտագրված է Խորենացու ավելի վաղագույն ձեռագրից, այնպես որ այս պատառիկի պարունակած բնագիրը ամենահին է մեզ հայտնի բոլոր ձեռագիրների բնագիրների մեջ։

| Մագաղաթյա պատառիկը | Տպագրի բնագիրը |
|---|---|
| 1. Նունի անուն | Անուն Նունէ[1] |
| 2. սրբոյն Հռիփսիմայ | սրբոց Հռիփսիմեանց[2] |
| 3. փախստեայ | փախստեամբ |
| 4. մեծագահ | նախագահ |
| 5. առաջնորդի | առաջնորդին Վրաց[3] |
| 6. հրամայեաց հարցանել | հարցեալ |
| 7. ի հայք | ի Հայս |
| 8. ստուգագոյնս | ստուգագոյնս եւս |
| 9. տեղեկացաւ կարգաւ | տեղեկացաւ զամենայն ոճով |
| 10. լերինն | լերանց |
| 11. այսպիսի եղեալ եւ միհրանայ | այսպիսեաւ Միհրան[4] |
| 12. ի ճանապարհ ել յորս | ի ճանապարհ ելեալ, կամելով յորս գնալ[5] |
| 13. հասին | հասին նմա |
| 14. Նունէի խնդրեալ… յղէ | երանելւոյն Նունէի խնդրեալ… յղեաց |
| 15. հրամայեցէ | հրամայեացէ նմա[6] |
| 16. զպատուականն կանգնել գնշան խաչին | կանգնել զպատուական նշան խաչին[7] |

Ուրեմն 25 տողում 16 տարբեր ընթերցվածք, միայն մի ձեռագրում և բոլորն էլ ոճաբանական։ Սրանցից յոթը պատահում են նաև ուրիշ ձեռագիրներում, մնացած ինը բոլորովին նոր են այս մի պատառիկում։

Եթե 10-րդ դարից ոչ ուշ մի ձեռագիր այս մի քանի տո-

Տպագրի այլ ընթերցվածներ

1 ԱՃՎ$^2$ Նունի

2 ԽB սրբոյն։ gk Հռիփոիմէի։ Ll Հռիփսիմէ։

3 Խ առաջնորդի

4 Sl այսպիսի։ Ա միհրանայ։

5 Խ Վ$^2$ ել

6 Ա չիք նմա

7 ԱՃ զպատուականն կանգնել գնշան խաչին

ղում այսքան ինքնուրույն խմբագրական տարբերություններ է պարունակում, քանի՞ հազարավորներ պետք է եղած լինեին ամբողջ Պատմության մեջ 5—13-րդ դարերի բոլոր ձեռագրերում։ կարելի՞ է սրանից հետո պնդել, թե Խորենացու Պատմությունը նաև լեզվի ու ոճի կողմից մեր ձեռքն է հասել անաղարտ վիճակում։

Որ Խորենացու Պատմությունը մեր ձեռքը չէ հասել անաղարտ ձևով, այլ ենթարկվել է զանազան փոփոխությունների, ավելի նոր ժամանակի խմբագրություն է՝ այս միտքն անցյալ դարի 90-ական թվականներից սկսեց հետզհետե ընդհանրանալ և, կարծես, անվիճելի դարձավ։ Բավականանում եմ բերելով մի քանի վկայություններ։

Ն. Մառը «О начальной истории Анонима» հետազոտության մեջ (Византийский Временник, *1894*, II, *էջ 305)* գրում է. [Խորենացու Պատմության] «բովանդակության նկատմամբ էլ մենք չենք կարող համոզված լինել, թե [ձեռագրերի] պատվիրողները կամ ստացողները, տեղյակ գրիչներին հանձնարարելով իրենց համար Խորենացու Պատմության մի օրինակը պատրաստել... բավականանում էին լոկ խոսքերի կամ ֆրազների արտագրությամբ և չէ՞ին պահանջում՝ նաև բացատրել իրենց հետաքրքրող այս կամ այն պատմական հարցը։ Բացի սրանից՝ Մ. Խորենացու աշխատությունը, ինչպես քանիցս ցույց է տրվել, ծառայելիս է եղել իբրև պատմության դասագիրք. և իբրև դասագիրք, բնական է, որ նա պիտի լրացվեր ավելի ուշ ձեռք բերված տեղեկություններով։ Գործի այս կողմը բոլորովին չէ շոշափված, սակայն կան տվյալներ, որ այսպիսի հետազոտությունն ապարդյուն չի անցնի»։ Այստեղ Ն. Մառը ծանոթության մեջ հիշում է վերոհիշյալ իմ հոդվածը «Մուրճ»-ում և ասում է, թե այդ հոդվածում հավանականորեն բացատրվում է, որ Բ., 83 գլուխն ընդմիջարկություն է ԺԱ (? Ս. Մ.) դարի, իսկ որ տվյալ տեղում պակասում է Հայոց դարձի վերաբերյալ գլուխը՝ Ս. Մ. (ես) ապացուցում է բոլորովին համոզիչ կերպով։

Նույն Ն. Մառը Խալաթյանցի «Армянский эпос» հետազոտության քննության մեջ (Византийский Временник, *1898*, № 1, 2, էջ 4) ասում է. «Հետազոտության ենթակա հիշատակարանի մասին հազիվ թե երկու կարծիք կարողանան գոյություն

ունենալ—Խորենացու Պատմությունը մեր ձեռքը հասել է զգալի չափով աղճատված ու կարկատված դրությամբ»։ Նույն հատվածում, քիչ հետո (էջ 13), գրում է. «Ոճի հարցը բովանդակության հարցից խստորեն սահմանազատելը (разграничение) կարևոր է այն տեսակետից, որ միայն այս ճանապարհով կարող ենք վճռել այս հարցը, թե Մ. Խորենացու մեր ունեցած Պատմությունն արդյոք նորագույն խմբագրություն, այն էլ ոչ առաջին խմբագրություն չէ՞ հնագույն հիշատակարանի»։

Հ. Տաշյանը («Հանդէս Ամսօրեայ», 1902, էջ 1—2) շեշտելով Խորենացու Պատմության բնագրի ստուգման կարևորությունը, ասում է. «Բուն կարևորն էր բնագրին ուսումնասիրությունը, հնագույն և հարազատագույն ձևը որոշել կարելույն չափ, նախ ընթերցվածներուն հարազատության երաշխավորություն մ՚ունենալ։ Առանց ասոր,—որ ուրիշներեն ալ արդեն շեշտված է—վտանգ կա խնդիր ընելու ճշտիվ կետի մը վրա՝ որ թերևս մատենագրին (ով ալ ըլլա) գրչեն ամենևին չէր, այլ ընդհակառակն, ընդմիջարկյալ կտոր մը, ուշ ժամանակի գրչի մի փոփոխություն»։

Ն. Ադոնցը, քննադատելով Խալաթյանցի «Армянские Аршакиды» հետազոտությունը, գրում է. «Երկուսից մեկը — կամ Խալաթյանցի տված Խորենացու բնորոշումը ճիշտ չէ, կամ Սեղբեստրոսի Վարքից ամբողջ հատվածը[1] Հայոց Պատմության մեջ է ընկել Խորենացուց անկախ, իբրև ընդմիջարկություն։ Շատերն այն հիշատակարաններից, որ պ. Խալաթյանցն ընդունում է իբրև Խորենացու աղբյուրներ՝ կարելի է իբրև աղբյուր մերժել լոկ ընդհանուր, բանասիրական դատողությամբ»։ Այնուհետև այդպիսի աղբյուրների շարքում հիշում է Սոկրատին, Սեբեոսին, Ղևոնդին։ (Зап. Вост. отд. Р. Арх. общ, 1904, 159)։

Այսքանը բավական եմ համարում ցույց տալու համար, թե մեր ձեռքը հասած Խորենացու Պատմությունը հեղինակի գրած սկզբնագիր օրինակի պատճենը չէ, այլ որ այդ սկզբնագիրը ենթարկվել է խմբագրությունների, և այն ոչ մի անգամ, կրել է բազմատեսակ փոփոխություններ թե՛ բովանդակության կողմից—կրճատումներ, ընդմիջարկություններ, ուղղումներ, — և թե՛ լեզվի։ Դրանից հետևում է, որ այս ուշ ժամանակի խմբագրության հի-

---

[1] Ս. Մեսրոպի նկարագրությունն ըստ Սեղբեստրոսի Վարքի. Խոր., Գ., 67։

ման վրա չէ կարելի դատողություն անել սկզբնագրի և նրա հեղինակի ժամանակի մասին, չէ կարելի Պատմության մեջ որևէ ցիտատ կամ հիշատակություն գտնելով 6—8-րդ դարերից՝ եզրակացնել, թե ուրեմն Պատմությունը 6—8-րդ դարերից հետո է գրված, ինչպես անում են շարունակ մոտ 40—50 տարի։ Ընդհակառակը, երբ մենք հաստատուն ապացույցներ ունենք, թե Խորենացին ապրել և գրել է 5-րդ դարում, այս տեսակետին հակասող հակաժամանակագրական փաստերը պետք է բացատրենք հետագա ժամանակների ընդմիջարկություններով ու փոփոխություններով։ Այս է, իմ կարծիքով, Խորենացու առեղծվածը լուծելու միակ ուղիղ ճանապարհը, և այս ուղղությամբ պետք է շարունակվին այսուհետև հետազոտությունները։

Այժմ կդառնամ քննելու Խորենացու կենսագրության մի մութ կետի՝ նրա կրած հալածանքների պատճառը, որ շատ ավելի լայն նշանակություն ունի և շոշափում է հայ եկեղեցու և մտավորականության վիճակը 5-րդ դարի երկրորդ կեսում։

## Գ. ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ԵՂԵԼ Է ՔԱՂԿԵԴՈՆԱԿԱՆ (ԵՐԿԱԲՆԱԿ)

Որքան և օտարոտի հնչէ այս խոսքը, այնուամենայնիվ սա փաստ է, որին պետք է համոզվինք՝ սառնասրտությամբ և ուշադրությամբ քննելով Հայաստանի կուլտուրական ու կրոնական վիճակը 5-րդ դարում։

Ինչպես 4-րդ դարում, քրիստոնեություն ընդունելու ժամանակից սկսած, այնպես և ամբողջ 5-րդ դարում Հայաստանում շատ բացորոշ նկատվում են երկու հակամարտ մտավորական հոսանքներ—ասորական և հունական օրիենտացիաներ, որոնք միշտ մրցում են իրար հետ, երբեմն մեկն է ստանում գերակշռություն, երբեմն մյուսը։ Հայաստանի արևելյան բաժնի՝ Պարսկաստանին հպատակ լինելը անշուշտ դեր է կատարել այս հարցում, քանի որ Պարսիկները կասկածով էին նայում Հույների հետ Հայոց ունեցած հարաբերության վրա, բայց մրցությունը կատարվում էր գլխավորապես կուլտուրական ու կրոնական հողի վրա։ Գրիգորի գյուտի շրջանում, ուրեմն հենց 5-րդ դարի սկզբին, նկատում ենք, որ հայկական այբուբեն են ուզում հորինել Ասորի Դանիել

ծպիսկոպոսի մոտ գտնված այբուբենից, որ թյուրիմացաբար հա-
մարել են հնուց մնացած հայկական այբուբեն։ Երբ այս փորձն անհաջող է անցնում, Մեսրոպ Մաշտոցը Ասորիք է գնում, ասորի գիտնականների հետ խորհրդակցելու գրերի գյուտի մասին։ Խորենացու բերած երկու նամակները, որոնցով Հունաց կայսրն ու պատրիարքը մեղադրում են ս. Սահակին, որ սա արհամարհելով Հունաց գիտնականներին, աննշան ասորիների օգնությամբ է կամեցել Հայոց այբուբենը հոգալ՝ անշուշտ վավերական չեն, բայց ճիշտ արձագանք են Խորենացու, և ոչ միայն Խորենացու, մտածողության։ Աշակերտներին ասորերեն և հունարեն սովորելու համար ուղարկում էին Ասորիք։ Ս. Գրքի առաջին թարգմանությունը կատարվեց ասորերենից. աշակերտներին Ասորիք էին ուղարկում թարգմանություններ անելու. նույնիսկ Եվսեբիոսի Եկեղեցական պատմությունը փոխանակ հունարեն բնագրից թարգմանելու, թարգմանել են ասորական թարգմանությունից։ Եկեղեցու նվիրապետության մեջ էլ նկատում ենք, որ ս. Սահակի կաթողիկոսությունից հեռացած միջոցին երկու կաթողիկոս նշանակվում են ասորիներից։

Բայց այս բացարձակ ասորասիրական քաղաքականությունն այնքան էլ հաճելի չէր նոր ուսանող սերնդին, որ ձգտում էր դեպի Բյուզանդիոն, և մյուս կողմից հանդիպում էր Հունաստանի վճռական դիմադրության։ Հունաստանի բյուզանդական կառավարությունն արգելեց Հայաստանի հունական բաժնում նորագյուտ ազգային այբուբենը սովորեցնել և ժամերգությունը հայերենի վերածել։ Հարկ եղավ Մեսրոպին ուղարկել Բյուզանդիոն այս արգելքները վերացնելու համար, որ և աջողվեց նրան, բայց, իհարկե, ոչ առանց իրենց կողմից զիջում անելու — ասորականի փոխարեն հունական օրիենտացիա ընդունելու պարտավորության։ Այսպիսի զիջման արտահայտություն պետք է համարել նախ՝ ս. Գրքի ասորերենից եղած թարգմանությունն ուղղել ու նորոգելն ըստ հունական բնագրի, և երկրորդ՝ որ թարգմանիչները և ուսանող աշակերտությունն այնուհետև ուղարկվում էին ոչ թե Ասորիք, այլ Հունաստան—Բյուզանդիոն, Ալեքսանդրիա։

Կրոնական պատերազմի ժամանակ, երբ կրոնն ու եկեղեցին ենթարկված էին վտանգի՝ այս երկու հոսանքների մրցությունն

ըստ երևույթին դադարում է, և ամբողջ հոգևորականությունը միաբանում է՝ ժողովրդին և նախարարներին պատրաստելու ընդդեմ Հազկերտի պահանջի, զենքի ուժով պաշտպանելու քրիստոնեական կրոնը: Բայց երբ պատերազմը և նրա բերած արհավիրքները վերջացան, 5-րդ դարի երկրորդ կեսում՝ տեսնում ենք, որ հունա-ասորական մրցությունն ու պայքարը դարձյալ երևան են գալիս: Հունասերների շրջանն արտադրեց Ագաթանգեղոսի անունը կրող Հայոց դարձի պատմությունը, որի մեջ հունական օրիենտացիան իր գագաթնակետին է հասցված: Հայաստանի լուսավորիչ Գրիգորը Կեսարիայում սնված, հունական ոգով դաստիարակված, հունախոս մի քարոզիչ է. նա եպիսկոպոսական ձեռնադրություն է ստանում Կեսարիայի արքեպիսկոպոսից, այնպես որ Հայաստանի հոգևոր նվիրապետությունը ենթարկվում է մի հունական մետրապոլիտության, որից, ըստ պայմանի, պարտավորվում են այնուհետև ձեռնադրություն ստանալ Հայաստանի եպիսկոպոսապետները: Հռիփսիմյան կույսերն էլ, որոնք իրենց մարտիրոսական արյունով պսակեցին Հայոց եկեղեցին՝ դարձյալ Հունաստանից էին եկել:

Հունասիրության այս գրական հիշատակարանի հանդեպ լուռ չմնացին ասորական օրիենտացիայի հետևողները: Մեկը մյուսի հետևից երևան եկան 1. Լաբուբնայի Պատմության հայերեն թարգմանությունը, որի վերջում ասված է, թե Թադեոս առաքյալը, Եդեսիայում ժողովրդին օրհնելուց հետո, ուղևորվեց Արևելք (ասորական բնագրում ասված է, թե առաքյալը ժողովրդին օրհնելուց հետո վախճանվեց Եդեսիայում). 2. Վկայաբանություն ս. Թադէոս առաքելոյ և Սանդխտոյ կուսին, որտեղ «Արևելք» եկած առաքյալը քարոզում է, դարձի է բերում Սանատրուկ թագավորի դուստր Սանդուխտին, երկուսն էլ նահատակվում են, և 3. Վկայաբանութիւն ս. Բարթողիմէոսի առաքելոյ, որ Հայաստանում հանդիպում է Թադեոսին և նույնպես նահատակվում Սանատրուկից:

Այս երկու գրվածքները, որոնք սկիզբ են առնում Ասորիքից՝ նպատակ ունեին նսեմացնելու Կեսարացի քարոզիչ Գրիգորին, նրա տեղ դնելով երկու նահատակված առաքյալ, որ, սակայն, չհաջողվեց: Որ այս գրությունները Ագաթանգեղոսից հետո են թարգմանված կամ գրված՝ երևում է նրանից, որ Ագաթան-

գեղոսում, Գրիգորի ընդարձակ վարդապետության մեջ, ոչ մի անգամ չեն հիշված ոչ Թադեոսը և ոչ Բարթուղիմեոսը, չնայելով, որ շատ հարմար տեղեր կային հիշելու, և անկարելի էր, որ Գրիգորը կամ վարդապետության հեղինակը (ինչպես ենթադրում են՝ Մեսրոպը) մոռանային հայ ժողովրդին հիշեցնել նրա նախկին երկու լուսավորիչներին, եթե իրոք այդ առաքյալները Հայաստանում քարոզած ու այնտեղ նահատակված լինեին։

Այս գրական-իշխական մրցությունը, զուգե խառն նյութական և փառասիրական ձգտումների հետ, ավելի խորացավ, բացարձակ թշնամության, փոխադարձ մեղադրանքների ու հալածանքների վերածվեց, երբ նախկին պատճառների վրա ավելացավ դավանաբանական տարբերությունը, որին առիթ տվեց Քաղկեդոնի ժողովը իր հայտնի բանաձևով — երկու բնություն դավանելով Քրիստոսի մեջ (յերկուս բնութիւնս)։ Ինչպես հայտնի է, այս բանաձևն առաջ բերեց երկպառակություն, փոխադարձ նզովքներ՝ նույնիսկ ժողովին մասնակցող եպիսկոպոսների մեջ, և հետագայում ալեկոծեց քրիստոնյա եկեղեցին և հերձված առաջ բերեց նրա անդամների մեջ։ Ոմանց կողմից այն ընդունվեց, մյուսների կողմից մերժվեց։ Բյուզանդիոնը և Հռոմն այս բանաձևի կողմնակիցներն էին (երկաբնակներ, քաղկեդոնականներ), իսկ Արևելքը — Ալեքսանդրիան, Եփեսոսը, Անտիոքը, որի թեմի մեջ էր մտնում և Ասորիքը՝ հակառակ դուրս եկան բանաձևին (միաբնակներ, հակաքաղկեդոնականներ)։

Հայոց եկեղեցին Քաղկեդոնի ժողովում պաշտոնական ներկայացուցիչ չուներ և, իբրև ինքնագլուխ եկեղեցի՝ ազատ էր նրա մշակած բանաձևն ընդունելու կամ չընդունելու։ Մենք տեսնում ենք, որ ավելի քան հիսուն տարի Հայոց եկեղեցին պաշտոնական դիրք չէ բռնել Քաղկեդոնի դավանանքի վերաբերմամբ, ոչ հարել է նրան պաշտոնապես և ոչ մերժել պաշտոնապես, և միայն 508 թվին, Բաբգեն կաթողիկոսի օրով, Քաղկեդոնի ժողովից 57 տարի հետո, երբ Պարսկաստանում ապրող ասորիները նեստորական ասորիներից նեղվելով, դիմեցին Հայոց եկեղեցուն, իբրև իրենց հովանավորի, և խնդրեցին բացորոշ կերպով արտահայտվել Քաղկեդոնի դավանության նկատմամբ՝ առաջին անգամ Հայոց եկեղեցին արտահայտվեց ընդդեմ Քաղկեդոնի, այն էլ շատ երկդիմի կերպով, ինչպես կտեսնենք։

Միամտություն կլիներ կարծել, թե Քաղկեդոնի ժողովի հարուցած աղմուկը աստվածապահ Հայաստանը չշոշափեց։ Այն փոթորիկը, որ Քաղկեդոնից փրթավ և ալեկոծեց ամբողջ քրիստոնյա աշխարհը, Հռոմից մինչև Պարսկաստան, մինչև Ալեքսանդրիա, չէր կարող չհուզել և Հայաստանը։ Հայաստանում տիրապետող երկու մտավոր հոսանքները, ասորականը և հունականը, չէին կարող անտեղյակ և անտարբեր մնալ Քաղկեդոնում հարուցված այն մեծ վեճի նկատմամբ, որով բռնված էր ամբողջ քրիստոնյա աշխարհը 5-րդ դարի երկրորդ կեսում և հաջորդ դարերում, և այս կամ այն դիրքը չբռնել այդ վեճի վերաբերմամբ։ Մեր եկեղեցական գրականության մեջ այս շրջանում քաղկեդոնական կռիվների մասին հիշատակություն չկա, և դրությունն այնպես է պատկերացվում, իբրև թե հայերը Քաղկեդոնի ժողովի ժամանակ զբաղված էին կրոնական պատերազմով. շուտով վրա են հասնում եպիսկոպոսների և ականավոր այլ հոգևորականների ձերբակալումը Տիզբոնում, բանտարկությունն ու նահատակությունը։ Հայերն այս պատճառով «Բյուզանդիո և Քաղկեդոնի անցքերով չէին կարող հետաքրքրվել և ոչ տեղեկություն կրնային ունենալ»... «մտածելու իսկ չէր, որ հայերը կամենային Քաղկեդոնական խնդիրներով զբաղվել, բայց եթե զբաղվեին ալ՝ հակաքաղկեդոնիկ որոշումներ պիտի տեսնեին քրիստոնյա եկեղեցիներու կողմե» («Ազգապատում», էջ 495—6), և «Քաղկեդոնական խնդիրը մինչև Բաբգեն կաթողիկոսի ժամանակ Հայոց համար գոյություն չուներ» (անդ., էջ 491)։

Բայց իրոք այսպես չէ եղել։ Հայոց եկեղեցին ավելի քան հիսուն տարի հիրավի որոշ դիրք չէ բռնել Քաղկեդոնի բանաձևի նկատմամբ, բայց դա նրանից չէ, որ այս հարցը նրա համար գոյություն չէ ունեցել, այլ նրանից, որ բուռն պայքար է եղել մղվելիս Հայաստանում երկու հզոր բանակների միջև, և եկեղեցին տատանվելիս է եղել, չէ վստահացել պայքարող բանակներից մեկի կամ մյուսի կողմն անցնել, կասկածելով, որ դժգոհ կողմը կարող է անջատվել եկեղեցու միությունից, կարող է ներքին հերձված ծագել։ Խորենացու Ողբն ու մի երկու ուրիշ ակնարկությունները և Փարպեցու Թղթի մեջ բերված տեղեկությունները ոչ մի կասկած չեն թողնում այս մասին, թեև դժբախտաբար մինչև այժմ նկատի չեն առնվել իբրև աղբյուր 5-րդ դարի

*երկրորդ կեսում մեր եկեղեցու ներքին պատկերը նկարագրելու համար։ Ողբի հենց սկզբում Խորենացին շատ բացորոշ ասում է. «Ողբամ զքեզ, Հայոց աշխարհ... զի բարձաւ թագաւոր եւ քահանայ, խորհրդական եւ ուսուցող.* վրդովեցաւ ուղղափառութիւն, կայկայեցաւ տգիտութեամբ չարափառութիւն»: *Շարունակության մեջ ասում է. «Այժմ* մարտք ի ներքուստ, *և արհավիրք արտաքուստ, արհաւիրք ի հեթանոսաց եւ* մարտք ի հերձուածողաց»: *Ողբալով իր մեծ ուսուցիչ Սահակի մահը՝ Խորենացին բացագանչում է. «Ո՞վ կարկեսցէ զյանդգնութիւն* ընդդէմ առողջ վարդապետութեան հակառակ յարուցելոցն». *չկա այլևս իր հայրը և քահանայապետը, որ* «սանձահարէր զլեզուս օտարաձայնս»: *Բ. գրքի վերջին գլխում իր կրած զրկանքները նկարագրելիս ի միջի այլոց ասում է. «Թողից զայլն, զի եւ ոչ* զլեզուս չարս եւ զտգիտութիւնս ... սանձահարեցէք, *այլ նիւթ նոցա անմտութեան զձեր ուսումնատեացդ տալով բարս՝ բորբոքեցէք առաւել քան զհնոցն Բաբելոնի»։*

*Առայժմ թողնում եմ Փարպեցու վկայությունները։ Ի՞նչ ուղղափառության և չարափառության մասին է խոսում Խորենացին, ովքե՞ր են այն հերձվածողները, որ ներքին պատերազմ են մղում, ովքե՞ր են այն օտարաձայն և չար լեզուները, որոնք հանդգնում են առողջ վարդապետության (ուղղափառության) դեմ մաքառել և որոնց զսպելու համար չկա մի հեղինակավոր անձ։ Ոչ մի կասկած չէ կարող լինել, որ այստեղ խոսքը վերաբերում է միայն քաղկեդոնական վեճերին, քաղկեդոնականներին ու հակաքաղկեդոնականներին։ 5-րդ դարի երկրորդ կեսում ամբողջ քրիստոնյա աշխարհն զբաղված էր քաղկեդոնական վեճերով,— ուրիշ աղանդների մասին հիշատակություն չկա,— և Հայաստանում էլ այս ժամանակները չէ հիշվում որևէ այլ աղանդ, որ կարողանար սասանեցնել երկիրը, վրդովեր ուղղափառությունը, հիմնավորվեր երկրում և պատերազմեր ուղղափառների դեմ։ Ուրիշ կերպ անկարելի է հասկանալ վերոհիշյալ խոսքերը՝ քան եթե վերագրելով քաղկեդոնական — հակաքաղկեդոնական պայքարին։*

*Եթե այս այսպես է, ապա անմիջապես հարց է ծագում, թե ինչ է ակնարկում Խորենացին «ուղղափառություն» և «չարափառություն» բառերով, ու՞մ է նա ճանաչում ուղղափառ, և ու՞մ չարափառ, չար, օտարաձայն լեզու։*

Այս հարցերին պատասխան տալիս է Հայաստանի իրականությունն ինքը։ Քանի որ Հայաստանում վաղուց մրցում էին երկու մտավոր ու կրոնական հոսանքներ՝ ասորական և հունական՝ ուստի Քաղկեդոնի դավանաբանության շուրջը պայքարը պետք է մղվեր այս երկու հոսանքների միջև։ Կասկածից դուրս է, որ ասորական հոսանքը հակաքաղկեդոնիկ էր, ուրեմն քաղկեդոնիկ պետք է լիներ հունական հոսանքը, որի գլխավոր գործիչներից մեկը, գուցէ պարագլուխն էր ինքը՝ Խորենացին։ Սրանից հետևում է, որ Խորենացին ուղղափառ կոչում է իր դավանությունը, այսինքն քաղկեդոնականությունը, որի դեմ կռվողներին, ասորական հոսանքին պատկանող հակաքաղկեդոնականներին, կոչում է հերձվածողներ, իսկ նրանց դավանությունը՝ չարափառություն։ Այլապես էլ չէր կարող լինել։ Եթե իրոք Հայաստանում 5-րդ դարի երկրորդ կեսում պայքար էր մղվում քաղկեդոնական հարցի շուրջը, իսկ ասորական հոսանքը, անկասկած, հակաքաղկեդոնական էր, ապա քաղկեդոնական պետք է լինեին հունական հոսանքին պատկանողները, հատկապես նրանք, որոնք Հունաստանում ուսում էին առել և ընդհանուր անունով կոչվում էին Թարգմանիչ, քերթող։ Հայտնի է, որ քաղկեդոնականության ամրոցը Բյուզանդիայում էր գտնվում, չնայելով, որ հենց Բյուզանդիայում մի քանի կայսրներ դուրս եկան այդ դավանաբանության դեմ. իսկ Արևելքն առհասարակ հակաքաղկեդոնական էր։ Այնպես որ Հայաստանի քաղկեդոնիկներն իրենց իդեական սնունդը կարող էին ստանալ Բյուզանդիայից, որտեղ ուսում էին առնում և որի հետ շարունակ շփման մեջ էին։

Հակառակ մեկնությունը տալը Խորենացու խոսքերին, այսինքն ենթադրել, թե նա ուղղափառ է կոչում, մեր այժմյան հասկացողությամբ, հակաքաղկեդոնիկներին, իսկ չարափառ ու հերձվածող՝ քաղկեդոնիկներին, անկարելի է։

Արդարև, եթե ասորական շրջանը հակաքաղկեդոնական էր (որի մասին վեճ չէ կարող լինել), և եթե Խորենացին էլ, հունական շրջանի անդամն ու ներկայացուցիչը, նույնպես հակաքաղկեդոնական լիներ, այդ դեպքում Հայաստանի երկու գլխավոր մտավոր հոսանքներն էլ հակաքաղկեդոնական դուրս կգային։ Ուրեմն ուրիշ ինչ երրորդ մտավոր հոսանք կամ շերտավորում պիտի լիներ Հայաստանում, որ հարած լիներ քաղկեդոնականու-

թյան, և այնքան զորեղ լիներ, որ կարողանար վրդովել միացած ասորա-հունական հոսանքների ուղղափառությունը և, հիմնավոր-վորվելով (կայկայվելով)՝ մարտ մղեր այս երկու ուժեղ խմբերի դեմ։ Մեր ոչ քաղաքական և ոչ էլ եկեղեցական պատմության մեջ այսպիսի շերտավորման՝ հզոր հոսանքի որևէ հետք չենք նկատում այս ժամանակ։ Դարձյալ՝ եթե Խորենացին էլ՝ ասորական խմբի նման, հակաքաղկեդոնական լիներ, ապա անհասկանալի կդառնար Խորենացու կրած հալածանքն իր դավանակից ասորական խմբի կողմից, որ նրա գրվածքները կոչում էր բյուր, աղճատված, ինչպես իսկույն կտեսնենք։ Սրանից հետևում է, թե Խորենացու «ուղղափառություն» և «չարափառություն» բառերին չէ կարելի ուրիշ մեկնություն տալ, քան ես տվի, այսինքն, որ Խորենացու համար ուղղափառությունը եղել է քաղկեդոնականությունը, իսկ չարափառություն՝ հակաքաղկեդոնականությունը։ Վերջապես Խորենացու «մարտք ի հերձուածողաց» խոսքը կարող է վերաբերվել միայն հակաքաղկեդոնականներին, որոնք հերձված կազմեցին, այսինքն անջատվեցին ընդհանուր քրիստոնեական եկեղեցուց՝ մերժելով ընդունել տիեզերական ժողովի սահմանած դավանաբանությունը։

Հակաքաղկեդոնական, այսինքն ասորական հոսանքն ուժեղ էր իր ստվարությամբ, իսկ քաղկեդոնական, այսինքն հունական հոսանքը՝ իր մտավոր ավելի բարձր զարգացմամբ. այս պատճառով էլ վերջիններս իրենց հակառակորդներին միշտ կոչում են տգետ,—Խորենացին ասում է. «Կայկայեցաւ տգիտությամբ չարափառութիւն»... «Ոչ գլեզուս չարս եւ տգիտութիւն սանձահարեցէք»... «Ըստ այժմուցս ի դեպ, ուր բազում խօսողք աստուածայնոցն, եւ զօրութեան մտացն ոչ հասուք» (Բ., 92), «Նիւթ նոցա անմտութեանն գձեր ուսումնատեացդ տալով բարս»։ Փարպեցին ասում է. «Աբեղեանդ Հայոց զլուսաւորիչն (զփիլիսոփոսն Մովսէս) զտգիտահալած գրեանն նորա առ անգիտութեան փաթաղ-իկէս կոչէին»։

Հակաքաղկեդոնիկների տգիտության այս շեշտումը հասկանալի է դառնում՝ եթե նկատի ենք առնում քաղկեդոնական դավանաբանության խիստ նուրբ բանաձևը, որը միջակ կրթության տեր անձն ըմբռնել անկարող էր։ Քրիստոսի մեջ երկու բնություն դավանելու միտքը երկու ձևով էր արտահայտվում—«յերկուս

բնութիւնս» (в двух естествах), և «յերկուց բնութեանց»
(о двух естествах)։ Առաջինը Քաղքեդոնում ճանաչվեց ուղղա-
փառ, երկրորդը՝ չարափառ[1]։ Ուստի հունական հոսանքին պատկա-
նող, Բյուզանդիայում ուսած ու զարգացած քաղկեդոնիկ հայերը
մեղադրում են հակառակորդներին, թե նրանք ագիտաբար չեն
կարողանում ըմբռնել տարբերությունն այս երկու բանաձևերի
միջև, ուստի և հակառակում են քաղկեդոնական դավանաբանու-
թյան՝ նրան չհասկանալով։

Ապա ուրեմն Մովսես Խորենացին համոզմունքով քաղկեդո-
նական էր և իբրև այդպիսին, հալածանքի էր ենթարկվել հակա-
կառակորդ ուժեղ հակաքաղկեդոնիկ ասորական խմբի կողմից։
Շատ բնորոշ է նրա կրած հալածանքների նկարագրությունը
Ղ. Փարպեցու կողմից։ «Երանելի փիլիսոփոսն Մովսէս... ոչ ապա-
քէն ի տեղւոջէ ի տեղի աբեղեանն հայոց հալածական արարին. ոչ
զլուսաւորիչն եւ զագիտահալած գրեանն նորա առ ագիտութեան
փաքաղ-իկէս կոչէին»։ Խորենացուն հալածող հոգևորականներին
նա խմբական անունով կոչում է աբեղայական խումբ, ասորերեն
աբեղա բառով (ուրիշ դեպքերում նա գործ է ածում «կրոնավոր»,
«պարեգոտավոր» բառերը)։ Փաքաղ-իկէս նույնպես ասորական բա-
ռեր են, որոնք նշանակում են թյուր. աղճատված, աղավաղված[2]։
Պարզ է, որ այս ասորական բառերը կգործածեին ասորի աբեղա-
ները, կամ նրանց հարած հայերը, նրանց հետևելով։ Ուշադրու-
թյան արժանի է դարձյալ, որ Ղազար Փարպեցին Մովսես փի-
լիսոփոսին կոչում է լուսավորիչ, իսկ նրա գրվածքները՝ ագի-
տահալած։ Ուրեմն Խորենացին գրել է ագիտությունը (հակա-
քաղկեդոնականների ագիտությունը, որը վերը հիշեցի) հալա-
ծող գրվածքներ և դրանցով լուսավորել է մտքերը։ Բայց
այս ագիտահալած գրվածքները, որոնց մեջ ջատագոված է
եղել քաղկեդոնական դավանաբանությունը, մեր ձեռքը չեն հասել.
Հայոց եկեղեցին հաջորդ դարերում խնամքով ոչնչացրել է «զա-
հաւոր նզովք գրով ի վերայ դլխաւորաց քահանայութեանդ ասա-

---

[1] Քաղկեդոնի ժողովի ատյանում մեղադրված Դիոսկորոսը հայտնեց, թե ճանաչում է Քրիստոսին «յերկուց բնութեանց», բայց մերժեց ընդունել «յերկուս բնութիւնս» բանաձևը, որ Քաղկեդոնում ընդունված էր։

[2] Ն. Մառ—О начальной истории Армении Анонима, էջ 301, ծանոթ.

ցեալ», (ըստ Փարպեցու վկայության), ինչպես և ուրիշ քաղկեդոնական ոգով գրվածքները և դրանց փոխարեն կեղծել է մի գրվածք Մովսես Խորենացու անունով՝ քաղկեդոնականության դեմ։

Ուրեմն Խորենացին բուռն պայքար էր մղում հակառակորդ, հակաքաղկեդոնիկ տարրական խմբի դեմ. Նրանցից հալածվում էր տեղից տեղ, կրում էր զրկանքներ, ապրում էր աղքատության մեջ[1], բայց չէր դադարում գրով կռվել նրանց դեմ, նրանց «ապիրատությունը» նշավակել և ուղիղ դավանությունը (քաղկեդոնականությունը) պաշտպանել։ Որքան հզոր էին հակառակորդներն իրենց սովորությամբ և գրաված դիրքերով, այնքան էլ նա հզոր էր իր հանճարով և աննկուն կամքով։ Նա չընկճվեց, ընդհակառակը, կյանքի վերջին տարիներում ապահով ու փառավոր դիրք ստացավ և փայլեց իբրև ամենահեղինակավոր դրական դեմքը 5-րդ դարի վերջերում, ինչպես զգացվում է նրա Պատմության շատ էջերում։

Ի՞նչպես առաջ եկավ այս հանկարծակի փոփոխությունը։ Ղ. Փարպեցին վկայում է, թե այս փիլիսոփա Մովսեսին, երկար ժամանակ հալածելուց ու թշնամանելուց հետո՝ «պապս յաղագս այլոց ամօթոյ զխաբէական զեպիսկոպոսութիւնս նման գեղոց մահու արբուցեալ սրբոյն հեղձուցին», — որ ես այս մտքով եմ հասկանում, թե խաղք ու խայտառակություն էին այնպիսի հոչակավոր գիտնականին հասցրած հալածանքն ու նախատինքները. ամոթից ստիպվեցին եպիսկոպոսութիւն տալ նրան, որպեսզի սրանով նրա բողոքի ձայնը կտրեն։ Այս վկայությունը համապատասխանում է հնուց մնացած մի սրտառուչ գրավոր ավանդության, թե Գյուտ կաթողիկոսը, երկրում շրջագայելիս, մի գյուղում պատահում է անհայտության մեջ կորած Մովսեսին՝ ծերունի հասակում, ճանաչում է իր վաղեմի դպրոցական ընկերոջը, համբուրում է նրան և հետը տանելով՝ ձեռնադրում է Բագրևանդի և Արշարունեաց եպիսկոպոս։ Հալածանքների դադարումը և եպիսկոպոսական ձեռնադրությունը բնական կերպով բացատրվում են. Գյուտ կաթողիկոսն ինքն էլ Հունաստանում էր ուսում առել, հունական օրիենտացիա ուներ, որի համար հալած-

---

[1] Բ. գրքի 92-րդ գլխում նա դառնապես գանգատվում է. «Եթէ ընդ սուրբս աստուծոյ... այսպէս է, զի՞նչ մեր բանս առ աստուծոյ յաղագս ի ձէնջ վտանգիցս, որոց վտանգք եւ աղքատութիւն սեպհական է»։

վում էր Պարսիկներից, և Քաղկեդոնի բանաձևին համակրող. գոնե համբերատար էր, ուրեմն և ոչ մի արգելք չէր գտնում Մովսեսին եպիսկոպոս ձեռնադրելու, որով թե հանգստացրած ու պատված կլիներ ծերունի քերթողահորը (որ Գյուտի կաթողիկոսության տարիներում, 461—470 թ. թ., 50—60 տարեկան էր) և թե հասարակական կարծիքը բավարարած, խաղք ու խայտառակությանը վերջ դրած։

Բայց պայքարն անձնական չէր, նա Խորենացով չվերջացավ, այլ շարունակվեց նրա եպիսկոպոսության ժամանակ և նրա մահից հետո էլ։ Ղ. Փարպեցու՝ Թղթում, Խորենացու մահվան հիշատակությունից հետո, ձեռագրում մի թուղթ է ընկած. ընդմիջումից հետո թուղթը շարունակում է թվարկել աբեղաների կողմից հալածանքների ենթարկված ուրիշ անձեր, որոնցից մեկի (որի անունը կորած թղթի մեջ է եղել) ոսկորները գերեզմանից հանել են և գետը թափել։ Հրեշտականման Տերին անհանդիստ հալածանքներով մահացրել են. Խոսրովիկը արտասահմանից վերադառնալիս, դեռ մեր երկրի սահմանը ոտք չէ եղել դրած, երբ լսում են, թե գալիս է, զինվում են իբրև թշնամու դեմ, ասելով. «Ահա ո՞ւր գայ միւս եւս թարգմանն», և երանելին հենց արտասահմանում էլ մեռնում է։ Ո՜րքան ուրիշ նոր անուններ ու նոր հալածանքների փաստեր է եղել պարունակելիս այդ ընկած թուղթը (արդյոք ընկած, թե դիտմամբ պոկած, խայտառակ փաստերի փաստաթուղթը ոչնչացնելու, քաղկեդոնակա՛ն պայքարի հիշատակն անհետացնելու նպատակով)։

Բայց այս պայքարի գոյության ապացույցներն իսպառ ոչնչացնել հնարավոր չեղավ։ Նրանք երևան են գալիս այնպիսի տեղերում, որտեղ ամենից քիչ սպասելի էր — հենց Հայոց եկեղեցու վավերական թղթակցությունների մեջ։ Ես նկատի ունեմ Բաբգեն կաթողիկոսի երկու պաշտոնական գրությունները դավանաբանական հարցերի մասին, որոնք մուծված են «Գիրք Թղթոց»-ի մեջ։ Վերևում հիշեցինք, որ Պարսկաստանում բնակած ասորիները, նեստորական ասորիներից նեղվելով՝ դիմել էին Հայոց եկեղեցուն՝ պաշտպանություն խնդրելով։ Եկեղեցական ժողովը, որ գումարված էր 506 թվին և որին մասնակցում էին, բացի Բաբգեն կաթողիկոսից, 20 եպիսկոպոս և 14 նախարար, միաբան հավանությամբ մի թուղթ գրեց, որի մեջ Քաղկեդոնի

ժողովի և դավանության մասին ոչ մի խոսք չկա, այլ խոսվում է Նեստորի և նեստորականների մասին։ Այս թղթին հավանություն են տվել բոլոր մասնակից եպիսկոպոսներն ու նախարարները, որոնց անունները թղթի մեջ հանվանե հիշված են։ Բայց այս թուղթը պարսկարնակ ասորիներին բավարարություն չտվեց. նրանք հայտնեցին, թե նեստորականներն իրենց մոլորության վրա պնդում են. «Ի ժողովոյն Քաղկեդոնի զօրացեալ», այնպես որ Հայոց եկեղեցին, մոտ 508 թվին, առաջին անգամ, ստիպված է լինում պաշտոնապես հրապարակով հայտնել իր վերաբերմունքը դեպի Քաղկեդոնի բանաձևը։ Եվ Բաբգեն կաթողիկոսը գրում է երկրորդ թուղթը, որի մեջ սակայն չէ մերժում, չէ նզովում Քաղկեդոնի ժողովը և Լևոն պապի տոմարը, ինչպես հետագայում լինում է շարունակ, այլ պարունակում է այսպիսի դարձվածք. «Փախչիմք ուրացեալ զ՚ի Քաղկեդոնին ստութիւն Նեստորի եւ այլոց նմանից»: Հայոց եկեղեցու այս առաջին պաշտոնական հայտարարությունը Քաղկեդոնի նկատմամբ աչքի է ընկնում իր անորոշությամբ և երկիմաստությամբ։ Նա այնպես է ձևակերպված, որ կարելի է երկու կերպով էլ հասկանալ. 1. փախչում ենք, ուրանում ենք Քաղկեդոնի ստությունը, որի վրա հիմնվում են Նեստորն ու նրա նմանները, և 2. փախչում ենք, ուրանում ենք Նեստորի և նրա նմանների ստությունը, որոնք հիմնվում են Քաղկեդոնի վրա։ Առաջին բացատրությամբ Քաղկեդոնի դավանաբանությունը սուտ է և խորշելի, երկրորդ բացատրությամբ՝ Քաղկեդոնի դավանաբանությունը սուտ չէ, բայց սուտ են Նեստորն ու նմանները, որոնք այդ դավանաբանության վրա են հիմնվում, այսինքն նրանից սխալ եզրակացություններ են հանում։ Չնայելով թղթի այս երկդիմության, կամ գուցե հենց այդ երկդիմության պատճառով, թղթին հավանություն են տվել, բացի կաթողիկոսից ու մարզպանից, միայն մի եպիսկոպոս և մի նախարար, ավելացնելով անորոշ կերպով՝ «եւ այլոց եպիսկոպոսաց, որք ըստ տանց, եւ յամենայն ազատաց, մեծամեծաց եւ փոքունց»։ Ի՞նչ են նշանակում այս երկդիմի հայտարարությունը, ստորագրությունների բացակայությունը, անորոշ կերպով «այլոց եպիսկոպոսաց» հիշատակությունը, եթե ոչ այն, որ հենց այս ժողովում էլ քաղկեդոնական հարցի մասին միաբանություն չկար ժողոված եպիսկոպոսների ու նախարարների միջև, ուստի ընտ-

քել են այնպիսի մի բանաձև, որին երկու կողմն էլ կարողանային համաձայնել (տարբեր տեսակետներից), և անորոշ «այլոց եղխկոպոսաց» բառերով Թղթին համաձայնողների թիվն ավելացնել, առանց սրան կամ նրան հանվանե հիշելու և պատասխանատու դարձնելու։

Որ Հայաստանում 5-րդ դարի երկրորդ կեսում գոյություն են ունեցել հերձվածներ, և հատկապես, որ Մովսես Խորենացին քաղկեդոնական է եղել՝ այս մասին ունինք վկայություն նաև վրացական աղբյուրներից։ Ինչպես վերը տեսանք (էջ 105)՝ Վրաց Արսեն կաթողիկոսը, 9-րդ դարում, երկու անգամ հիշատակում է Մովսեսին։ Մի անգամ ասում է, թե Կոմիտաս կաթողիկոսը կեղծեց հերձվածողական (այսինքն հակաքաղկեդոնական) գրվածքներ ու վերագրեց ուղղափառ վարդապետների, սուրբ Սահակին ու Մովսեսին, իբրև թե սրանք են գրել։ Երկրորդ անգամ ասում է, թե Մովսեսը նախազգուշացրեց հերձվածողներին նրանց կործանումը, բայց նրան լսող չեղավ։

Եթե մի քաղկեդոնական կաթողիկոս ուղղափառ վարդապետ է կոչում Մովսես Խորենացուն, երբ նա վկայում է, որ Մովսեսը նախազգուշացրեց մոլորված կամ հերձվածող հայերին՝ պարզ է, որ նա Մովսեսին ևս ճանաչում է իրեն նման, այսինքն՝ քաղկեդոնական։ Ոչ մի կասկած չկա, որ այս վկայությունը ճիշտ է. անկարելի է ենթադրել, որ Արսեն կաթողիկոսը մի չարափառ (հակաքաղկեդոնական) վարդապետի կեղծելով ուղղափառ դարձներ, մանավանդ որ մեր ձեռքին բարեբախտաբար կա Արսեն կաթողիկոսի հիշած այն կեղծ Թուղթը, որ Կոմիտաս կաթողիկոսն և Հոհան Մայրագոմեցին հորինել են երկաբնակների դեմ և վերագրել Մովսես Խորենացուն։ Եթե Խորենացին հայ ուղղափառ լիներ, այսինքն միաբնակ, այս դեպքում երկաբնակների դեմ ուղղված Թուղթը կեղծ չէր լինի, այլ հարազատ նրա գրածը։ Թուղթը կեղծել ու Խորենացուն են վերագրել երկու նպատակով. նախ՝ այնպիսի մի նշանավոր ու հեղինակավոր մատենագրի վրայից երկաբնակության, այսինքն հերձվածողության արատը վերացնել և նրան ուղղափառ հայ (միաբնակ) ներկայացնել, և երկրորդ՝ նրա բարձր հեղինակությամբ, նրա անունը կրող կեղծ Թղթով կռվել երկաբնակների դեմ։ Նրանք հաշվում էին, որ Մովսեսի մահից հետո, 120—130 տարվա ընթացքում, հազիվ մնացած լինի

հիշողություն նրա քաղկեդոնականության մասին, իսկ այս կեղծ թուղթը կպապանձեցներ որևէ կասկած հայտնողի բերանը։ Որ այս թուղթը կեղծ է՝ հայտնի է նրանից, որ պարունակում է մի հատված և հատուկ բառեր ու դարձվածքներ Տիմոթեոս Կուզի Հակաճառության հայերեն թարգմանությունից[1], և լեզվով ու ոճով բոլորովին օտար է Խորենացու լեզվին ու ոճին։ Նրա կեղծությունն ընդունում են Օրմանյանը, Ակինյանը, Հ. Մանանդյանը. վերջինս նրա գրության ժամանակը որոշում է 6-րդ դարի վերջերում կամ 7-րդի սկզբներում[2]։ Արսեն կաթողիկոսի վերոհիշյալ վկայությունը միանգամայն արդարացնում է այս եզրակացությունները Թղթի կեղծության և հորինման ժամանակի մասին։ (Թուղթը վավերական են համարել, իբրև Մովսես Խորենացու գործը 5-րդ դարում, Գալուստ Տեր-Մկրտչյանը (Միաբան) և Կարապետ եպիսկոպոսը)։

Ես աշխատեցի ցույց տալ, որ 5-րդ դարի երկրորդ կեսում Հայաստանն էլ, ուրիշ երկրների նման, թատերաբեմ է եղել քաղկեդոնական վեճերի, ասորական և հունական շրջանները, իբրև հակաքաղկեդոնական ու քաղկեդոնական խմբեր, պայքարելիս են եղել իրար դեմ, և Խորենացին, իբրև մեկը քաղկեդոնական խմբից, գուցե պարագլուխը, այս պատճառով հալածանքի է ենթարկվել հակառակորդ ուժեղ ասորական խմբից։ Ոչ մի անբնական և անհավանական բան չկա սրա մեջ։ Եթե քաղկեդոնականությունը Հայաստանում այնքան տարածված էր 6-րդ և 7-րդ դարերում, որ նրա դեմ կռվելու համար հայերեն էին թարգմանում Տիմոթեոս Կուզի Հակաճառությունները, Խորենացու անունով Թուղթ էին կեղծում քաղկեդոնականների դեմ, ինչու չէր կարող նա ծնունդ առնել և գոյանալ հենց 5-րդ դարում, «թարգմանիչների և քերթողների» ժամանակ, որոնք հունական կրթություն էին ստացել և քաղկեդոնականության ամենաբնական հետևողներն ու տարածողները կարող էին լինել։ Եթե Քաղկեդոնի ժողովը Հայոց եկեղեցու կողմից պաշտոնապես նզովվելուց հետո էլ Հայաստանում եղել են նույնիսկ քաղկեդոնիկ կաթողիկոսներ (Ներսես Շինող, Եզր, Վահանիկ), ինչու

---

1 «Հունաբան դպրոցը», էջ 250։

2 Անդ, էջ 246։

չէին կարող 5-րդ դարում քաղկեդոնիկ լինել Գյուտ կաթողիկոսը, Խորենացին, Փարպեցին և ուրիշները, երբ Հայոց եկեղեցին դեռ չէր արտահայտվել այդ ժողովի բանաձևի նկատմամբ, ուրեմն ամեն ոք ազատ էր այդ բանաձևն ընդունելու կամ չընդունելու՝ առանց եկեղեցու կողմից հերձվածող ճանաչվելու։ Եթե իմ հայտնած միտքն այսօր խորթ և օտարոտի է թվում՝ պատճառն այն է, որ մենք դեռ շարունակում ենք մնալ մեր ավանդական հավատի մեջ, իբր թե միայն աստվածապահ Հայաստանը զերծ է մնացել քաղկեդոնական մոլորությունից, թե հայերը հիսուն և ավելի տարիներ «ժամանակ չեն ունեցել քաղկեդոնական հարցով զբաղվելու»։ Մենք չենք ուսումնասիրել մեր եկեղեցու պատմությունը 5-րդ դարի երկրորդ կեսում, անտես ենք արել նույնիսկ այն հատուկտոր տեղեկությունները այդ ժամանակի պայքարի մասին, որոնք պատահաբար ազատվել են կորուստից և կարող են լույս սփռել այս կարևոր հարցի վրա[1]։

## ՄՈՎՍԵՍ ԽՈՐԵՆԱՑԻՆ ՍՅՈՒՆԵՑԻ Է ԵՂԵԼ

Մովսես քերթողահոր «Խորենացի» մականունը շատ մեկնությունների ու կասկածների տեղիք է տվել, քանի որ հին հեղինակների ամենամեծ մասը լոկ Մովսես անունով է հիշում նրան, իսկ «Խորենացի»[2] բառի ծագումն արդարացնող մի տեղի (գավառի, գյուղի) անուն հայտնի չէր։ Հիշվում է Խորոնք անունով մի գյուղ Տարոնում, բայց այս անունից կարող է առաջ գալ Խորոնացի ձևը, և ոչ Խորենացի։ «Խորենացի» ձևն արդարացնելու համար պետք է ունենալ Խորէն, Խորեն կամ Խորեան անունով մի տեղ։

Կարծում եմ, որ այդպիսի անուն կրող մի գյուղ կարելի է ցույց տալ։

---

1 Հայաստանում քաղկեդոնականության ծավալման մասին տես Ն. Մառի հմտալից հետազոտությունը „Арк'аун" վերնագրով, որտեղ ի միջի այլոց շատ հիմնավոր կարծիք է հայտնում, թե քաղկեդոնական հայերի շնորհիվ հայ գրականության մեջ խորացավ և զորացավ հունասիրական հոսանքը (էջ 28). (գուցե նույնիսկ նրանով էլ սկսվեց, կավելացնեմ իմ կողմից)։

2 11-րդ դարի մի անհայտ խմբագրող նրան անվանում է անծանոթ «Խոյարունացի» բառով։

Ստ. Օրբելյանը Սյունյաց տասներկու գավառների ավելի քան 650 գյուղերի անունն է բերում, նշանակելով յուրաքանչյուրի վրա դրված տարեկան հարկը հօգուտ Տաթևի վանքի՝ ցորենի բեռներով։ Հաբանդ գավառում նա հիշում է ի մեջի այլոց Խորեայ գյուղը։ Այս Խորեայ ձևը բերված է 13-րդ դարի բուն վերջին հիշատակարանում (Օրբելյանի Պատմությունը գըրված է 1299 թվին)։ Այս անվան սկզբնական ձևը, բնականոն կերպով, կարող է լինել «Խորեան», քանի որ մեր լեզվի հնչարանական օրենքով նախնական «ան», «եան» վերջավորությունները «ն» տառը կորցնում են, ինչպես աղջկան—աղջկայ, վեցաչեան—վեցաչեայ, հանապազորդեան — հանապազորդեայ և այլն։ («ն» տառը կորել է և ուրիշ հազարավոր բառերի վերջում՝ ակն—ակ, մուկն—մուկ, ձեռն—ձեռ, համբարձումն—համբարձում և այլն)։ «Ն»-ի այս սղումն ավելի ևս բնական է դառնում, երբ նկատի առնենք, որ Խորեանը գրական բառ չէ եղել, այլ ժողովրդական՝ սովորական խոսակցական լեզվի բառ, ուրեմն և շատ գործածվող ու մաշվելու ենթակա. այնպես որ 5-րդ դարի «Խորեան» ձևը 13-րդ դարում բնականաբար պիտի դառնար «Խորեայ»։

Այս փոփոխությունը որքան էլ լեզվաբանորեն ընդունելի լինի՝ այնուամենայնիվ բավական չէ Խորեայ—Խորեան գյուղը Մովսես Խորենացու ծննդավայրը համարելու, քանի որ կարող է պատահական զուգադիպություն համարվել։ Բայց կան մի շարք կողմնակի փաստեր, որոնք ուժ են տալիս այս ենթադրությանը։

Այսպիսի փաստեր են.

Մովսես Խորենացու տոհմասիրությունը։ Սյունյաց ցեղի ծագումը նա հասցնում է ամենահին ժամանակները. այս ցեղի նահապետ նա համարում է Սիսակին, Գեղամ նահապետի որդուն, ուրեմն Հայկ նահապետի վեցերորդ սերունդը, որին տալիս է շքեղ մակդիրներ—«այր սէգ եւ անձնեայ, բարեգեղ, կորովաբան եւ գեղեցկագեղ»,—ֆիզիկական, մտավոր և զինվորական բարեմասնություններ։ (Հայկին նա կոչում է. «գեղապատշաճ եւ անձնեայ, քաջագանգուր, խայտակն եւ հաստաբազուկ)։ Սիսական ցեղից է սերեցնում Առանին, «այր անուանի եւ յամենայն գործ մտաւորութեան եւ հանճարոյ առաջին», որ Աղվանքի կողմնակալ նշանակվեց Վաղարշակից։ Նույնպես Սիսնեայ ցեղի ճյուղեր է ճանաչում Գողթնեցիներին և Ուշտունիներին։

Խորենացին լավ ծանոթ է Երասխ գետի հովտին. գիտե նրա հորձանքավոր հոսանքը նեղ ժայռոտ հունով. հիշում է նրա աջ և ձախ ափերին գտնվող գավառները, քաղաքները և դաստակերտները (Ա., 30)։ Տեղեկությունները նրան հայտնի են շնորհիվ այն հանգամանքի, որ Երասխի հովիտը հնուց ի վեր եղել է հաղորդակցության միակ ճանապարհը լեռնային Սյունիքի և Արարատյան դաշտի միջև, և Խորենացին հաճախ առիթ է ունեցել այս ճանապարհով հայրենիքից գալ Վաղարշապատ կամ Վաղարշապատից հայրենիք։ Ինձ թվում է, թե այս հանգամանքին կարելի է վերագրել նաև Խորենացու ծանոթությունը Գողթան երգերին, որովհետև կարավանների ճանապարհն անցնում էր Գողթնով, և երբ կարավան էր գալիս, Գողթնում իջևանում էր, տեղի աշուղները երգում ու նվագում էին նախնյաց քաջագործությունները, և ապագա պատմահայրը ախորժանքով լսում էր «զվիպասանսն որ պատմին ի Գողթան» (Բ., 49)։

Խորենացին հիշում է, որ Սյունիքի Գեղարքունի գավառում կա Եվսեբեոսի Եկեղեցական Պատմությունը։ Սրանից կարելի է հետևցնել, թե նա եղել է այնտեղ և առիթ է ունեցել այդ գիրքը կարդալու։ Թե Ն. Ակինյանը և թե ակադ. Մանանդյանը նույն կարծիքն են հայտնել և հավանական են համարում, որ Խորենացին ուսած լինի Մաքենոցի վանքում, Սոթք գավառում, որ հարևան է Գեղարքունիքին։ (Նրանց կարծիքով՝ այս բանը տեղի է ունեցել 9-րդ դարում, Մաքենոցի վանքի վերանորոգությունից հետո, որ հրդեհված է եղել 827-ին, բայց վանքը դրանից առաջ էլ գոյություն է ունեցել, հայտնի չէ՝ որ ժամանակից ի վեր)։

Վեցերորդ դարի առաջին կեսում ապրող Պետրոս քերթող Սյունյաց եպիսկոպոսը երեք անգամ Ստ. Օրբելյանից կոչված է «աշակերտ Մովսեսի Խորենացւոյ»։ Այս աշակերտությունը հավանորեն բացատրվում է նրանով, որ Պետրոսին, մանկության ժամանակ, ծնողները տվել էին «փոքրավոր» (աշակերտ)՝ համբավաբար համշիրակ Մովսես քերթողահոր մոտ՝ նրա ծերության ժամանակ։

Քաղաքական և տոհմական տեսակետից նշանակալից է Մովսես Խորենացու սառնությունը, կարելի է ասել հակակրությունը Մամիկոնյան տան վերաբերմամբ, չնայելով որ նրանք

(Համազասպը, Վարդանը և այլն) ս. Սահակի՝ Խորենացու ամենասիրելի ուսուցիչ և բարերար ս. Սահակի աղջկանից էին սերված։ Այս հակակրությունը շատերի կողմից մատնանշված է, բայց, որքան գիտեմ՝ մի հավանական բացատրություն չէ տրված։ Խորենացուն Սյունեցի ենթադրելով՝ հասկանալի կդառնա դրա պատճառը, 5-րդ դարի քառասնական թվականներից սկսած մինչև ութսունական թվականները, Խորենացու կենդանության ժամանակ, Մամիկոնյաններն ու Սյունեցիք անհաշտ թշնամիներ էին միմյանց, հիշենք Վարդանին ու Վասակին, հիշենք Վահանին ու Գդիհոնին։ Խորենացին բնականապես հակակրում է իր տոհմին թշնամի ու հակառակորդ տոհմին։ Եթե թույլ կտրվի՝ կավելացնեմ և մի գիծ Խորենացու բնութագրից։ Նա հայտնի է իր խիզախ՝ համարձակ բնավորությամբ, հոգեկան արիությամբ։ Նույն այս գծերով հնուց ի վեր բնորոշվում է լեռնային Ղարաբաղի հայ ժողովուրդը, որին կոչում են «քաջ Ղարաբաղցի»։ Ուրեմն Խորենացին հարազատ զավակ է իր բնագավառի և ժառանգել է նրա ժողովրդին հատուկ հոգեկան և ֆիզիկական գծերը։

---

## К проблеме Моисея Хоренского

(Резюме)

В предисловии автор указывает на исключительно высокое положение, которое занимала в продолжении многих веков История М. Хоренского, как единственный непогрешимый источник по истории армян; на возникшее в XIX столетии скептическое отношение к этой Истории, сомнения относительно ее достоверности, относительно личности ее автора и о времени ее составления. Здесь перечисляются европейские и армянские ученые, которые писали о Хоренском и его Истории—одни за, другие против, но что в конце концов стало преобладающим мнение, что эта История не есть произведение Моисея Хоренского, ученика Саака и Месропа, жившего в V столетии, а что она является произведением анонимного автора эпохи не ранее конца VII столетия, выдающего себя за Моисея Хоренского, автора V столетия. Тогда очередным стал вопрос: когда же именно написана эта История и кто ее истинный автор?

По этим вопросам автор приводит два сочинения, появившиеся в тридцатых годах, именно: работу Н. Акиняна под названием „Гевонд иерей и Моисей Хоренский" (Вена, 1930 г.) и работу академика А. Манандяна „Разрешение проблемы Истории М. Хоренского" (Ереван, 1934,—оба на армянском языке.

Разбирая эти труды, автор в отношении книги Н. Акиняна ограничивается приведением ее содержания, без опровержения выводов Акиняна: „Они настолько нелепы,—пишет он,—что не нуждаются в опровержении. Гевонд, по мнению

Акиняна, является настоящим автором Истории Армении (Хоренского), которую он написал около 810 года, будучи 80 лет от роду, спустя 20 лет после написания им Истории Магомета и халифов. Различие в слоге обеих Историй Н. Акинян об'ясняет тем, что в Истории Магомета Гевонд описывал действительность, будучи сам современником и очевидцем, и потому довольствовался простым, удобопонятным языком и не нуждался в риторических прикрасах, между тем как в Истории Армении, при изложении не имевших места событий бесписьменных времен, он должен был прибегать к измышлениям, безвкусицу содержания скрадывать внешними приправами, слабые факты подкреплять фразами. На этой Истории Гевонд не выставил своего имени, она осталась анонимной. Лишь после смерти Гевонда какой-то неизвестный поставил на ней вымышленное имя „Моисей Хоренский" (Моисей, так как автор этой Истории, подобно пророку Моисею, спас армян из глубин невежества и привел в обетованную землю просвещения; Хоренский (от армянского слова хор—խոր—глубокий, глубина)—глубокий, мудрый, или тот, кто прошел по глубине мудрости; или от сирийского слова хурин, означающего читатель. Вообще Н. Акинян утверждает, что лица, носившего имя „Моисей Хоренский", вовсе не существовало".

После этого автор переходит к главной задаче—к подробному разбору книги акад. Манандяна: „Разрешение проблемы Хоренского". Он соглашается с мнением акад. Манандяна, что существующие две версии древней „Географии" являются переработками более древнего пространного оригинала, не дошедшего до нас, и что эта География принадлежит перу самого Хоренского, а не Анании Ширакаци, как полагали проф. Патканов, а за ним и другие ученые. Оба эти вывода автор считает положительной стороной работы акад. Манандяна, но оспаривает его утверждения, что География написана в IX веке, и относит ее к VII—V векам. (Впрочем, автор в примечании признается, что, прочитав в 1938 году исследование Аш. Абрамяна, изучившего Географию по

35 рукописям Гос. Библиотеки, вполне с ним соглашается, что автор Географии—несомненно, Анания Ширакаци). Затем, переходя ко второй части исследования акад. Манандяна, т. е. к Моисею Хоренскому, автор один за другим разбирает все тезисы академика, в которых он старается доказать, что Хоренский жил и писал в начале шестидесятых годов девятого столетия и что он—то же самое лицо, которое написало эпилог к книге Хрий, и называет себя Моисеем кертогом (ритором). Автор возражает против всех этих тезисов и резюмирует свой подробный разбор словами: „Проблема Хоренского еще не разрешена".

Затем следуют четыре приложения.

В первом приложении автор старается доказать, что сведения, сообщенные самим Хоренским о себе, как об ученике Саака и Месропа, отправленном ими в Александрию для получения высшего образования, являются истиной и что он—действительно писатель восьмидесятых годов V века. Этот тезис автор доказывает массой фактов литературного и психологического характера, почерпнутых из Истории Хоренского, а также свидетельством других, армянских и грузинских, авторов, начиная с IX века и восходя до V в., которые называют его по имени и приводят краткие или пространные выдержки из его Истории, причем в одном только VII веке пять выдержек и одно подложное письмо от имени Хоренского.

Во втором приложении автор выставляет тезис о том, что дошедшая до нас История Хоренского не представляет собой первоначальный текст, вышедший из-под пера автора, но что мы имеем переработанный и интерполированный текст с тенденциозными изменениями. Он приводит несколько примеров интерполяций в современных списках и сравнивает 81, 82, 83, 84 и 85 главы Второй книги с Историей Асохика (начало XI в.), который в этом месте, как и до и после этих глав, приводит сокращенный рассказ по Хоренскому, его же словами. Из сравнения видно, что Асохик кратко передает содержания 81, 82, 84,

85 глав Хоренского, но ни одного слова из 83-й главы, содержащей рассказ о легендарном крещении Константина, взятый из жизнеописания св. Сильвестра по армянскому переводу третьей четверти седьмого века, что и дало повод критике низвести Историю Армении до конца VII века. Вместо этой главы у Асохика рассказ о девах Рипсимидах и об обращении армян в христианство, именно тот рассказ, который по ходу событий должен был находиться в данном месте (в 82-й главе царь Трдат—язычник, в 84-й главе—он уже христианин)—но в современных текстах Хоренского нет. Очевидно, рассказ Хоренского о крещении армян кому-то показался неприемлемым по некоторым соображениям, и потому его исключили и заменили рассказом о крещении импер. Константина. (Автор высказывает предположение о том, что могло послужить причиной подлога). Из этого тезиса автор выводит заключение, что в тех случаях, когда в Истории упоминаются события, имевшие место после V века, или приводятся извлечения из авторов VI—VIII в. в., эти анахронистические факты следует об'яснять интерполяцией переписчиков или вставкой редакторов, а не позднейшим происхождением самого памятника, как это делали до сих пор.

В третьем приложении автор выставляет тезис, поражающий своей новизной, именно, что Моисей Хоренский был халкедонитом, т. е. приверженцем вероучения Халкедонского собора. (Известно, что армянская церковь, отвергающая это вероучение, причислила Моисея Хоренского к лику святых). Автор предварительно замечает, что Халкедонский собор, признавший в лице христа два естества, разжег пламя раздора среди христианской церкви—весь христианский мир раскололся на два враждующих лагеря: на приверженцев вероучения собора (халкедонитов) и на отвергающих это учение (монофизитов). Оплотом халкедонитов были Византия и Рим, оплотом монофизитов—Александрия, Антиохия и Сирия. Армения, поддерживавшая духовную связь и с Сирией и с Византией, не могла,

конечно, оставаться в стороне в этом споре, волновавшем все церкви; к тому же там были налицо кадры естественных приверженцев того или другого вероучения: сирийские выходцы, пользовавшиеся в Армении большим влиянием, и их приверженцы среди армянского духовенства были убежденными монофизитами, небольшая же группа просвещенных лиц, получивших образование в Византии и известных под общим названием переводчиков, держалась халкедонского вероучения. К этой группе принадлежал, может быть и возглавлял ее, Хоренский, самый образованный человек своего времени и ярый грекофил. И вот, на почве халкедонского вероучения возгорелась борьба между монофизитами и группой переводчиков. На существование в Армении религиозной борьбы во второй половине V столетия ясно намекает Хоренский в „Плаче", говоря: „потряслось православие, по невежеству утвердилось лжеучение", и немного позже,—„Теперь борьба внутри... борьба от схизматиков". Слово схизматик может относиться только к монофизитам, отвергшим вероучение вселенского собора и отколовшимся от единой дотоле церкви, но никак не к халкедонитам. Армянская церковь официально не примыкала к той или другой партии боровшихся, занимая выжидательное положение, но втайне поддерживала монофизитов. Вот эти-то монофизиты, сильные своей численностью и положением, стали преследовать переводчиков-халкедонитов и их главного представителя— М. Хоренского, не давали им хода к должностям, гнали с места на место, подвергали лишениям, осмеивали их учение и образованность, а иногда и просто убивали их. Вот истинная причина тех лишений, которым подвергался Хоренский и на которые он горько жалуется в „Плаче" и в конце 92-й главы Второй книги.

Высказанное мнение, что Хоренский был халкедонитом, автор подкрепляет веским свидетельством грузинского католикоса Арсения (IX в.), который дважды упоминает о Моисее и называет его „православным", (т. е. халкедо-

нитом, каким был и сам). Он повествует, что противники подделали послание от имени Моисея в духе монофизитизма, чтобы им совращать народ. Это послание уцелело— оно вошло в Сборник посланий *(Գիրք Թղթոց)* под именем Моисея Хоренского и, вследствие убожества мысли и неясности слога, армянскими учеными оно было признано за подложное. Указание католикоса Арсения проливает свет на этот вопрос и определяет время и цель этого подлога и его авторов.

В четвертом приложении автор высказывает мнение, что Хоренский родом был из провинции Сюник (ныне Карабах) из селения Хоря, как оно называется в конце XIII века в Истории Степаноса Орбеляна, но которое, по законам армянского языка, могло в V веке звучать полнее: Хорьян, откуда, согласно армянской фонетике, происходит Хорен-аци—Խորենացի: Это свое мнение автор подтверждает некоторыми фактами, как-то: чрезмерной похвалой Сисаку, родоначальнику Сюникского нахарарского дома, знакомством с местностями в провинции Сюник, с течением Аракса, с поселениями по обоим берегам этой реки, по долине которой проходили караваны, неприязнью к дому Мамиконянов, соперников Сюникских князей во второй половине V в. (Вардан и Васак в первой религиозной войне, Ваган и Гдихон—во второй), наконец, мужественным характером Хоренского, отличительной чертой жителей этого горного края древней Армении.

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Պատ. խմբագիր՝ Մ. Ներսիսյան
Տեխ. խմբագիր՝ Վ. Մանուկյան.
Պատ. սրբագրիչ՝ Ս. Շահբազյան



Հանձնված է արտադրության 11/XI 1940 թ.
Ստորագրված է տպագրելու համար 3/XII 1940 թ.
ՎՖ 2335. պատվեր № 247, հրատ. № 86, տիրաժ 4000.

Գինը 7 ռ., կազմը 1 ռ. 50 կ

Արմֆանի հրատարակչության տպարան, Երևան, Լենինի փ. 67.

